

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5·1979

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ՄԱՅԻՍ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



### СТАТЬИ



### ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА



### ВОПРОСЫ ЭКОНОМИКИ



### ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ










# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1979** թվականի ապրիլի **17**-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց **ՍՍՀՄ** տասներորդ գումարման Գերագույն սովետի առաջին նստաշրջանի հարցերը:

Պլենումում ճառով հանդես եկավ **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը:

**ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեն ամբողջովին ու լիովին հավանություն տվեց **ՍՍՀՄ** Գերագույն սովետի գործունեության և ժողովրդական դեպուտատների բոլոր սովետների աշխատանքի հետագա կատարելագործման ուղղությունների վերաբերյալ ընկ. Լ. Ի. Բրեժնևի ելույթում բովանդակվող դրույթներին ու հետևություններին:

Պլենումում հանդես եկավ նաև **ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Ա. Սուսլովը:

**ՍՄԿԿ** Կենտկոմի պլենումը հավանություն տվեց **ՍՍՀՄ** Գերագույն սովետի առաջին նստաշրջանի կազմակերպական հարցերի վերաբերյալ Կենտկոմի քաղբյուրոյի առաջարկություններին:

**ՍՄԿԿ** Կենտկոմի պլենումը ընկ. Յա. Պ. Ռյաբովին ազատեց **ՍՄԿԿ** Կենտկոմի քարտուղարի պարտականություններից՝ նրան **ՍՍՀՄ** պետպլանի նախագահի առաջին տեղակալ նշանակելու կապակցությամբ:

**ՍՄԿԿ** Կենտկոմի պլենումը **ՍՄԿԿ** Աստրախանի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ա. Բորոդինին **ՍՄԿԿ** Կենտկոմի անդամության թեկնածությունից փոխադրեց Կենտկոմի անդամ:

Դրանով Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

# ՍՍՀՄ ՏԱՍՆԵՐՈՐԴ ԳՈՒՄԱՐՄԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԱՌԱՋԻՆ ՆՍՏԱՇՐՋԱՆԸ

Ապրիլի 18—19-ը Մոսկվայում կայացավ ՍՍՀՄ տասներորդ գումարման Գերագույն սովետի առաջին նստաշրջանը:

ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատները խորին գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի նախորդ օրը կայացած պլենումի արդյունքները, որն ամբողջովին ու լիովին հավանություն տվեց պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթի մեջ բովանդակվող դրույթներին ու հետևություններին:

Նստաշրջանի աշխատանքն սկսվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի պալատների՝ Միության սովետի և Ազգությունների սովետի անջատ նիստերով: Այդ նիստերում ընտրվեցին պալատների նախագահներ ու նրանց տեղակալներ:

Այնուհետև տեղի ունեցավ Միության սովետի և Ազգությունների սովետի առաջին համատեղ նիստը, որը ձեռնամուխ եղավ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության ընտրությանը:

Խոսքը տրվում է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար, դեպուտատ Մ. Ա. Սուսլովին: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հանձնարարությամբ նա քննարկման է մտցնում Գերագույն սովետի կուսակցական խմբի և պալատների ավագների խորհուրդների պաշտպանած առաջարկությունը՝ նորից ՍՍՀՄ Գերագույն սովետի նախգահության նախագահ ընտրել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևին:

ՍՍՀՄ Գերագույն սովետը միահամուռ կերպով դեպուտատ Լ. Ի. Բրեժնևին ընտրեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության անդամների անունից և անձամբ իր կողմից Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին և Գերագույն սովետի դեպուտատներին ի սրտե շնորհակալություն հայտնեց մեծ վստահության համար, կանգ առավ այն խնդիրների վրա, որ ՍՍՀՄ Գերագույն սովետը պետք է լուծի կուսակցության XXV համագումարի մշակած տնտեսական ու սոցիալական զարգացման ծրագրի կենսագործման ասպարեզում:

Նիստում հրապարակվեց նախագահողի անունով ստացված այն հայտարարությունը, որով ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը իր պարտականությունները համարում է սպառված և իր լիազորությունները վայր է դնում ՍՍՀՄ նորընտիր Գերագույն սովետի առջև:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևը նստաշրջանի քննարկմանն է ներկայացնում ՍՍՀՄ Գերագույն սովետի կուսակցական խմբի և պալատների ավագների խորհուրդների պաշտպանությանն արժանացած ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի առաջարկությունը՝ նորից ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ նշանակել ընկեր Ալեքսեյ Նիկոլաևիչ Կոսիգինին և նրան հանձնարարել Գերագույն սովետին առաջարկություններ ներկայացնելու ՍՍՀՄ կառավարության կազմի մասին:



Միաձայն ընդունված որոշմամբ հավանություն է տրվում սովետական կառավարության գործունեությանը: ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ է նշանակվում Ա. Ն. Կոսիգինը:

ՍՍՀՄ Գերագույն սովետի հանձնարարությանը համապատասխան, Ա. Ն. Կոսիգինը հաստատման ներկայացրեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կառավարության՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի կազմը: ՍՍՀՄ Գերագույն սովետը միաձայն հաստատեց այն:

ՍՍՀՄ կառավարության անունից դեպուտատ Ա. Ն. Կոսիգինը ելույթով դիմեց ՍՍՀՄ Գերագույն սովետին:

Նստաշրջանը քննարկեց նաև «ՍՍՀՄ Գերագույն սովետի ռեգլամենտի նախագծի մասին և ՍՍՀՄ Գերագույն սովետի Միության սովետի և Ազգությունների սովետի մշտական հանձնաժողովների կանոնադրության մեջ փոփոխություններ ու լրացումներ մտցնելու մասին» հարցը և այդ առթիվ ընդունեց համապատասխան օրենք:

ՍՍՀՄ Գերագույն սովետը կազմեց ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտե՝ Ա. Մ. Շկոլնիկովի նախագահությամբ, ընտրեց ՍՍՀՄ գերագույն դատարան՝ նախագահ Լ. Ն. Սմիռնովի գլխավորությամբ և ՍՍՀՄ գլխավոր դատախազ նշանակեց Ռ. Ա. Ռուդենկոյին:

Դրանով ՍՍՀՄ տասներորդ գումարման Գերագույն սովետի առաջին նստաշրջանը ավարտեց իր աշխատանքը:

# ԴԵՊՈՒՏԱՏ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԼՈՒՅԹԸ

Թանկագին ընկեր դեպուտատնե՛ր:

Նախ և առաջ թույլ տվեք ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության՝ հենց նոր ընտրված անդամների անունից, անձամբ իմ կողմից կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին և Գերագույն սովետի դեպուտատներին ի սրտե շնորհակալություն հայտնել մեզ ցույց տրված մեծ վստահության համար: **(Ծափահարություններ)**: Վստահ եմ, որ մեզանից յուրաքանչյուրը ուժեր չի խնայի այդ վստահությունն արդարացնելու համար: **(Ծափահարություններ)**:

Լինել երկրի իշխանության բարձրագույն մարմնի դեպուտատ՝ մեծ պատիվ ու մեծ պատասխանատվություն է: Աշխատել Գերագույն սովետի մշտապես գործող մարմնի՝ նրա նախագահության կազմում՝ կրկնակի պատվավոր ու պատասխանատու գործ է:

Նոր Սահմանադրությունը ամենաբարենպաստ պայմաններն ստեղծեց, որպեսզի ՍՍՀՄ Գերագույն սովետը ակտիվորեն իրականացնի իր լայն լիազորությունները: Կիրառելով կուսակցության քաղաքական գիծը, նա ավելի ու ավելի եռանդուն ու նպատակասլաց կերպով է լուծում երկրի զարգացման կենսականորեն կարևոր հարցերը: Դրա առավել էական նախադրյալը յուրաքանչյուր դեպուտատի ակտիվությունն է:

Մեր դեպուտատների բուն կազմը վկայում է, որ Կրեմլի այս դահլիճ են ուղարկվում ժողովրդի լավագույն ներկայացուցիչները, այստեղ են կենտրոնանում նրա ամենախիմաստուն ուղեղները, նրա բազմահարուստ փորձը: ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատները աշխատանքի մարդիկ են, աշխատավորական կոլեկտիվների ներկայացուցիչներ: Նրանք գործնականում գիտեն, թե ինչպես են կենսագործվում իշխանության բարձրագույն մարմնի որոշումները տեղերում, ինչպիսի հարցեր է կյանքը այսօր առաջին պլանի վրա դնում:

Խոսքը վերաբերում է ամենից առաջ երկրի էկոնոմիկայի արդյունավետության անշեղ բարձրացմանը, նրա բոլոր վիթխարի հնարավորությունների հայտնաբերմանը և օգտագործմանը: Դա է ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի, մեր հայրենիքի հզորության համակողմանի ամրապնդման գլխավոր պայմանը:

Սահմանադրությանը համապատասխան, ՍՍՀՄ Գերագույն սովետը այդ խնդիրները լուծում է ինչպես անմիջականորեն, այնպես էլ իր կողմից ստեղծվող մարմինների միջոցով:

Մեր տնտեսական և սոցիալական քաղաքականության կիրառման գործում կարևորագույն դեր է պատկանում կառավարությանը, մինիստրություններին ու պետական կոմիտեներին: Հասուն սոցիալիզմի փուլը, գիտատեխնիկական հեղափոխությունը ավելի ու ավելի բարձր պահանջներ են ներկայացնում տնտեսական կառավարման մեխանիզմին, ենթադրում են նրա հետագա կատարելագործում, պահանջում են մեծ ու նպատակասլաց կազմակերպչական աշխատանք:

Մեզ հարկավոր են ամբողջ կառավարչական ապարատի հստակ ու ներդաշնակ գործունեություն, իրեն հանձնարարված գործի համար յուրաքանչյուր մարդու ռեալ պատասխանատվություն, հաստատակամ պայքար պետական կարգապահության խախտումների, ամեն տեսակ ավելորդությունների, անտնտեսավարության, չարաշահումների դեմ:

Այստեղ առաջին գծի վրա պետք է լինի ժողովրդական վերահսկիչների ինը միլիոնանոց բանակը և նրան գլխավորող ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտեն, որը կազմվելու է տվյալ նստաշրջանում:

Մեր հասարակության կյանքում մեծ դեր են խաղում սոցիալիստական իրավակարգի ապահովումը, ամենուրեք սովետական օրինականության խիստ կիրառումը: Գերագույն սովետում հանգուցվում են հասարակական կյանքի վրա պետության ներգործության կարևորագույն լծակները: Եվ Սահմանադրությունը պահանջում է, որ այդ լծակները աշխատեն անխափան, որ Գերագույն սովետի ուղղություն տվող, կոորդինացնող ու վերահսկիչ գործունեությունը ըստ ամենայնի զարգանա:

Տասներորդ գումարման Գերագույն սովետը պետք է քննարկի այժմյան հնգամյակի ավարտման, երկրի զարգացման տասնմեկերորդ հնգամյա պլանի մշակման ու կենսագործման հետ կապված հարցերը: Առաջնորդվելով կուսակցության համագումարների և նրա Կենտրոնական կոմիտեի պլենումների ցուցումներով, մենք կզբաղվենք էկոնոմիկայի և կուլտուրայի, պլանավորման և արտադրության նյութական խթանման բնագավառի պրոբլեմների լայն կոմպլեքսով, մշտապես ուշադրության կենտրոնում կպահենք սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման, կոմունիստական շինարարության ուղիով մեր ժողովրդի հետագա առաջընթացի հարցերը: **(Ծափահարություններ)**:

Առաջվա նման, Գերագույն սովետի գործունեության կարևոր ուղղություն է մնում օրենսդրության կատարելագործումը: Այս տեսակետից մեծ, ես կասեի, լարված աշխատանք է սպասում, որը համապատասխան մարմիններից կպահանջի ստեղծագործական յուրջ մոտեցում և բարձր պատասխանատվություն:

Ընդ որում, անփոփոխ է մնում մեր այն կուրսը, որ մեր յուրաքանչյուր օրենք, ընդունվող յուրաքանչյուր որոշում անշեղորեն կենսագործվի, տա, այսպես ասած, ռեալ փոխհատուցում: **(Ծափահարություններ)**:

Նոր Սահմանադրության ընդունմամբ նկատելիորեն ուժեղացավ ՍՍՀՄ Գերագույն սովետի վերահսկողությունը օրենքների, պլանային առաջադրանքների կատարման, կառավարման մարմինների աշխատանքի նկատմամբ: Մեզանում արդեն կուտակված է Գերագույն սովետի նստաշրջաններում, նրա նախագահությունում, մշտական հանձնաժողովների նիստերում կառավարության, մինիստրությունների և գերատեսչությունների զեկուցումների քննարկման օգտակար փորձ: Այդ պրակտիկան պետք է պահպանել նաև ապագայում, և ոչ միայն պահպանել, այլև նրան տալ է՛լ ավելի մեծ նպատակասլացություն:

Այստեղ առանձնահատուկ դեր է պատկանում մշտական հանձնաժողովներին: Նրանք պետք է գործեն ավելի եռանդուն, քննարկման դնեն ամենաէական, ամենահրատապ հարցերը, հաստատակամորեն հասնեն իրենց հանձնարարականների կենսագործմանը, ավելի լավ վերահսկեն դրանց կատարումը: Կարծում եմ, որ Գերագույն սովետի ռեգլամենտը և մշտական հանձնաժողովների նորացված կանոնադրությունը, որոնք մենք պետք է ընդունենք, դրական դեր կխաղան այդ խնդիրների լուծման գործում:

ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը բացեց տարբեր ուղղություններում Գերագույն սովետի նախագահության ակտիվության բարձրացման լայն հնարավորություններ: Եվ նրա կարևորագույն պարտականություններից մեկը սովետների բոլոր օղակների աշխատանքի հետևողական բարելավումն է, նրանց կուտակած փորձի ընդհանրացումն ու տարածումը, վերահսկողությունը այն բանի նկատմամբ, թե ինչպես են կատարվում ընտրողների պատվիրանները, ինչպես են իրացվում աշխատավորների կողմից մտցվող բազմաթիվ առաջարկությունները:

Անշեղորեն կենսագործելով տնտեսական ու սոցիալական զարգացման՝ կուսակցության XXV համագումարի մշակած ծրագիրը, ՍՍՀՄ Գերագույն սովետը կոչված է մշտապես հոգ տանելու մեր երկրում կոմունիստական շինարարության համար արտաքին խաղաղ պայմաններ ապահովելու, նրա պաշտպանական հզորությունն ամրապնդելու մասին: **(Ծափահարություններ):** Ղեկավարվելով կուսակցության արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքներով, նա այսուհետ նս հաստատակամորեն կհասնի մեր մոլորակի խաղաղության պահպանմանը:

Այդ նպատակով մենք պետք է է՛լ ավելի լայնորեն համագործակցենք եղբայրական սոցիալիստական պետությունների ներկայացուցչական մարմինների հետ, աշխարհի բոլոր երկրների պառլամենտների և խաղաղասեր հասարակայնության հետ, ակտիվորեն պաշտպանելով իրենց ազգային և սոցիալական ազատագրության համար պայքարող ժողովուրդներին:

Մի խոսքով, մեզ, ընկեր դեպուտատնե՛ր, հսկայական աշխատանք է սպասում թե՛ ներքին, թե՛ արտաքին քաղաքական տեսակետից: Եկեք, ուրեմն, այնպես աշխատենք, որ արդարացնենք սովետական ժողովրդի՝ կոմունիստական կուսակցության լենինյան դրոշով ընթացող աշխատավոր և մարտիկ ժողովրդի մեծ վստահությունը: **(Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում):**

**ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ**

**ԽՈՐՀՐԴԻ ՈՐՈՇՈՒՄԸ**

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՄՐՑԱՆԱԿ ՇՆՈՐՀԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, քննարկելով ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր գրականության, արվեստի և ճարտարապետության լենինյան և ՍՍՀՄ պետական մրցանակների կոմիտեի առաջարկությունը ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևին «Մալայա զեմլյա», «Վերածնունդ» և «Խոպան» գրքերի համար լենինյան մրցանակ շնորհելու մասին, որոշում են.

Ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին շնորհել լենինյան մրցանակ «Մալայա զեմլյա», «Վերածնունդ» և «Խոպան» գրքերի համար, խաղաղության օգտին անդուլ պայքարի համար:

**ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ** — **ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ**

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Ապրիլի 12-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը։

Պլենումը քննարկեց «Հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները տնտեսական և սոցիալական զարգացման տասներորդ հնգամյակի պլանների կատարումն ապահովելու ուղղությամբ՝ Մոսկվա քաղաքի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ հանդիպման ժամանակ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառում բովանդակվող դրույթների ու հետևությունների լույսի ներքո» հարցը։

Պլենումում զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

Զեկուցման շուրջը մտքերի փոխանակությանը մասնակցեցին Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն. Ներսիսյանը, Լենինականի դարբնոցամամլիչային սարքավորումների գործարանի բանվոր ընկ. Մ. Ա. Թորոսյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, Հայկական ՍՍՀ պետպլանի նախագահ ընկ. Հ. Ս. Սաղոյանը, Ախուրյանի շրջանի Արևիկ գյուղի կոլտնտեսության օղակավարուհի ընկ. Թ. Լ. Ղուկասյանը, ՀԱՄԽ-ի նախագահ ընկ. Լ. Գ. Սահակյանը, Հայաստանի կոմկուսի Նաիրիի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Կ. Այվազյանը, Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստր ընկ. Ա. Ա. Գևորգյանը, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի նախագահության գլխավոր գիտնական քարտուղար ընկ. Գ. Ա. Գալոյանը, Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի պետ ընկ. Հ. Ա. Ղանդիլյանը, մեքենաշինական արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. Գ. Ս. Կարապետյանը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկված հարցի վերաբերյալ ընդունեց համապատասխան որոշում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր։

Պլենումը ընկ. Պ. Պ. Անիսիմովին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղարի և Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից՝ նրան ՍՍՀՄ պետպլանի նախագահի տեղակալ նշանակելու կապակցությամբ։

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար և Կենտկոմի բյուրոյի անդամ ընտրեց ընկ. Գենադի Նիկոլաևիչ Անդրեևին։

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գյուղատնտեսության բաժնի վարիչ հաստատեց ընկ. Հ. Գ. Նավասարդյանին, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի շինարարության և քաղաքային տնտեսության բաժնի վարիչ՝ ընկ. Ս. Գ. Մութաֆյանին։

Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցեց ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի տեղակալ ընկ. Վ. Մ. Նիկիֆորովը։

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

*Մեր հայրենիքը թևակոխել է տասներորդ հնգամյակի չորրորդ տարին։ Արդեն ետևում են մնացել երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման, սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման համար կատարված ստեղծարար, համառ, լարված աշխատանքի երեք տարիները։*

*Սովետական բոլոր մարդկանց ոգեշունչ աշխատանքի, սոցիալիստական մրցության լայն թափի, մեր կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյի կազմակերպչական ու քաղաքական տիտանական գործունեության շնորհիվ տասներորդ հնգամյակի անցած երեք տարում նոր մեծ հաջողություններ են ձեռք բերվել ՍՄԿԿ XXV համագումարի մշակած կոմունիստական շինարարության խնդիրների իրականացման գործում։*

*Մասսաների քաղաքական և աշխատանքային հսկայական խանդավառության պայմաններում վերջերս մեր երկրում տեղի ունեցան պետական իշխանության բարձրագույն մարմնի՝ ՍՍՀՄ տասներորդ գումարման Գերագույն սովետի ընտրությունները։ ՍՍՀՄ նոր Սահմանադրության հռչակումից հետո անցկացված այդ առաջին ընտրությունները քաղաքական խոշոր իրադարձություն եղան սովետական ժողովրդի կյանքում, մեկ անգամ ևս համոզիչ կերպով վկայեցին ժողովրդապետության հաղթանակը, սովետական հասարակության գաղափարաքաղաքական անխզելի միասնությունը, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության կուռ համախմբվածությունը հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը, նրա մարտական շտաբի՝ ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը։*

*Սովետական ամբողջ ժողովուրդը մեծ հավանությամբ և միահամուռությամբ ընդունեց Մոսկվա քաղաքի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ հանդիպման ժամանակ ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառը, որի մեջ տրված է մեր երկրի քաղաքական, տնտեսական և կուլտուրական զարգացման խոր վերլուծությունը, ամփոփված են ՍՍՀՄ Գերագույն սովետի նախորդ ընտրություններից հետո անցած ժամանակամիջոցում ձեռք բերված արդյունքները։*

*Սովետական Հայաստանի համար տասներորդ հնգամյակի անցած երեք տարիները նույնպես եղել են տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր ասպարեզներում անշեղ առաջադիմության, ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների իրականացման գործում ծանրակշիռ նվաճումների ժամանակաշրջան։*

*Անցած տարիները նշանավորվեցին ազգային եկամտի, արդյունաբերական արտադրանքի արտադրության և իրացման ծավալների, գյուղատնտեսական մթերքների հիմնական տեսակների պետական մթերումների ծավալների, տրանսպորտի բոլոր տեսակների բեռնաշրջանառության, ապրանքաշրջանառության և բնակչության կենցաղային սպասարկման ծավալների, աշխատավորների բարեկեցության հիմնական ցուցանիշների գծով առաջադրանքների կատարմամբ ու գերակատարմամբ։ Ազգային եկամուտը երեք տարում հնգամյա պլանով նախատեսված 19,5 տոկոսի դիմաց աճեց 22,2 տոկոսով։ Հանրային արտադրության զարգացումը ուղեկցվում էր ժողովրդական տնտեսության և նրա առանձին ճյուղերի կառուցվածքի առաջադիմական փոփոխություններով։ Հնգամյակի երեք տարիների արդյունքները ամբողջությամբ վերցրած համա-*

պատասխանում են մեր տնտեսական ու սոցիալական զարգացման պլաններին։

Կուսակցությունը մեզ սովորեցնում է զգաստորեն գնահատել ձեռք բերած հաջողությունները, չհանգստանալ նվաճածով։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում մեզ տրված են հանձնարարականներ և կարևոր խնդիրներ, որոնց լույսի ներքո էլ պետք է քննության առնենք ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում մեր աշխատանքի արդյունքները և նախատեսենք արդեն մոտակա տարիներս դրանց իրականացման ուղիները։ Ճառում արտահայտված քննադատական դիտողությունները լիովին վերաբերում են նաև հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման բնագավառի մեր գործունեությանը։

Բանն այն է, որ մենք կարող էինք և կարող ենք ավելի մեծ արդյունքների հասնել, աշխատել ավելի արդյունավետ, եթե մեզ հաջողվեր ավելի լրիվ օգտագործել մեր ունեցած բոլոր տնտեսական ու քաղաքական հնարավորությունները, եթե մեզանում բոլոր օղակներում լիներ ավելի մեծ կազմակերպվածություն, կարգապահություն, իրազեկություն, գործարարություն, բարձր պատասխանատվության զգացում, եթե մեր բոլոր կադրերը իսկական պետական մոտեցում ցուցաբերեին իրենց առջև դրված խնդիրների լուծմանը, եթե նրանց աշխատանքում չլինեին քարացածություն և դանդաղկոտություն, եթե նրանց չխանգարեր տնտեսական ստերեոտիպ մտածողության իներցիայի ուժը։

Այնուհետև հանգամանորեն վերլուծելով հանրապետության ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղի՝ արդյունաբերության աշխատանքը, ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշեց, որ 1976—1978 թվականներին արդյունաբերական արտադրության ծավալը աճել է 25,7 տոկոսով, որը գերազանցում է հնգամյա պլանով նախատեսված աճի տեմպերը։ Աշխատանքային ռեսուրսների առավել լիակատար և ռացիոնալ օգտագործման համար արդյունաբերության մեջ կառուցվածքային փոփոխությունները կատարվել են արդյունաբերության աշխատատար և նվազ նյութատար ճյուղերի առավել արագ զարգացման ուղղությամբ։ Տերիտորիալ համամասնությունները կատարելագործելու և արտադրողական ուժերի տեղաբաշխումը բարելավելու նպատակով հանրապետության փոքր քաղաքներում և բնակավայրերում կազմակերպվում են արդյունաբերական միավորումների և ձեռնարկությունների մասնաճյուղեր։ Փոքր և միջին քաղաքների արդյունաբերության տեսակարար կշիռը արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալի մեջ 1978 թվականին կազմել է 34 տոկոս։ Տասներորդ հնգամյակի գլխավոր սոցիալ-տնտեսական խնդրի լուծման առաջադրանքին համապատասխան, առավել արագ տեմպերով է զարգանում սպառման առարկաների արտադրությունը։

Շարունակվում են արդյունաբերական արտադրության համակենտրոնացման և մասնագիտացման աշխատանքները։ Ներկայումս կան 73 խոշոր արտադրական և գիտաարտադրական միավորումներ, որոնք թողարկում են արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր ծավալի ավելի քան 53 տոկոսը։

Բարձրացել է արտադրության տեխնիկական մակարդակը, նկատելիորեն բարելավվել է թողարկվող արտադրանքի որակը։ 1978 թվականին պետական որականիշով արտադրատեսակների քանակը, 1975 թվականի համեմատությամբ, ավելացավ 2,5 անգամ և արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ դրանց թողարկումը հասցվեց 12,7 տոկոսի։

Հանրապետության արդյունաբերության զարգացման գործում ձեռք բերված էական նվաճումների կողքին տեղ են գտել մի շարք դժվարություններ և թերություններ։ Գլխավոր թերությունն այն է, որ ոչ բոլոր ենթաճյուղերն ու ձեռնարկություններն են երեք տարվա արդյունքներով դուրս եկել հնգամյա պլանով նախատեսված բնագծերը։

Հնգամյա պլանով նախատեսված համախառն արտադրանքի աճի տեմպերից ցածր ցուցանիշներ ունեն նավթաքիմիական արդյունաբերության մինիստրության, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության, սարքաշինության, թեթև և սննդի արդյունաբերության մեքենաշինության մինիստրությունների ձեռնարկություններն ու միավորումները, ինչպես նաև ար-



դյունաբերական շինարարության մինիստրությունը, մթերումների մինիստրությունը։ Այս ամենը հիմնականում վատ տնտեսավարման, նախատեսված խնդիրների իրականացման ուղղությամբ ոչ նպատակասլաց և ոչ հետևողական աշխատանքի հետևանքն է։

Մյուս լուրջ թերությունը շարունակում է մնալ արդյունաբերական արտադրության առանձին օղակներում պետական և պլանային կարգապահության ցածր մակարդակը։ Մեզ այնպես էլ չհաջողվեց ընթացիկ հնգամյակում տնտեսական տարիներն ավարտել առանց ետ մնացող ձեռնարկությունների։ Ամեն տարի միջին հաշվով հանրապետության ձեռնարկությունների 6,5 տոկոսը չէր կատարում արտադրության ծավալի պլանները, գրեթե նույնքան ձեռնարկություններ էլ՝ արտադրանքի իրացման պլանները։

Կուսակցական կոմիտեները, սովետական և տնտեսական մարմինները պետք է հետևողականորեն և կոնկրետ կերպով զբաղվեն յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկությունում պլանային և պետական կարգապահության բարձրացման հարցերով, կոլեկտիվների և կուսակցական կազմակերպությունների հետ համատեղ գործուն միջոցներ նախատեսեն՝ անպայման ապահովելու 1979—1980 թվականների պլանների կատարումը և հասնելու հնգամյա պլանով նախատեսված բնագծերին։

Այն առաջնահերթ խնդիրը, որ մենք այսօր դնում ենք արդյունաբերության առջև, արտադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացումն է։ Այդ մեծ պրոբլեմի արմատական հարցերն են աշխատանքի արտադրողականության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացումը, կարողությունների ռացիոնալ օգտագործումը, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների տնտեսումը, արտադրանքի մեկ միավորի թողարկման վրա կատարվող ծախսերի առավելագույն նվազեցումը։

Հանրապետության արդյունաբերության նեղ տեղերից մեկը այսօր աշխատանքի արտադրողականությունն է։ Բանն այն է, որ ըստ հնգամյա առաջադրանքների այդ կարևորագույն ցուցանիշը չկատարող ձեռնարկությունների թիվը դեռևս մեծ է։

Աշխատանքի արտադրողականության աճի՝ հնգամյա պլանի առաջադրանքներից զգալիորեն ետ են մնում թե՛ միութենական ենթակայության, թե՛ միութենական-հանրապետական ենթակայության շատ ձեռնարկություններ։ Դրա հետևանքով արդյունաբերությունը աշխատանքի արտադրողականության աճի տեմպերով չի հասել հնգամյա պլանով նախատեսված բնագծին։

1976—1978 թթ. աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստացվել է արդյունաբերական արտադրանքի արտադրության աճի 52,5 տոկոսը, իսկ դա ցածր է հնգամյա պլանի առաջադրանքից։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ համախառն արտադրանքի աճը սննդարդյունաբերության մինիստրության գծով կազմեց ընդամենը 37,7 տոկոս, (հանրապետության տերիտորիայում), շինանյութերի արդյունաբերության մինիստրության՝ 39,3, գյուղական շինարարության մինիստրության՝ 43,6, թեթև արդյունաբերության մինիստրության գծով՝ 55,7 տոկոս։ Ցածր է արտադրության ծավալների աճը նաև միութենական ենթակայության ձեռնարկություններում։

Պլանավորման թերությունները, տնտեսական գործունեության բնագավառում ձեռք բերված որակական ցուցանիշների քննադատաբար գնահատման բացակայությունը, կադրերի նկատմամբ անհրաժեշտ պահանջկոտության թուլացումը հանգեցրին այն բանին, որ այսօր լուրջ վտանգ է սպառնում արդյունավետության ամենակարևոր ցուցանիշներից մեկի՝ աշխատանքի արտադրողականության հնգամյա առաջադրանքի կատարմանը։

Աշխատանքի արտադրողականության աճի ցածր տեմպերի պատճառներից մեկը, չխոսելով արդեն մյուս հիմնական պատճառների մասին (տեխնիկական պրոգրես, արտադրության կազմակերպման ու տեխնոլոգիայի մակարդակ, արտադրական ու աշխատանքային կարգապահություն և այլն) աշխատողների գերպլանային թվի առկայությունն է։ Այսպես, թեթև արդյունաբերության մինիստրությունը 1978 թ. համախառն արտադրանքի

պլանը կատարեց 101,8, իսկ աշխատողների քանակի պլանը՝ 102,4 տոկոսով։ Դրա հետևանքով աշխատանքի արտադրողականության ցուցանիշը կատարվեց 99,4 տոկոսով։ Լենինականի հղկող հաստոցների գործարանը արտադրանքի ծավալի պլանը կատարեց 100,2, իսկ աշխատողների թվի պլանը՝ 104,4 տոկոսով, որի հետևանքով աշխատանքի արտադրողականության ցուցանիշը կատարվեց 95,9 տոկոսով և այլն։

Այստեղ տեղին է ասել մեր որոշ ղեկավար աշխատողների, որ նրանց խանգարում է տնտեսական քարացած մտածողության իներցիան։ Երբ այդ ընկերներին հանդիմանում ես աշխատանքի արտադրողականության ցուցանիշների կապակցությամբ, ապա նրանք, որպես կանոն, ասում են. չէ՞ որ մենք սահմանված պլանները կատարում և գերակատարում ենք, էլ ինչ եք ուզում մեզանից։ Ընդ որում, նրանք մոռանում են, որ սահմանված պլանները ցածր են և իրենք, որպես ղեկավարներ, պետք է ձգտեն այն բանին, որ յուրաքանչյուր ձեռնարկության պլան համապատասխանի հնգամյակի առաջադրանքների մակարդակին։

Հարց է ծագում. մինիստր ընկ. Ս. Առաքելյանը չգիտե՞, արդյոք, սննդարդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման հնգամյակի առաջադրանքների կատարման անհրաժեշտության մասին։ Իհարկե, գիտե։ Բայց ըստ մտածողության իներցիայի, եթե սահմանված (թեկուզ և ցածր) պետական պլանը կատարվում է, ապա ամեն ինչ կարգին է։

Ընդ որում, նա մոռանում է, որ ինքը պետք է լինի ճյուղի յուրաքանչյուր ձեռնարկությունում այդ կարևոր ցուցանիշի աճի պլանների սահմանման գլխավոր նախաձեռնողը, պլաններ, որոնք չպետք է ցածր լինեն հնգամյակով նախատեսված մակարդակից։ Չէ՞ որ ոչ այլ կերպ, քան ճյուղում տեխնիկական առաջընթացի ապահովման գործում եղած անտարբերությամբ է բացատրվում այն փաստը, որ երեք տարում աշխատանքի արտադրողականության աճն այստեղ կազմել է 6,3 տոկոս՝ սահմանված 9,3-ի դիմաց։

Կենտրոնական կոմիտեն այսօր պետք է հանրապետության պետպլանի, մինիստրությունների և գերատեսչությունների, միավորումների և ձեռնարկությունների ղեկավարներից պահանջի հնգամյակի մնացած ժամանակաշրջանում անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել՝ ապահովելու հնգամյակի առաջադրանքների կատարումը տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով, հատուկ ուշադրություն դարձնելով աշխատանքի արտադրողականության աճի ապահովման վրա։

Կենտրոնական կոմիտեն Կենտկոմի ճյուղային բաժիններից, կուսակցության քաղկոմներից և շրջկոմներից պահանջում է ուժեղացնել վերահսկողությունը տնտեսական մարմինների գործունեության նկատմամբ, թույլ չտալ, որ նրանք պլանավորեն ձեռնարկությունների աշխատանքի որակական ցուցանիշների աճի ավելի ցածր տեմպեր, քան նախատեսված է հնգամյակի առաջադրանքով։ Անհրաժեշտ է քննության առնել յուրաքանչյուր ձեռնարկությունում աշխատանքի արտադրողականության աճի հնգամյա պլանի առաջադրանքների կատարման վիճակը և ձեռնարկել դրանց անպայման իրականացումն ապահովող միջոցառումներ։

Այնուհետև անդրադառնալով թողարկվող արտադրանքի որակի հարցերին, զեկուցողն ընդգծեց, որ ձեռք բերված արդյունքները չեն բավարարում այսօրվա աճած պահանջները։ Դեռևս քիչ չեն ձեռնարկություններ, որոնք թողարկում են ցածրորակ արտադրանք, խախտում պետական ստանդարտների և տեխնիկական պայմանների պահանջները։

Պետք է մշտապես հիշել, որ արտադրանքի որակի բարձրացումը կոմպլեքսային պրոբլեմ է։ Դրա հաջող լուծումը պահանջում է հոգատարություն տեխնիկայի անընդհատ նորացման և տեխնոլոգիայի կատարելագործման նկատմամբ, պահանջում է կազմակերպել համաչափ աշխատանք բոլոր օղակներում, բարձրացնել կադրերի որակավորումը, աշխատանքի կարգապահությունը։

Դեռևս քիչ չեն անորակ արտադրանք թողարկող, պետական ստանդարտները և տեխնիկական պայմանները խախտող ձեռնարկությունները։ Միայն



1978 թ. 155 անգամ արգելվել է արտադրանքի առաքումը՝ ավելի քան 7 մլն ռուբլու արժողությամբ, իսկ 64 ձեռնարկությունների նկատմամբ կիրառվել են տնտեսական սանկցիաներ՝ մոտ երկու մլն ռուբլու գումարով, որից 1,4 մլն ռուբլին բաժին է ընկնում թեթև արդյունաբերության ձեռնարկություններին։

Ստուգումները, օրինակ, բացահայտեցին կուլտուր-կենցաղային և տնտեսական օգտագործման ապրանքների ցածր որակը «Հայկենցաղքիմ» միավորումում, որտեղ խոտանվեց արտադրանքի ստուգված ծավալի ավելի քան 52 տոկոսը, իսկ Շինուհայրի ռետինե կոշկեղենի գործարանում՝ ավելի քան 60 տոկոսը։ 1978 թ. ավելացավ արտադրանքի խոտանված տեսակների ծավալը սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում։

Ցածր որակի պատճառով հաճախ չեն կատարվում արտահանության նպատակով նախատեսված արտադրանքի մատակարարման պլանները, ընդ որում, հաճախ մատակարարվող արտադրանքի համար արտասահմանյան սպառողներից ստացվում են ռեկլամացիաներ։ Իսկ դա ոչ միայն տնտեսական, այլև, որ ավելի կարևոր է, բարոյաքաղաքական կորուստ է։ Այդ կապակցությամբ մենք լուրջ պահանջներ ունենք Երևանի ֆրեզերային հաստոցների, Լենինականի հղկող հաստոցների գործարանների և այլ արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարների ու կուսկազմակերպությունների նկատմամբ, որոնք չեն կատարել արտահանության համար նախատեսված արտադրանքի մատակարարման իրենց պարտականությունները։

Արդի փուլում տնտեսական քաղաքականության առաջնահերթ խնդիրը, ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, գիտատեխնիկական առաջադիմության արագացումն է։ Դրա հետ անխզելիորեն կապված է տնտեսական և կուլտուրական շինարարության արմատական պրոբլեմների լուծումը, տասներորդ հնգամյակի սոցիալական նպատակների իրականացումը։ Գիտության և տեխնիկայի բնագավառում կատարվող հեղափոխությունը պահանջում է արմատական փոփոխություններ տնտեսական գործունեության ոճի և մեթոդների մեջ։ Այն պահանջում է կատարելագործել պլանավորումն ու տնտեսական խթանումը, որպեսզի օբյեկտիվ պայմաններ ստեղծվեն շուտափույթ իրականացնելու գիտատեխնիկական նոր գաղափարները՝ սկսած դրանց մշակումից մինչև մասսայական արտադրություն։

Չնայած որոշ դրական արդյունքներին, մեզանում նոր տեխնիկայի մշակման և արմատավորման գործում էական թերություններ կան։ Արտադրության առաջադիմության պարտադիր պայման է յուրաքանչյուր ձեռնարկությունում նոր տեխնիկայի ու ժամանակակից տեխնոլոգիայի արմատավորման, աշխատանքի և կառավարման կազմակերպման կատարելագործման պլանների անշեղ կատարումը։

Մենք ամեն տարի հսկայական միջոցներ ենք ծախսում գործարանների, ֆաբրիկաների, էլեկտրակայանների և արդյունաբերական մյուս օբյեկտների կառուցման վրա։ Եվ, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, շատ կարևոր է, որ ինդուստրիայի զարգացման վրա ծախսված ամեն մի ռուբլին, որքան կարելի է, շուտ փոխհատուցվի։ Տնտեսավարման պրակտիկան տրամադրում է ոչ քիչ փաստեր, որոնք համոզիչ կերպով վկայում են, որ բոլոր ճյուղերում կարողությունների յուրացման նորմատիվ ժամկետները կարելի է զգալիորեն կրճատել և դրա հաշվին երկրին լրացուցիչ տալ տասնյակ միլիոնավոր ռուբլիների արտադրանք։

Դրա հետ մեկտեղ որոշ ձեռնարկությունների, արտադրությունների, արտադրամասերի ստեղծումը, որոնք կոչված են ավելացնելու երկրին հարկավոր արտադրանքի թողարկումը, պատշաճ արդյունք չի տալիս, երբեմն էլ վնաս է բերում։ Այստեղ պատճառները մի քանիսն են։ Նոր գործարանների ու արտադրամասերի նախագծերի մեջ դեռևս հաճախ ներդրվում է ոչ բավարար կատարյալ տեխնոլոգիա, արտադրական պայմաններում չփորձարկված սարքավորում։ Խիստ բացասական ազդեցություն են գործում ամեն տեսակ շինարարական թերությունները, որոնք երբեմն շատ էական են և խանգարում են տեխնոլոգիական շղթայի նորմալ աշխատանքին։

Նոր կարողությունների առավել արագ յուրացումը ուղղակիորեն կախված

է բանվորների ու մասնագետ կադրերի ժամանակին պատրաստումից, նրանց համար բնակարանային և կուլտուր-կենցաղային պատշաճ պայմաններ ստեղծելուց։ Միայն այդպես կարելի է ձեռնարկությունները ժամանակին ապահովել որակյալ կադրերով։ Այս հարցերը պետք է գտնվեն մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների, տեղական կուսակցական և սովետական մարմինների ուշադրության կենտրոնում։ Նրանք կոչված են ավելի լավ վերահսկելու ինչպես նոր կարողությունների կառուցման ընթացքը, այնպես էլ դրանց նախագծային ռեժիմի արագ յուրացումը։

Արտադրության արդյունավետության վրա խիստ բացասաբար է ազդում աշխատանքային ցածր կարգապահությունը, կադրերի զգալի հոսունությունը։ Չէ որ աշխատաժամանակի լրիվ և ռացիոնալ օգտագործումը մեր ազգային հարստության բազմապատկման գլխավոր աղբյուրներից մեկն է։ Աշխատաժամանակի մեծ կորուստներ ենք ունեցել թեթև արդյունաբերության, սննդարդյունաբերության, շինանյութերի արդյունաբերության մինիստրությունների, ինչպես նաև էլեկտրատեխնիկական և հաստոցագործիքաշինական արդյունաբերության ձեռնարկություններում։

Հանրապետության ներքին գործերի մինիստրության տվյալներով, ընթացիկ տարվա փետրվարին Երևան քաղաքում ստուգված անձնական օգտագործման 900 ավտոմեքենաներից 300-ի վարորդները երթևեկել են աշխատանքի ժամին իրենց անձնական գործերով՝ առանց ադմինիստրացիայի թույլտվության, իսկ 360-ից ավելին, իբրև թե ծառայողական գործով՝ ադմինիստրացիայի թողտվությամբ։ Եվ դեռ որքա՜ն գործալքողներ, աշխատանքի ժամին անբան քարշ եկողներ կան հանրապետության քաղաքներում ու գյուղերում։

Արտադրության աճի լուրջ խոչընդոտներից է բանվորական կադրերի հոսունությունը։ Թեև հնգամյակի երեք տարում հոսունության մակարդակը փոքրինչ իջել է, այնուամենայնիվ, այն դեռևս շատ բարձր է և 1978 թ. կազմել է 20,1 տոկոս։

Շատ աշխատաժամանակ է կորչում այն պատճառով, որ սպասարկման ոլորտի հիմնարկները բաց են միայն այն ժամերին, որոնք հարմար չեն աշխատավորների համար։ Հաճախ զանազան պաշտոնական անձինք նույնպես այցելուների ընդունելությունները նշանակում են աշխատանքային ժամերին։

Ինչո՞վ են ձեռնարկությունների ղեկավարները փոխհատուցում աշխատաժամանակի կորուստը և կադրերի հոսունությունը։ Դա կատարում են արտաժամյա աշխատանքով և սահմանվածից ավելի արտադրական անձնակազմ պահելով։ Իսկ հետևանքը բոլորին լավ հայտնի է. չի ապահովվում արտադրության արդյունավետության կարևոր ցուցանիշը՝ աշխատանքի արտադրողականության աճը։

Կուսակցական կազմակերպությունների, մինիստրությունների, գերատեսչությունների, արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարների պարտքն է՝ ըստ ամենայնի հոգ տանել աշխատանքային կարգապահության ամրապնդման, աշխատաժամանակի կորուստների կրճատման, կադրերի ամրացման և հոսունության վերացման մասին։ Հարկավոր է ձեռնարկություններում հաստատակամորեն և կոմպլեքսայնորեն լուծել սոցիալական հարցերը, բարելավել աշխատանքային պայմանները, ավելի ակտիվորեն զբաղվել մարդկանց դաստիարակությամբ, կազմակերպել բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների որակավորման անընդհատ բարձրացման սիստեմ, կոլեկտիվներում հաստատել ստեղծագործական մթնոլորտ, հետևողականորեն հաստատել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի սկզբունքները։

Արդյունաբերության մեջ սոցիալիստական մրցության առանցքը պետք է լինի պայքարը բարձր արդյունավետության և որակի համար, արտադրական ֆոնդերի և կարողությունների առավելագույն օգտագործման, աշխատանքի արտադրողականության ըստ ամենայնի բարձրացման, հումքի, վառելիքի, էներգետիկ և աշխատանքային ռեսուրսների խնայողության ռեժիմի համար։

Հնգամյակի անցած տարիներին պլանային առաջադրանքները հիմնականում ապահովել են հանրապետության տրանսպորտի և կապի աշխատողները։



Երկաթուղայինները բեռնաշրջանառության պլանը կատարել են 102,8 տոկոսով, պլանից ավելի փոխադրվել են հարյուր հազարավոր տոննա ժողովրդատնտեսական բեռներ։ Սակայն, մյուս կողմից, սիստեմատիկաբար թերակատարվում է օրվա միջին բեռնաթափման պլանը (այն կազմում է 90—95 տոկոս), որը հետևանք է բեռներ ստացող շատ ձեռնարկությունների և կազմակերպությունների անբավարար աշխատանքի։

Տրանսպորտում, հատկապես երկաթուղային տրանսպորտում, եղած դժվարությունների մասին խոսեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1978 թ.) պլենումում։ Այդ առթիվ լրջորեն խոսվեց նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմի դեկտեմբերյան (1978 թ.) պլենումում։

Երկաթուղային տրանսպորտի դժվարին պայմաններում մենք անբավարար ենք օգտագործում մեր հնարավորությունները։ Միայն 1978 թ. բոլոր ուղեմատույցներում բեռնման և բեռնաթափման օպերացիաների ուշացման պատճառով գոյացել է 245.000 վագոնի պարապուրդ, որի համար զանազան ձեռնարկությունների և կազմակերպությունների ներկայացվել է մոտ երեք մլն ռուբլու տուգանք, իսկ մեր բեռնման ռեսուրսների կորուստները կազմել են 75 հազար վագոն։ Չնայած հանրապետության շինանյութերի արդյունաբերության, մթերումների, սննդարդյունաբերության մինիստրությունների, միութենական ենթակայության մի շարք ձեռնարկությունների հասցեին արված քննադատությանը, դրությունը դանդաղ է շտկվում։ Հատկապես վատ են կազմակերպվում բեռնման ու բեռնաթափման օպերացիաները շաբաթ և կիրակի օրերին։

Անտնտեսավարության և շռայլության նման փաստերի դեմ պայքարը բոլոր կուսակցական, սովետական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների, ժողովրդական վերահսկողության մարմինների կարևոր խնդիրն է։

Հանրապետության ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության ձեռնարկությունները երեք տարում բեռների փոխադրման պլանը կատարել են 103,5 տոկոսով, պլանից ավելի փոխադրվել է 6,3 մլն տոննա ժողովրդատնտեսական բեռ։ Սակայն բեռնատար ավտոտրանսպորտն առայժմ օգտագործվում է ոչ բարձր արդյունավետությամբ, ցածր է կենտրոնացված բեռնափոխադրումների տեսակարար կշիռը։ Ծայրաստիճան անբավարար են օգտագործվում ավտոկցիչները, չեն կազմակերպվում ավտոգնացքներ։ Որոշ ավտոտրանսպորտային ձեռնարկություններում պատշաճ բարձրության վրա չեն պետական և աշխատանքային կարգապահությունը, կան հավելագրումների և աչքակապության փաստեր։ Ուղևորների փոխադրման պլանը կատարվել է 99,1 տոկոսով։

Հաստատորեն ընթանալով ՍՄԿԿ XXV համագումարի նախատեսած կուրսով, կատարելով նրա որոշումները և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կուսակցական կազմակերպությունների և գյուղի աշխատավորների ջանքերը նպատակամղել է գյուղատնտեսական արտադրության ռեզերվների ու հնարավորությունների առավել լիակատար օգտագործմանը, հողագործական և անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների պլանների հաջող կատարմանը։

Մեր կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպության, սովետական և գյուղատնտեսական մարմինների աշխատանքի գլխավոր արդյունքը անցած տարիներին գյուղատնտեսության դինամիկ զարգացումն է։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը տասներորդ հնգամյակի առաջին երեք տարում հնգամյա պլանով նախատեսված 18,4 տոկոսի դիմաց աճեց 22,4 տոկոսով։ Պայքարելով ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կենսագործման համար, հանրապետության գյուղատնտեսության աշխատավորները հաջողությամբ կատարեցին պետությանը հացահատիկի, շաքարի ճակնդեղի, բանջարեղենի, պտղի, մսի, կաթի և բրդի վաճառքի հնգամյակի երեք տարիների առաջադրանքները։

Հողագործության կուլտուրայի բարձրացման և ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսի կիրառման հիման վրա զգալիորեն ավելացավ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։





Սակայն այդ հաջողությունները ամբողջությամբ վերցրած մեզ հիմք չեն տալիս գերագնահատելու գյուղատնտեսության ասպարեզում մեր ձեռք բերածը, անտեսելու ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղում մեր ունեցած թերություններն ու վրիպումները։

Մենք պետք է հասնենք գյուղատնտեսական արտադրության մեջ պլանային, պետական կարգապահության բարձրացման։ Սխալ կլիներ խոսել գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների՝ տասներորդ հնգամյակի առաջին երեք տարիների պետական պլանային առաջադրանքների իրականացման լիակատար բարեհաջողության մասին, քանի որ ոչ բոլոր շրջաններն ու տնտեսություններն են ապահովել դրանց կատարումը։

Հանրապետության որոշ շրջաններում անբավարար է իրականացվում անասնապահության զարգացման կազմակերպական-տնտեսական միջոցառումների կոմպլեքսը։

Կուսակցության մի շարք շրջկոմներ և շրջսովետների գործկոմներ չեն հասել այն բանին, որ յուրաքանչյուր կոլտնտեսությունում և սովխոզում արդյունավետ օգտագործվեն արտադրական ֆոնդերը, կապիտալ ներդրումներն ու աշխատանքային ռեսուրսները։ Գյուղատնտեսության զարգացման հիշյալ թերությունները բացատրվում են նաև նրանով, որ կուսակցության շրջկոմները դեռևս լրիվ չեն վերակառուցել իրենց աշխատանքը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հուլիսյան պլենումների որոշումների պահանջների լույսի ներքո, մինչև վերջ չեն հրաժարվել աշխատանքի հնացած մեթոդներից։ Որոշ շրջկոմներ անբավարար են բարձրացնում սովետական և տնտեսական կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարների պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, չեն հասնում այն բանին, որ բոլոր ղեկավար կադրերը խստիվ պահպանեն կուսակցական և պետական կարգապահությունը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը հանրապետության պետպլանից, գյուղատնտեսության մինիստրությունից, սննդարդյունաբերության մինիստրությունից, անտառային տնտեսության պետական կոմիտեից, հանրապետության շրջանային կուսակցական, սովետական ու գյուղատնտեսական մարմիններից պետք է պահանջի կոնկրետ և գործնական միջոցներ ձեռնարկել՝ ապահովելու ամբողջությամբ վերցրած յուրաքանչյուր շրջանի, յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի, յուրաքանչյուր բրիգադի, ֆերմայի և օղակի կողմից տասներորդ հնգամյակի սահմանած պլանների ոչ միայն կատարումը, այլև զգալի գերակատարումը։

Հարկավոր է ամենուրեք հաստատել աշխատանքի իսկական կուսակցական, ստեղծագործական ոճ, բարելավել վերահսկողությունը կադրերի գործունեության նկատմամբ, ընդ որում, վերահսկողությունը պետք է իրականացվի ոչ միայն դիրեկտիվ մարմինների կողմից, այլ նաև ներքևից՝ սկզբնական կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների կողմից։

Այժմ գլխավորը և ամենաանհետաձգելին հողային ռեսուրսների, ոռոգման ջրի, տեխնիկայի, հանքային պարարտանյութերի և մյուս նյութատեխնիկական միջոցների ռացիոնալ օգտագործումն է։ Անհրաժեշտ է նշել, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների խորհրդի ձեռնարկած միջոցների շնորհիվ վերջին տարիներին մեզ հաջողվել է որոշ չափով բարելավել հողօգտագործումը հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում։

Սակայն այսօր մենք պետք է ինքնաքննադատաբար նշենք, որ մի քանի շրջաններում հողային ռեսուրսների օգտագործման վիճակը դեռևս անբավարար է։ Բավական է ասել, որ 1978 թվականին ավելի քան 23 հազար հեկտար վարելահող մնում էր գյուղատնտեսական շրջանառությունից դուրս, որից 6,1 հազար հեկտարը ոռոգելի հողեր են։

Ժամանակն է, որ կուսակցական, սովետական ղեկավարները, գյուղատնտեսության մինիստրությունը և մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությունը վերջ տան անտնտեսավարության նման փաստերին, գործուն



միջոցներ ձեռնարկեն ռացիոնալ կերպով և լրիվ օգտագործելու բոլոր հողային ռեսուրսները։

Արդարացի վրդովմունք է առաջացնում այն փաստը, որ վերջին տարիներին հանրապետությունում չեն կատարվում նոր հողատարածությունների յուրացման, կուլտուր-տեխնիկական միջոցառումների կիրառման առաջադրանքները։ Ստեղծվել է այն արատավոր պրակտիկան, երբ հանրապետությունում հողատարածությունների գյուղատնտեսական յուրացման պլանը ամբողջությամբ կատարելու պայմաններում, նոր հողերի յուրացման հիմնական շրջաններում՝ Թալինում և Աշտարակում, այն իրականացվում է ընդամենը 35—40 տոկոսով։

Հետաքրքրական է հարցնել գյուղատնտեսության մինիստրության, գյուղտեխպետկոմի, «Հայգլխջրշին»-ի, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության ղեկավարներին, թե ինչ հողատարածությունների հաշվին են նրանք մտադիր ավելացնել խաղողի, պտուղների, բանջարեղենի, կարտոֆիլի արտադրության ծավալը, եթե նրանք ձախողում են Ախուրյանի և Ազատանի ջրամբարների, Արզնի—Շամիրամի ոռոգման համակարգին ենթակա նոր հողերի յուրացման պլանը։

Անհրաժեշտ է, որ հանրապետության Մինիստրների խորհուրդը մշակի նոր հողատարածությունների գյուղատնտեսական յուրացման աշխատանքներն արագացնելու կոմպլեքս միջոցառումներ և լուծի բոլոր կազմակերպական-տնտեսական ու տեխնիկական հարցերը, որոնք կապահովեն սահմանված ժամկետներում դրանց գործարկումը։

Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը ժամանակին կատարելու վրա, որտեղ պահանջվում է արագացնել ջրամբարների նախագծումը, նոր սովխոզների կառուցումը, նոր հողերի յուրացումը, ստեղծել «Հայգլխջրշին»-ի նյութատեխնիկական անհրաժեշտ բազա։

Գյուղատնտեսության մինիստրության, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության, կուսակցության շրջկոմների, շրջսովետների գործկոմների, տնտեսությունների ղեկավարների ուղղակի պարտքն ու պարտականությունն է՝ ապահովել ոռոգման ջրի ռացիոնալ օգտագործումը, բարձրացնել ոռոգելի հողագործության արդյունավետությունը։

Մեր հանրապետությունում վերջին տարիներս զգալի աշխատանք է կատարվել բնակչությանը պարենամթերքով, մասնավորապես բանջարեղենով և պտուղով հուսալիորեն ապահովելու ուղղությամբ։ Չնայած հողագործական մթերքների արտադրության նկատելի ավելացմանը, դեռևս դժվարություններ կան բնակչությանը կարտոֆիլ, լրիվ տեսականիով թարմ բանջարեղեն, սեղանի խաղող և ջերմոցային բանջարեղեն մատակարարելու գործում։ Այդ դժվարություններն արագորեն հաղթահարելու նպատակով անհրաժեշտ է, որ պետպլանը, գյուղատնտեսության, առևտրի, սննդարդյունաբերության, մթերումների մինիստրությունները, Հայկոոպի վարչությունը, շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները ավելի ակտիվորեն աշխատեն բանջարեղենի, կարտոֆիլի, խաղողի և պտղի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ, այն հաշվով, որ լրիվ բավարարվեն բնակչության և վերամշակող արդյունաբերության պահանջմունքները, կատարվեն այդ մթերքները թարմ վիճակում երկրի արդյունաբերական կենտրոններ առաքելու առաջադրանքները։

Լուրջ մտահոգություն է առաջացնում բազմամյա տնկարկների, հատկապես խաղողի և ինտենսիվ այգիների տարածությունների դանդաղ աճը։ Հեռանկարում, ինչպես հայտնի է, նախատեսվում է պետությանը խաղողի և պտղի վաճառքի զգալի աճ։ Այդ կարևոր խնդրի լուծման հիմնական ուղիներից մեկը նոր, բարձր բերքատու, ինտենսիվ այգիների հիմնումն է։ Այդ կարծիքին են գյուղատնտեսության մինիստրությունը, հանրապետության խաղողագործական և այգեգործական շրջանների կուսշրջկոմները և շրջգործկոմները։ Բայց որքան էլ տարօրինակ է, հենց նրանք էլ ամեն տարի« հաջողությամբ» ձախողում են նոր այգիներ հիմնելու պլանները։ Միայն ընթացիկ հնգամյակի երեք

տարիներին հանրապետությունում խաղողի նոր այգիների հիմնման պլանը թերակատարվել է 500 հեկտարով։ Այդ գործում թերացել են հատկապես Արարատի, Աշտարակի, Թալինի, Նոյեմբերյանի և մյուս շրջանների տնտեսությունները։ Դանդաղ են ընթանում այգիների նոսրության վերացման աշխատանքները։ Ժամանակն է, որ գյուղատնտեսության մինիստրության և շրջանների ղեկավարները վերջ դնեն այդպիսի անպատասխանատվությանը և կոնկրետ միջոցներ ձեռնարկեն ստեղծված դրությունը շտկելու նպատակով, հուսալի հիմք ստեղծեն պետությանը խաղողի և պտուղների վաճառքի պլանները կատարելու համար։

Խոսելով անասնապահության զարգացման մասին, զեկուցողն ընդգծեց, որ այդ ճյուղի մթերքների արտադրության ավելացումը, վերջին հաշվով, կախված է կերի բավարար բազայից։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ վերջին տարիներս զգալիորեն ամրապնդվել է կոլտնտեսությունների և սովխոզների կերի բազան։ Սակայն նրա զարգացման ձեռք բերված մակարդակը դեռևս չի համապատասխանում անասնապահության հարաճուն պահանջմունքներին, մի բան, որ կասեցնում է այդ ճյուղի արտադրանքի արտադրության աճի տեմպերը։ Կերի կուտակման պլանները շատ տնտեսություններում ու շրջաններում տարեցտարի չեն կատարվում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումում խնդիր դրվեց մեկ պայմանական գլխի համար տարեկան ապահովել առնվազն 3—3,5 հազար կերամիավոր։ Դրա համար անհրաժեշտ է, նախ և առաջ, կոնկրետ միջոցներ իրականացնել՝ բարելավելու դաշտային կերարտադրությունը խոտաբույսերի տարածություններն ու բերքատվությունը խիստ ավելացնելու միջոցով։ Սակայն գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության որոշ շրջկոմներ և շրջսովետների գործկոմներ կոնկրետ գործի չեն անցել։

Այժմ շատ կարևոր է յուրաքանչյուր տնտեսությունում որոշել, թե ընթացիկ տարում ի՞նչ պետք է արվի անասնապահությունը երաշխավորված քանակի կերով ապահովելու համար։ Անհրաժեշտ է լուրջ շրջադարձ կատարել խոտի փոխարեն առավելապես սենաժ պատրաստելու ուղղությամբ և խիստ ավելացնել սիլոսի կուտակումը։ Մեր պայմաններում դա երաշխավորում է կուտակվող կերի բարձր որակը։

Արդի պայմաններում անասնապահության ինտենսիվացումն անիմաստ է առանց տոհմային աշխատանքի և հոտի վերարտադրության հետագա կատարելագործման։ Այդ բնագավառում, հատկապես վերջին տարիներին, հանրապետությունում քիչ բան չի արված։ Դրական գնահատականի է արժանի գյուղատնտեսության մինիստրության հետևողական աշխատանքը՝ ցեղային անասուններ ներմուծելու նպատակով։ Սակայն, անասնապահության մեջ տոհմային աշխատանքի վարման ընդհանուր մակարդակը դեռևս չի համապատասխանում այն մեծ խնդիրներին, որ անասնապահական մթերքների արտադրության և մթերումների գործում ծառացած են կոլտնտեսությունների ու սովխոզների առջև։

Գյուղատնտեսության մինիստրությունը, անասնաբուծության և անասնաբուժության գիտահետազոտական ինստիտուտը, մի շարք շրջանների կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմիններ պատշաճ ուշադրություն չեն նվիրում անասնապահության տոհմային բազայի ամրապնդմանը, տոհմային տնտեսությունների ու ֆերմաների ցանցի ընդլայնմանը, հատկապես անասունների ու թռչունների՝ նախկինում ստեղծված և աճեցված բարձր մթերատու ցեղերի և հիբրիդների կատարելագործմանը։ Ասվածն ապացուցելու համար կարելի է բերել միայն մեկ օրինակ։ Գիտնականների և գյուղատնտեսության մասնագետների ջանքերի շնորհիվ հանրապետությունում ստեղծվել է տավարի նոր՝ կովկասյան գորշ ցեղատեսակ, որի բազան Լոռու տոհմաբուծական գործարանն է։

Եկեք այդ տնտեսության օրինակով տեսնենք, թե ինչպես է ընթացել կովկասյան գորշ ցեղի կատարելագործումը։ 1956 թվականին այստեղ կովերի միջին կաթնատվությունը կազմել է 3.611 կգ՝ 3,6 տոկոս յուղայնությամբ։ 22 տարի անց «կատարելագործումից» հետո, կովերի կաթնատվությունը կազմեց



2.980 կգ՝ 3,5 տոկոս յուղայնությամբ։ Եվ դա՝ ցեղաբուծարանում։ Կարելի է պատկերացնել, թե ինչպիսին է վիճակը մյուս տնտեսություններում։ Մեկնաբանություններն ավելորդ են։

Անհրաժեշտ է արմատապես վերակառուցել աշխատանքը և վճռական միջոցներ ձեռնարկել անասնապահության մեջ տոհմային գործի հետագա կատարելագործման համար։

Մի քանի խոսք այն մասին, թե ինչպես ենք մենք օգտագործում մսի և կաթի արտադրությունն ավելացնելու ռեզերվները։ Ինչո՞ւ է ուշադրությունը կենտրոնացվում այդ հարցի վրա։ Չնայած կատարված դրական աշխատանքին, հանրապետության տնտեսություններում դեռևս կան մսի և կաթի արտադրության ավելացման ներտնտեսական ռեզերվներ և հնարավորություններ, որոնք, ցավոք, խիստ անբավարար են օգտագործվում։ Անհրաժեշտ է որքան կարելի է արագ ներդնել մսացու մատղաշի աճեցման ինտենսիվ մեթոդները, արգելել փոքր քաշ ունեցող, ոչ կոնդիցիոն անասունների հանձնումը, վճռականապես բարելավել նախրի վերարտադրությունը, նվազագույնի հասցնել ստերջությունը։ Մսի մթերումների ավելացման խոշոր ռեզերվ են անասնապահական մասնագիտացված կոմպլեքսները։ Հանրապետությունում վերջին տարիներս դրանց ստեղծման համար հատկացվել են մեծ չափերի կապիտալ ներդրումներ, շարք են մտել անասնապահական խոշոր կոմպլեքսներ և թռչնաֆաբրիկաներ, սակայն գյուղատնտեսության մինիստրության և նրա գլխավոր վարչությունների՝ «Կենդանարդի» և «Թռչնարդի» վատ աշխատանքի պատճառով այդ կոմպլեքսների կարողությունները խիստ անբավարար են օգտագործվում։

Պարենային ռեսուրսների համալրման կարևոր աղբյուր են ձեռնարկությունների, կազմակերպությունների և հիմնարկների գյուղատնտեսական օժանդակ տնտեսությունները։ Հարկավոր է աջակցություն ցույց տալ այդպիսի տնտեսությունների ստեղծման գործում, օգնել նյութատեխնիկական ապահովման հարցում, անասուններ, սերմացու ձեռք բերելու գործում, որպեսզի լրիվ օգտագործվեն գյուղատնտեսական մթերքների արտադրության այստեղ եղած հնարավորությունները։ Դրա հետ մեկտեղ կարևոր նշանակություն ունեն կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օժանդակ տնտեսությունները։ Սակայն այդ ռեսուրսները ևս առայժմ անբավարար են իրացվում։

Այժմ գյուղատնտեսության աշխատավորների համար առավել պատասխանատու ժամանակաշրջան է. ավարտվում է անասունների ձմեռումը, սկսվել են գարնան դաշտային աշխատանքները։ Վերջերս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում ընդունեցին «1979 թվականի բերքահավաքը, գյուղատնտեսական մթերքների մթերումներն ու կերի կուտակումը և 1979—1980 թվականների ժամանակաշրջանում անասունների ձմեռման հաջող անցկացումն ապահովելու լրացուցիչ միջոցառումների մասին»։ Կուսակցության շրջանային կոմիտեները, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները, կոլտնտեսությունների, սովխոզների և միջտնտեսային ձեռնարկությունների ղեկավարները պարտավոր են ապահովել տնտեսությունների և մթերող կազմակերպությունների ժամանակին նախապատրաստումը բերքահավաքին, գյուղատնտեսական մթերքների մթերումներին և կերի կուտակմանը։ Դրա համար անհրաժեշտ է ապահովել բոլոր ցանքերի լիակատար անվթարությունը, միջոցներ ձեռնարկել ուժեղացնելու բերքահավաք մեքենաների և կերի կուտակման տեխնիկայի նորոգման տեմպերը, ժամանակին մշակել ցանքերը, միջոցառումների կոմպլեքս նախատեսել ամբողջ աճեցված բերքի պահպանումը, արագ փոխադրումն ու որակյալ վերամշակումն ապահովելու համար։

Զեկուցման մի զգալի մասը նվիրելով կապիտալ շինարարության ասպարեզում եղած գործերի վիճակին, ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը բերեց հետևյալ թվերը։

Տասներորդ հնգամյակի անցած երեք տարում հանրապետությունում պետական կապիտալ ներդրումների հաշվին գործարկվել են 37,6 տոկոսով ավելի հիմնական ֆոնդեր, քան 9-րդ հնգամյակի համապատասխան ժամանակամիջոցում, գործարկվել են բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ, արտադրամասեր և տեղամասեր, գյուղատնտեսության, տրանսպորտի, կապի և

ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի նոր օբյեկտներ։ Կառուցվել և շահագործման են հանձնվել 2.331 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, իսկ բնակարանային կոոպերատիվ միջոցների հաշվին՝ 273 հազար քառակուսի մետր։ Կառուցվել են 83 հազար աշակերտական տեղով հանրակրթական դպրոցներ, 15,3 հազար տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ։ Շահագործման են հանձնվել 2,6 հազար մահճակալով հիվանդանոցներ և հերթափոխում 3.740 այցելությունների համար նախատեսված պոլիկլինիկաներ։

Կապիտալ շինարարության մեջ, սակայն, ընդհանուր առմամբ, անցած երեք տարում գործերը անբավարար են ընթացել։ Կապիտալ ներդրումների իրացումը կազմել է այդ ժամանակամիջոցի համար հնգամյա պլանով նախատեսվածի 94,2 տոկոսը, այդ թվում շինմոնտաժային աշխատանքներինը՝ 96,2 տոկոս։ Հիմնական ֆոնդերի գործարկումը կազմել է հնգամյա պլանով նախատեսվածի 86,1 տոկոսը։

Այդ ժամանակամիջոցում կապիտալ շինարարության հիմնական ցուցանիշների սիստեմատիկ թերակատարումը հանգեցրել է թերավարտ շինարարության աճի։ Այդպիսի կացության հիմնական պատճառները դարձյալ մնում են կազմակերպական և տեխնոլոգիական թերությունները շինարարական կազմակերպությունների աշխատանքում։ Դրա հետևանքով խափանումներ են լինում շինարարությանը հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներ, արմատուրա, ցեմենտ, շինափայտ, շինարարական մեխանիզմներ, տրանսպորտային միջոցներ և աշխատուժ մատակարարելու գործում։ Ներդաշնակ աշխատանք չկա գըլխավոր կապալային և ենթակապալային կազմակերպությունների միջև։ Տակավին արդյունավետ չեն օգտագործվում շինարարական մեքենաները, շատ կառույցներում պատշաճ բարձրության վրա չի աշխատանքի կազմակերպումը, տրվում են աշխատաժամանակի մեծ կորուստներ։ Դեռևս ցածր է շինարարության որակը։

Շինարարական և մոնտաժային կազմակերպությունների տնտեսական ղեկավարները և կուսակցական կազմակերպությունները անբավարար են զբաղվում նյութական արժեքների և դրամական միջոցների ծախսման գործում խնայողության խիստ ռեժիմի արմատավորմամբ։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը կուսակցության շրջանային և քաղաքային կոմիտեների առջև խնդիր է դնում վճռականապես բարելավել շինարարական և մոնտաժային տրեստների և վարչությունների կուսակցական կազմակերպությունների ղեկավարումը, հասնել այն բանին, որ անհրաժեշտ չափով ուժեղանա նրանց կազմակերպող դերը պետական պլանները անվերապահորեն կատարելու, շինարարության արդյունավետության և որակի բարձրացման ուղղությամբ աշխատավորներին մոբիլիզացնելու գործում։

Հաշվարկները ցույց են տալիս, որ մենք հնարավորություն ունենք շտկելու գործերի վիճակը կապիտալ շինարարության մեջ և ապահովելու պլանների կատարումը։ Այդ բանին պետք է նպատակամղված լինեն մեր բոլոր ջանքերը հնգամյակի մնացած երկու տարում։ Կարելի է վստահորեն ասել, որ հանրապետության շինարարական և մոնտաժային կազմակերպությունների կոլեկտիվները, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, հետևողականորեն վերացնելով շինարարության նախապատրաստման և իրականացման գործում եղած թերությունները, կկարողանան ապահովել ժողովրդատնտեսական օբյեկտների կառուցման ու գործարկման սահմանված պլանների անվերապահ կատարումը։

Հանրապետության էկոնոմիկայի զարգացումը և հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը հնարավորություն են տվել հաջողությամբ կատարելու հանգամյակի երեք տարվա սոցիալական ծրագիրը։ Օգտագործվող ազգային եկամուտը նշված ժամանակաշրջանում ավելացել է 19,5 տոկոսով։ Բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձը բարձրացել է 10,6 տոկոսով, ավելացել են բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները, մեծացել է ապրանքաշրջանառության ծավալը, նկատելիորեն ամրապնդվել է սպասարկման ոլորտի նյութատեխնիկական բազան։



Սակայն դեռևս շատ թերություններ կան բնակչության սպասարկման առաջավոր մեթոդների արմատավորման գործում։ Առևտրի մինիստրության սիստեմում, օրինակ, ինքնասպասարկման խանութների ապրանքաշրջանառության տեսակարար կշիռը ետ է մնում հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքներից և միութենական միջին ցուցանիշներից։

Ինքնասպասարկման խանութների ցանցի ու առևտրի մյուս առաջադիմական մեթոդների զարգացումը կասեցվում է նաև չափակշռված ապրանքների անբավարար թողարկման ու պակասի պատճառով։

Ամենօրյա պահանջարկ վայելող ապրանքների բավարար պաշարների առկայության պայմաններում ապրանքային ռեսուրսների ոչ ճկուն մանևրման պատճառով երբեմն խափանումներ են նկատվում դրանց վաճառման գործում, հատկապես դա հաճախակի երևույթ է գյուղական առևտրում։

Անհամապատասխանություն կա բնակչության պահանջարկի և արդյունաբերության կողմից առաջարկվող տեսականու միջև, որ հաճախ հանգեցնում է որոշ ապրանքների կուտակման, մինչդեռ շուկայում զգացվում է մի այլ տեսակի ապրանքների պակաս։

Տասներորդ հնգամյակի երեք տարիներին հանրապետության բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության սիստեմում սպասարկումների ծավալի աճը կազմել է 34,5 տոկոս՝ պլանով նախատեսված 31,3 տոկոսի դիմաց։ Չնայած կատարված որոշակի աշխատանքին, դեռևս կան չլուծված հարցեր։ Կենցաղային ծառայության նյութատեխնիկական բազան դեռևս չի համապատասխանում այսօրվա աճող պահանջներին։

Հանրապետության առևտրի և կենցաղային սպասարկման մինիստրությունները, Հայկոոպի վարչությունը տակավին լրիվ չափով չեն իրականացնում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումի պահանջները, անհրաժեշտ պայքար չեն ծավալել այդ ճյուղերում նկատվող բացասական երևույթների դեմ։ Սպասարկման ոլորտի ոչ բոլոր կազմակերպություններում են արմատախիլ արվել սովետական առևտրի կանոնների, մանրածախ գների ու գնացուցակների խախտման, գնորդների և հաճախորդների նըկատմամբ կոպտության և անհարգալից վերաբերմունքի դրսևորման փաստերը։

Վերջերս ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, երկրորդ անգամ քննարկելով առևտրում կադրերի ընտրության և դաստիարակության հարցը, նշեց, որ այդ կարևոր գործի նկատմամբ անպատասխանատվության դրսևորման հետևանքով երբեմն ղեկավար և նյութական պատասխանատու պաշտոնների են նշանակվում նախկին աշխատանքում իրենց վարկաբեկած, սոցիալիստական սեփականության հափշտակման համար քանիցս դատված անձինք, որոնք հետագայում ևս շարունակում են զբաղվել դրամաշորթությամբ և այլ չարաշահումներով։

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն ղեկավար կադրերի ընտրության և տեղաբաշխման սկզբունքի կոպիտ խախտման համար Հայկական ՍՍՀ առևտրի մինիստրի տեղակալ ընկ. Վ. Ս. Սահակյանին հայտարարեց խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում։ Առևտրի ցանցի կադրերի ընտրության և տեղաբաշխման գործում եղած թերությունների համար առևտրի մինիստր ընկ. Ս. Ռ. Սաֆարյանը ի ցույց է դրված։

ՀԿԿ Երևանի քաղկոմի բյուրոն, քննարկելով Երևանի քաղսովետի գործկոմի առևտրի և հասարակական սննդի վարչությունների սիստեմում կադրերի ընտրության և տեղաբաշխման հարցը, այդ գործում կոպիտ սխալների, ցանցում տեղ գտած նեգատիվ երևույթների նկատմամբ հաշտվողական վերաբերմունքի համար հասարակական սննդի վարչության պետ ընկ. Ս. Բայրախտարյանին և նրա տեղակալ ընկ. Ա. Առաքելյանին ազատեց իրենց վարած պաշտոններից՝ նրանց ենթարկելով կուսակցական խիստ տույժի։ Պաշտոններից հեռացված են տրեստների և օբյեկտների մի շարք ղեկավարներ, իսկ սրճարանների և ռեստորանների տրեստի նախկին կառավարիչ Գ. Էմինյանը և «Ավտոմատ» միավորման դիրեկտոր Ս. Մանուկյանը վտարված են ՍՄԿԿ շարքերից։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կուսակցության քաղկոմներից և շրջկոմ-

ներից, սկզբնական կուսակցական կազմակերպություններից պահանջում է բնակչության լայն խավերի մասնակցությամբ առավել ակտիվ պայքար ծավալել սպասարկման կուլտուրան բարձրացնելու, ծառայությունների ոլորտի օբյեկտների գործունեությունը բարելավելու համար։

Կենցաղսպասարկման մինիստրությունը դեռևս լիովին չի օգտագործում ցանցն ընդարձակելու և ծառայությունների տեսակներն ընդլայնելու, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու եղած հնարավորությունները, դեռևս անբավարար է զբաղվում պատվերների կատարման որակի բարելավմամբ և սպասարկման կուլտուրայի բարձրացմամբ։

Հանրապետության սոցիալական զարգացման հարցերը, այնուհետև ասաց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, պետք է մշտապես գտնվեն կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ուշադրության կենտրոնում։ Նրանք պարտավոր են ամենօրյա հոգատարություն հանդես բերել մանկապարտեզների և մանկամսուրների, պիոներական ճամբարների, պրոֆիլակտորիումների, սպորտային, բժշկական, կուլտուրական և սոցիալ-կենցաղային նշանակության մյուս օբյեկտների ցանցի ընդլայնման նկատմամբ։ Անթույլատրելի է, երբ հանրապետության մի շարք մինիստրություններ ու գերատեսչություններ, արդյունաբերական ձեռնարկություններ ու կազմակերպություններ խիստ անբավարար են մասնակցում այդ օբյեկտների շինարարությանը, իրենց կոլեկտիվների համար աշխատանքի ու կենցաղի լավ պայմանների ստեղծմանը։

Հանրապետության պետպլանը, շարունակում է զեկուցողը, մեծ աշխատանք է կատարել և ավարտում է տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1990 թվականների հիմնական ուղղությունների մշակումը։ Այդ մշակումները կուսակցական և պետական մեծ կարևորություն ունեն։ Դրանց մակարդակն ու որակը, դրանցում արտացոլված գաղափարներն ու առաջարկությունները մեծապես կկանխորոշեն հանրապետության էկոնոմիկայի հետագա զարգացումը։

Վերջին տարիներին աշխատանք է կատարվում այն ուղղությամբ, որ փոխվի վերաբերմունքը երկարաժամկետ պլանների կազմման գործում, որ դրանք գիտականորեն հիմնավորված լինեն, որոշեն մեր զարգացման հեռանկարը, հաշվի առնելով գիտության ու տեխնիկայի նվաճումները, եղած աշխատանքային ռեսուրսների և բնական հարստությունների ռացիոնալ օգտագործումը, ժողովրդական տնտեսության կառուցվածքի կատարելագործումը, համամասնությունների ճիշտ սահմանումը։

Մեր հանրապետության յուրահատուկ պայմանները պահանջում են գիտական հիմնավորվածությամբ մշակել և լուծել արտադրողական ուժերի ճիշտ, նպատակահարմար տեղաբաշխման պրոբլեմը, որը թե՛ տնտեսական և թե սոցիալական մեծ նշանակություն ունի։

Հանրապետությունում որոշակի աշխատանք է տարվել միջին և փոքր քաղաքներում արդյունաբերական ձեռնարկությունները տերիտորիալ սկզբունքով տեղաբաշխելու նպատակով։ Այդ ամենը մեզ օգնեց՝ լուծելու աշխատանքային ռեսուրսների օգտագործման հարցերը, կանխելու գյուղական բնակչության միգրացիան դեպի քաղաքները և, վերջապես, բարեփոխեց մեր գյուղական բնակավայրերի տեսքը։ Այդ կուրսը մենք հետևողականորեն կշարունակենք նաև առաջիկայում։ Սակայն մենք պետք է հաշվի առնենք, որ հաճախ առանձին ձեռնարկությունների և հատկապես դրանց մասնաճյուղերի հիմնման ժամանակ հապճեպություն է թույլ տրվել և դրանք ստեղծվել են առանց բավարար հիմնավորման, որի հետևանքով մեր առջև այժմ ծառացել է մի շարք բարդ խնդիրների լուծման անհրաժեշտությունը՝ բանվորական ուժով և հումքով ապահովելը, տրանսպորտային և էներգետիկ հնարավորությունների ստեղծումը և այլն։ Այդ ամենից հնարավոր էր խուսափել՝ ստեղծվող ձեռնարկությունների տեղն ու պրոֆիլը որոշելիս բոլոր գործոնները ճիշտ, գիտականորեն հիմնավորելու և հաշվի առնելու դեպքում։

Դեռևս թույլ է տրվում հիմնական ֆոնդերի չարդարացված փոշիացում, չեն նախատեսվում արտադրության տեխնիկական մակարդակի հետագա բարձրացման հնարավորությունները, չի ստեղծվում անհրաժեշտ կոնստրուկտորական և տեխնոլոգիական բազա։

Թերևս նպատակահարմար կլինի մասնաճյուղեր ստեղծել հզոր միավորումներին կից, որոնք հնարավորություն ունենան դրանք սարքավորելու արդի մակարդակով, մշտապես սնելու գիտական ու տեխնիկական մտքով, օգնելու բանվորական ու ինժեներական կադրերի ձևավորման գործում։

Անհրաժեշտ է հիմնական ուղղություններում նախատեսել արդյունաբերության հետագա մասնագիտացում ու համակենտրոնացում, ելնելով աշխատանքի ընդհանուր միութենական բաժանման շահերից՝ ճշտորեն զուգակցելով բնության պահպանության պահանջների կիրառումը և հանրապետության աշխատանքային, հումքային ու մյուս ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը։ Անհրաժեշտ է ճշտորեն որոշել և ժողովրդական տնտեսության զարգացման պլաններում արտացոլել արդյունաբերաարտադրական նոր հանգույցների ստեղծումը և գործող հանգույցների համակողմանի զարգացումը արդյունաբերաարտադրական խոշոր կոմպլեքսների ստեղծման միջոցով։ Պետք է հատուկ ուշադրություն դարձնել նաև կոոպերացումը խորացնելու և ներճյուղային երկարաժամկետ արտադրական կապերն ուժեղացնելու վրա։

Այժմ համառոտակի անդրադառնանք հանրապետության ընդերքի, հանքային հարստությունների խելամիտ օգտագործման հարցին։ Լեռնահանքային, գունավոր ու սև մետաղագործության և շինանյութերի արդյունաբերության զարգացումն ապահովելու նպատակով մոտակա հեռանկարում անհրաժեշտ է ո՛չ միայն միջոցներ պլանավորել երկրաբանական-հետախուզական աշխատանքների և նշված ճյուղերի հումքային բազայի ընդլայնման համար, այլև, որ ոչ պակաս կարևոր է, նախատեսել առավել խելամիտ և կոմպլեքսային օգտագործումն արդեն հաստատված այն հումքային պաշարների, որոնց ռեսուրսների վերարտադրումն անհնար է։ Հանրապետության պետպլանը, շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը, գունավոր մետալուրգիայի վարչությունը պետք է այս հանգամանքին հատուկ ուշադրություն հատկացնեն։ Խոսքը նախ և առաջ պետք է վերաբերվի ինտենսիվ զարգացմանը։

Մենք պետք է հատուկ ուշադրություն նվիրենք նաև ներճյուղային և միջճյուղային կոոպերացիայի խորացմանն ու երկարաժամկետ արտադրական կապերի ուժեղացմանը, մի հանգամանք, որի թերագնահատումը ձեռնարկություններին կարող է իջեցնել բնատնտեսությունների մակարդակի։ Բերենք այսպիսի մի օրինակ։ Մեքենաշինական և մետաղամշակման ձեռնարկություններում օժանդակ բանվորների թիվը հասնում է 40 տոկոսի։ Դրա պատճառներից մեկն այն է, որ չմասնագիտացված արտադրական տեղամասերը (նախապատրաստական, վերանորոգման և այլն) հնարավորություն չեն ընձեռում ներդնելու նորագույն տեխնիկա ու տեխնոլոգիա և այդ հիման վրա բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։ Պետպլանը ընդհանուր ճյուղային օգտագործման համար պետք է նախատեսի մասնագիտացված խոշոր արտադրությունների մի ամբողջ սիստեմի ստեղծում։

Գյուղատնտեսությունը պլանավորելիս անհրաժեշտ է որոշել ինտենսիվ և էքստենսիվ զարգացման համամասնությունները, հատուկ ուշադրություն դարձնել գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման, ջրային և հողային բոլոր ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործման արմատական պրոբլեմների վրա։

Պետք է նախատեսել կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման միջոցառումների կոմպլեքս, դրանք ուղղելով այնտեղ, որտեղից մենք արագ և առավելագույն փոխհատուցում կստանանք։

Պետպլանը, մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է միջոցառումներ նախատեսեն, որպեսզի հանրապետության գիտահետազոտական կազմակերպությունների թեմատիկ նպատակաուղղվածությունը առավելագույնս համընկնի ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղությունների հետ, ապահովվի բազմաթիվ գիտահետազոտական ինստիտուտների, կոնստրուկտորական բյուրոների և նախագծային կազմակերպությունների

աշխատանքի տերիտորիալ կոորդինացումը, դրանք նպատակամղելով էկոնոմիկայի զարգացման հրատապ խնդիրների լուծմանը։

Ինչպես տեսնում եք, մեր գործունեության մեջ տեղ են գտել և այնպիսի թերություններ ու վրիպումներ, որոնց վերացումը մեզանից պահանջում է կազմակերպչական, քաղաքական և դաստիարակչական մեծ աշխատանք, որը կօգնի մեզ հասնելու ավելի լավ արդյունքների, ապահովելու տասներորդ հնգամյակի խնդիրների անթերի կատարումը։ Մի խոսքով, բարեհոգության համար հիմքեր չկան։

Այժմ գլխավոր խնդիրն է՝ մշտապես և հետևողականորեն շարունակել աշխատանքը՝ բարձրացնելու կարգապահությունը, կուսակցական, պետական, արտադրական, աշխատանքային, կատարողական կարգապահությունը մեր կենսագործունեության բոլոր օղակներում։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ կուսակցության և կառավարության բոլոր որոշումները, մեր սեփական որոշումները կատարվեն լրիվ և սահմանված ժամկետներում։ Մենք պետք է բարձրացնենք այդ գործում բոլոր օղակների և բոլոր աստիճանների կադրերի պատասխանատվությունը։

Մենք ունենք հանրապետության ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի հետագա զարգացման՝ լավ կշռադատված և ՍՄԿԿ Կենտկոմի և Մինիստրների խորհրդի որոշումներով ամրապնդված մեծ ծրագիր։ Մեր պարտքն է այդ որոշումները լիովին կատարել։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջադրած խնդիրների լույսի ներքո այսօր ավելի բացորոշ է դառնում էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման խորացման և արդյունավետության բարձրացման, կազմակերպական-կուսակցական աշխատանքի հետագա բարելավման, կուսակցական կոմիտեների գործունեության ոճի ու մեթոդների կատարելագործման անհրաժեշտությունը։

Այստեղից էլ կուսակցական կազմակերպությունների խնդիրը՝ հաստատակամորեն տիրապետել կառավարման արվեստին, տնտեսավարման արվեստին, բարձրացնել մասսաների մեջ կատարվող կազմակերպչական և քաղաքական աշխատանքի մակարդակը։ Դրա բանալին մենք տեսնում ենք այն դրական սկզբունքների ամրապնդման ու զարգացման մեջ, որոնք վերջին ժամանակաշրջանում կիրառում են Հայաստանի կոմկուսի շատ քաղկոմներ ու շրջկոմներ։

Էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման հաջողությունների երաշխիքը, ինչպես հայտնի է, կուսակցական մարմինների աշխատողների խորագիտակությունն է, մեծ ու փոքր պրոբլեմների էությունը կատարելապես ընկալելու նրանց հմտությունը, արտադրության հրամանատարների, մասնագետների, նորարարների կարծիքը հաշվի առնելու կարողությունը, ավելի բարձր արդյունքներ ապահովող տնտեսապես հիմնավորված միջոցառումներ մշակելու նրանց ընդունակությունը։

Այս կապակցությամբ ավելորդ չէ հիշեցնել, որ կուսակցական կոմիտեն քաղաքական ղեկավարման մարմին է։ Նա պետք է իր ուշադրությունը կենտրոնացնի արտադրության զարգացման հանգուցային, հեռանկարային հարցերի լուծման վրա, ընդ որում, գործելով իրեն ներհատուկ կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մեթոդներով։

Պլենումը պետք է կուսակցության շրջկոմներից ու քաղկոմներից, սկզբնական կուսկազմակերպություններից պահանջի՝ ըստ ամենայնի ուժեղացնել աշխատավորական կոլեկտիվներում կատարվող գաղափարաբարոյական և աշխատանքային դաստիարակության գործը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոմունիստ, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ տոգորվի հանձնարարված գործի համար, կոլեկտիվի գործերի վիճակի համար, կուսակցության որոշումների կատարման համար բարձր պատասխանատվության զգացումով։ Հարկավոր է, ընկեր Լ. Ի. Բրեժնևի խոսքերով ասած, որ ամեն ոք, ով կանգնած է հաստոցի մոտ, աշխատում է դաշտում կամ գծագրական սեղանի առջև, իրեն հարց տա՝ իսկ արդյո՞ք ինքն ամեն բան արել է ավելի արտադրողաբար, ավելի որակով աշխատելու համար, նյութերը խնայելու, ժամանակը պարապ չվատնելու համար։

Մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն, իրականացնելով երկրի



տնտեսական ու սոցիալական զարգացման լայն ծրագիր, մշտական ուշադրություն է նվիրում կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների գործունեության ձևերի ու մեթոդների կատարելագործմանը, պահանջում ամենուրեք ուժեղացնել ուշադրությունը աշխատավորների առաջարկությունների, քննադատական դիտողությունների և խնդրանքների նկատմամբ, նկատի ունենալով, որ տարբեր հարցերով քաղաքացիների դիմումները մասսաների հետ կուսակցական և սովետական մարմինների կապերի ամրապնդման կարևոր ձևն է։

Ակներև են այդ խնդրի կարևորությունն ու հրատապությունը։ Այդուհանդերձ, հանրապետության մի շարք կուսակցական ու սովետական մարմինների, կազմակերպությունների ու հիմնարկությունների ղեկավարներ դեռևս անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում քաղաքացիների նամակների հետ տարվող աշխատանքի և նրանց ընդունելության կազմակերպման բարելավման նպատակով, հաճախ խախտում են դիմումների քննարկման՝ օրենքով սահմանված ժամկետները, անուշադրություն և ձևական վերաբերմունք են դրսևորում աշխատավորների դիմումների նկատմամբ, նրանց բողոքներն ու առաջարկությունները քննարկելիս ցուցաբերում են բյուրոկրատիզմ ու քաշքշուկ։

Մեր խնդիրն է՝ ամենուրեք ուժեղացնել ուշադրությունը աշխատավորների առաջարկությունների, քննադատական դիտողությունների ու դիմումների նկատմամբ, միշտ նկատի ունենալով, որ սովետական քաղաքացիների նամակների հետ տարվող աշխատանքը պետական ապարատի նկատմամբ հսկողության ուժեղացման կարևոր ձև է, հասարակական կարծիքի ուսումնասիրման միջոց։

Անհրաժեշտ է ամենուրեք հստակ կարգուկանոն հաստատել աշխատավորների բանավոր ու գրավոր դիմումների քննարկման գործում, սահմանել նրանց ընդունելության կայուն օրեր և ժամեր, լայնորեն արմատավորել անմիջականորեն ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, ըստ բնակության վայրի աշխատավորների ընդունելության կազմակերպման պրակտիկան։

Կուսակցական կոմիտեները, սովետական մարմինները, տնտեսական ղեկավարները պետք է սպառիչ միջոցներ ձեռնարկեն քաղաքացիների՝ ըստ էության հիմնավորված առաջարկություններին ու դիմումներին լուծում տալու, նրանց արդարացի խնդիրքն ու բողոքները բավարարելու նպատակով։ Դրա հետ մեկտեղ նրանք պարտավոր են համոզիչ, փաստարկված բացատրություններ տալ բոլոր այն դեպքերում, երբ հնարավորություն չկա դրականորեն լուծելու դիմողի պահանջը։

Մեր գործունեության կարևորագույն ոլորտներից է կադրերի հետ տարվող աշխատանքը։ Կուսակցական մարմինները պետք է ավելի մեծ հոգատարություն հանդես բերեն կադրերի դաստիարակության նկատմամբ, բարձրացնեն նրանց պատասխանատվությունը իրենց կազմակերպություններում գործերի վիճակի համար, ավելի հանգամանորեն ուսումնասիրեն աշխատողների գործարար ու քաղաքական հատկանիշները։ Տեղին է մեկ անգամ ևս հիշեցնել, որ Վ. Ի. Լենինը պահանջում էր աշխատողներին պատասխանատու պոստերի առաջ քաշելիս պարզել, թե բարեխղճության, գործիմացության, վարչական ունակությունների, փորձի ու հեղինակության առումով և քաղաքական տեսանկյունից նրանք ինչ են իրենցից ներկայացնում։ Կադրերի ընտրության ու առաջքաշման այդ հիմնարար սկզբունքը մենք ամենքս՝ սկսած Կենտկոմից, վերջացրած սկզբնական կուսկազմակերպություններով, պարտավոր ենք անշեղորեն պահպանել։

Արդի շրջանում, գիտատեխնիկական առաջընթացի համընդհանուր զարգացման պայմաններում առանձնահատուկ պահանջներ են ներկայացվում տնտեսական ղեկավարներին։ ՍՄԿԿ XXV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ժամանակակից ղեկավարը պետք է իր մեջ կուսակցականությունն օրգանապես զուգորդի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ։

Տնտեսական ղեկավարը կուսակցության տնտեսական ու սոցիալական քա-

ղաքականության ակտիվ իրականացնողն է։ Հետևաբար, կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները պետք է ամենօրյա աշխատանք տանեն տնտեսական ղեկավարների հետ, նրանց մեջ դաստիարակեն այնպիսի հատկանիշներ, ինչպիսիք են գործարարությունը, կոնկրետությունը, օպերատիվությունը, արդյունքները ինքնաքննադատորեն գնահատելու, դժվարություններն ու թերությունները չկոծկելու ունակությունը։ Ընդ որում, իսկական ղեկավարը աշխատանքային կոլեկտիվի անդամներից չպետք է թաքցնի թերություններն ու դժվարությունները, որովհետև իրական բարդություններից նրանց արհեստականորեն մեկուսացնելը միայն ու միայն էական վնաս է հասցնում գործին։

Կուսակցական կոմիտեների կարևորագույն պարտականություններից մեկը հոգատարությունն է տնտեսական ղեկավար կադրերի ամրակայման նկատմամբ։ Գաղտնիք չէ, որ հանրապետության որոշ շրջաններում հաճախակի են փոփոխվում տնտեսությունների ղեկավարները։ Այսպես, Մասիսի շրջանի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ա. Հովհաննիսյան) Արարատի բանջարաբուծական սովխոզում 1976—1978 թվականների ընթացքում փոխվել է երեք դիրեկտոր։ Մարտունու շրջանի «Լիճք» հանքային ջրերի գործարանում այդ նույն ժամանակաշրջանում փոխվել են երեք դիրեկտոր, երկու գլխավոր ինժեներ, երեք գլխավոր մեխանիկ։ Դա հետևանք է նախ այն բանի, որ շրջկոմները անբավարար են ուսումնասիրում աշխատողների գործարար ու քաղաքական հատկանիշները, հապճեպություն են հանդես բերում նրանց ղեկավար պաշտոնների առաջքաշման գործում, հոգ չեն տանում անհրաժեշտ ռեզերվի մասին, ինչպես նաև այն բանի, որ ժամանակին չեն շտկվում ղեկավարի կատարած սխալները, ցույց չի տրվում նրան անհրաժեշտ օգնություն։

Մինչև հնգամյակի ավարտը երկու տարուց էլ պակաս ժամանակ է մնացել։ Ընթացիկ տարին կուսակցությունը հայտարարել է հարվածային աշխատանքի տարի։ Այս տարվա աշխատանքի արդյունքները մեծապես կկանխորոշեն ամբողջությամբ վերցրած հնգամյակի կատարման բախտը։

Չնայած օբյեկտիվ դժվարություններին, առաջին եռամսյակում մենք հասանք հուսադրող արդյունքների։ Հանրապետության արդյունաբերությունը ընդհանուր առմամբ կատարեց ինչպես արտադրանքի իրացման պլանը, այնպես էլ արտադրության ծավալի մեծացման առաջադրանքը։ Արտադրության ծավալի աճի տեմպերը կազմեցին 7,4 տոկոս։

Լավ աշխատեցին հանրապետության անասնապահները, ապահովելով եռամսյակի պլանների կատարումը բոլոր ցուցանիշներով՝ անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ ձեռք բերած աճով հանդերձ։

Բարձրացան շինարարության պլանների կատարման ինդեքսները։ Իրենց առաջադրանքները հիմնականում կատարեցին նաև հանրապետության ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի, գիտության և կուլտուրայի աշխատողները։

Հանրապետության աշխատավորները լի են 1979 թվականի համար ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու վճռականությամբ։ Այդ ամենը մեզ հիմք է տալիս վստահություն հայտնելու, որ հանրապետությունը 1979 թվականին նոր նվաճումներ ձեռք կբերի տնտեսական և սոցիալական զարգացման ասպարեզում և հաջողությամբ կեզրափակի տասներորդ հնգամյակը։

Թույլ տվեք հավաստիացնել ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեին, վերջում ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունը անհրաժեշտ ամեն ինչ կանի՝ կոմունիստների, բոլոր աշխատավորների ջանքերը մոբիլիզացնելու, նրանց ստեղծագործական եռանդն ու փորձը ուղղելու ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների անշեղ կենսագործմանը, տասներորդ հնգամյակի հաջող ավարտմանը։

---

# ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԵՎ ՍՊՈՐՏԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐ Է

**Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

Մեր ԵՐԿՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ բոլոր փուլերում կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունն առանձնահատուկ հոգատարություն են ցուցաբերել աշխատավորների ֆիզիկական դաստիարակության կազմակերպման, մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման նկատմամբ։ Այսօր դա օրենսդրորեն վավերացված է ՍՍՀՄ Սահմանադրությունում, ուր ասված է, թե պետությունը «աջակցում է մասսայական ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացմանը»։ Այդ աջակցությունն արտահայտվում է զանազան ձևերով։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլաններին համապատասխան, ամեն տարի հսկայական միջոցներ են հատկացվում այդ բնագավառի հետագա վերելքն ապահովելու, սպորտը սովետական մարդկանց կենցաղում արմատավորելու նպատակին։ Կանխորոշելով տասներորդ հնգամյակում և մոտակա հեռանկարում սովետական ժողովրդի նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման խնդիրները՝ ՍՄԿԿ XXV համագումարը կարևորեց նաև ֆիզկուլտուրայի և սպորտի համակողմանի զարգացման կենսական անհրաժեշտությունը. «Ձեռնարկություններում, հիմնարկություններում, ուսումնական հաստատություններում և բնակչության բնակության վայրերում զարգացնել մասսայական ֆիզկուլտուրան և սպորտը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 329)։

Կուսակցության առաջադրած խնդիրները բխում են ֆիզիկական դաստիարակության՝ որպես կոմունիստական դաստիարակության բաղկացուցիչ մասի, հույժ կարևորությունից։ Վ. Ի. Լենինը ֆիզկուլտուրան և սպորտը դիտում էր սոցիալիստական նոր հասարակարգը կերտող մարդու կոմունիստական դաստիարակության խնդիրների ամբողջության մեջ. Երիտասարդությանը,— ասում էր նա,— հարկավոր են կենսուրախություն և առողջություն, առողջ սպորտ, մարմնամարզություն, լող, ամեն տեսակի ֆիզիկական վարժություններ, հոգևոր հետաքրքրությունների բազմակողմանիություն, ուսուցում... և այս ամենը, ըստ հնարավորին, միատեղ։

Ֆիզկուլտուրան և սպորտը, տուրիզմը ոչ միայն նպաստում են ժողովրդի առողջության ամրապնդմանը, անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացմանը, այլև դառնում են աշխատանքի արտադրողականության բարձրացման, երիտասարդ սերնդին սոցիալիստական հայրենիքի պաշտպանությանը նախապատրաստելու կարևոր ու ներգործուն միջոց։ Հայրենական մեծ պատերազմի տարիներին մարզիկ մարտիկները տվել են ամուր կամքի ու տոկունության, անձնուրաց խիզախության ու հերոսության բազում օրինակներ։ Այժմ արտադրության առաջամարտիկների և սովետական բանակի մարտական ծառայության գերազանցիկների շարքերում կան սպորտը սիրող ու սպորտին նվիրված հարյուր հազարավոր երիտասարդներ։ Այս առաջադիմական պրոցեսն աստիճանաբար ավելի է խորանում, ընդունում նոր որակ ու բովանդակություն։

ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԵՎ ՍՊՈՐՏԻ զարգացման հաջողությունը պայմանավորված է այդ գործի կուսակցական ճիշտ ղեկավարմամբ, դրա նկատմամբ ամենօրյա հսկողության հետևողական իրականացմամբ։ Ելնելով մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի հետագա բուռն վերելքի շահերից և հաշվի առնելով այդ առնչությամբ կուսակցության նոր պահանջները՝ Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը դեռևս 1976 թվականին քննարկեցին «Հանրապետությունում ֆիզկուլտուրայի ու սպորտի վիճակի և հետագա զարգացման միջոցառումների մասին» հարցը։ Արժեքավորելով այդ բնագավառում ձեռք բերված հասումները և բացահայտելով թերությունները, ՀԿԿ Կենտկոմն ու Մինիստրների խորհուրդը համապատասխան հանձնարարականներ տվեցին կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեներին, ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետներին, կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին։ Նրանց առջև խնդիր դրվեց ամեն կերպ նպաստել ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայական և արդյունավետ զարգացմանը, արագացնել մարզական կառույցների շինարարությունը, քաղաքի և գյուղի երիտասարդության համար ստեղծել սպորտով զբաղվելու լայն հնարավորություններ։

Հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր ֆիզիկական կուլտուրայի և սպորտի կոմիտեն, անշուշտ, քիչ բան չեն արել այդ որոշումը կենսագործելու, մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի վերելքին զարկ տալու համար։ Վերջին տարիներին նկատելիորեն ավելացել է սպորտային սեկցիաներում, խմբերում ու թիմերում ընդգրկված մարզիկների թիվը, բարձրացել է մարզումների և մրցումների արդյունավետությունը։ Անցած տարի հանրապետության սպորտային կազմակերպությունները պատրաստել են միջազգային կարգի սպորտի 18, ՍՍՀՄ սպորտի 134 վարպետ։ ՍՍՀՄ 1978 թվականի չեմպիոնատների արդյունքներով, Սովետական Հայաստանը, միութենական հանրապետությունների, Մոսկվա և Լենինգրադ քաղաքների թիմերի մեջ, գրավել է տասներկուերորդ տեղը։ Գոհացուցիչ են հաջողությունները ծանրամարտի, բռնցքամարտի և ըմբշամարտի, շախմատի, սեղանի թենիսի և առագաստային սպորտի ասպարեզում, բարձրացել է դրանցով զբաղվող մարզիկների վարպետությունը։ Մարզական լուրջ նվաճումներ են ձեռք բերել աշխարհի, Եվրոպայի և ՍՍՀՄ չեմպիոններ, սպորտի վաստակավոր վարպետներ Յուրիկ Վարդանյանը, Վարդան Միլիտոսյանը, Ջինիդա Սիմոնյանը, միջազգային կարգի սպորտի վարպետներ Դավիթ Թորոսյանը, Էլմիրա Անտոնյանը, Շավարշ Կարապետյանը, Դավիթ Համբարձումյանը, Գուրգեն Բաղդասարյանը, Արշակ Սանոյանը, Էդուարդ Ազարյանը, Վլադիմիր Լեոնտևը, գրոսմայստեր Ռաֆայել Վահանյանը և ուրիշներ։ Նրանք ըստ արժանվույն շարունակում են իրենց ավագ ընկերների՝ համաշխարհային և հայրենական սպորտի պատմության մեջ վառ էջեր գրած Սերգո Համբարձումյանի, Իվան Ազդարովի, Ռուբեն Մանուկյանի, Հրանտ Շահինյանի, Իգոր Նովիկովի, Ալբերտ Ազարյանի, Ֆաինա Մելնիկի, Վլադիմիր Ենգիբարյանի և մյուսների լավագույն ավանդույթները։

ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշման կենսագործման ասպարեզում որոշակի հաջողություններ են ձեռք բերվել հատկապես Լենինական քաղաքում, Աբովյանի, Ղափանի, Գուգարքի, Սպիտակի և այլ շրջաններում։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կուսակցական և սովետական մարմինների ձեռնարկած ներգործուն միջոցների շնորհիվ նկատելիորեն աշխուժացել են ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայական զարգացման նպատակով տարվող աշխատանքները, սպորտային կազմակերպությունները ծավալել են արդյունավետ գործունեություն։

ՀԿԿ Լենինականի քաղկոմը ֆիզկուլտուրայի ու սպորտի նկատմամբ կուսակցական գործարար ղեկավարության ապահովումը համարում է առաջնահերթ խնդիր և արդյունավետ կերպով զբաղվում այդ բնագավառի զարգացման հրատապ հարցերով, անընդհատ բարձրացնում սպորտային կազմակերպու-



թյունների ղեկավարության պատասխանատվությունը, ուժեղացնում պահանջկոտությունը նրանց նկատմամբ։ Քաղկոմի մշակած կոմպլեքսային միջոցառումների իրականացման շնորհիվ ֆիզկուլտուրան և սպորտը լայնորեն արմատավորվում են բնակչության, մասնավորապես երիտասարդության և պատանեկության շրջանում։ Լենինականը հայտնի է իր մարզական լավ ավանդույթներով, սպորտային աննախադեպ նվաճումներով։ Այստեղ են աճել ու համաշխարհային հռչակի հասել ծանրամարտիկներ Յուրի Վարդանյանն ու Վարդան Միլիտոսյանը։ Շատ մարզիկների անուններ հայտնի են հանրապետության սահմաններից դուրս։ Լենինականի շատ թիմեր բազմիցս հաղթող են ճանաչվել հանրապետական և միութենական ճյուղային մրցություններում, նվաճել մի շարք գավաթներ։ Միայն 1978 թվականին քաղաքի 16 մարզիկներ արժանացել են ՍՍՀՄ սպորտի վարպետի կոչման, 89-ը դարձել ՍՍՀՄ սպորտի վարպետության թեկնածուներ, 122 մարզիկներ 18 մարզաձևերից հավաքական թիմերի կազմում պաշտպանել են մեր հանրապետության սպորտային պատիվը միութենական ասպարեզում։ Այստեղ ուսանելին այն է, որ առանձնակի ուշադրություն է նվիրվում ըստ բնակության վայրի ֆիզկուլտուրային և առողջարարական աշխատանքի կազմակերպմանը։ Քաղաքի բոլոր տնային կառավարչություններին առընթեր ստեղծվել և գործում են բակային մարզակումբեր, որոնք պլանաչափորեն և սիստեմատիկաբար անցկացնում են մրցումներ և սպարտակիադաներ։ Ամառային արձակուրդների օրերին կազմակերպվում են մանկական բակային մարզաճամբարներ։ Եվ պատահական չէ, որ Լենինականի «Շիրակ» և «Գյումրի» բակային ֆուտբոլային թիմերը հաղթող են ճանաչվել ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Կաշվե գնդակ» ակումբի մրցանակի համար անցկացված համամիութենական մրցումներում։

Քաղաքում գործում են մասնագիտացված մարզական դպրոցներ և մի շարք բազաներ, որոնք մեծ դեր են խաղում երիտասարդությանը սպորտի հետ կապելու, նրանց մարզական որակավորումը բարձրացնելու ասպարեզում։ Վերջերս շահագործման հանձնվեց նոր լողավազանը և իր դռները բացեց պատանի լողորդների մասնագիտացված նոր դպրոցը։

Կուսակցության Գուգարքի շրջանային կոմիտեն, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետի գործկոմը, կոմերիտմիության շրջկոմը հետևողականորեն զբաղվում են սպորտի հետագա զարգացմամբ ու մասսայականացմամբ։ Կուսշրջկոմի բյուրոն պարբերաբար անդրադառնում է շրջանում ֆիզկուլտուրայի ու սպորտի զարգացման հարցերին։ Այստեղ հաջողությամբ են անցնում «Կոմսոմոլսկայա պրավդա» թերթի մրցանակների համար ՊԱՊ համալիրի մասսայական մրցումները, նախազինակոչային և զինակոչային հասակի երիտասարդների սպարտակիադաները, «Գուգարքի ձմեռ» մարզական տոնը, «Կաշվե գնդակ» ակումբի մրցանակների համար պատանի ֆուտբոլիստների մրցումները և այլն։ Շրջանի բոլոր գյուղերում հողամասեր են հատկացվել մարզական կառույցների շինարարության համար։ Ներկայումս ֆիզկուլտուրային կոլեկտիվների կեսից ավելին ունեն իրենց սեփական բազաները։ Հասարակական հիմունքներով կառուցվել և հաջողությամբ գործում է մանկապատանեկան մարզադպրոցը։

Ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման նկատմամբ կուսակցական մարմինների ցուցաբերած մշտական ուշադրության շնորհիվ վերջին չորս տարիներին շրջանը մրցանակային տեղեր է գրավել հանրապետության ֆիզկուլտուրայի կազմակերպությունների սոցիալիստական մրցությունում, իսկ անցյալ տարի հաղթող է ճանաչվել և պարգևատրվել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի փոխանցիկ կարմիր դրոշով։

Ուշադրության արժանի և ուսանելի է ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման նպատակով կուսակցության Աբովյանի շրջկոմի ծավալած գործունեությունը։ Կուսշրջկոմը մշակել և հաստատել է մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման հեռանկարային պլան՝ շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման ընդհանուր պլանի շրջանակներում։ Այդ պլանին համապատասխան, կառուցվել և շահագործման է հանձնվել քաղաքի նոր ստադիոնը, ավարտման պրոցեսում է մեծ մարզադահլիճի և ծածկած լողավազանի կա-

ուցումը։ Սկսել են գործել պատանի բռնցքամարտիկների և ծանրորդների մարզադպրոցները։ Աբովյան քաղաքի «Կոտայք» ֆուտբոլի թիմը հաջողությամբ հանդես է գալիս ՍՍՀՄ «Բ» խմբի առաջնությունում։ Հանրապետության վաստակավոր մարզիչ Ռ. Կարապետյանի ղեկավարությամբ Գառնի գյուղում կանոնավոր կերպով գործում է ըմբշամարտի սեկցիան։

ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԵՎ ՍՊՈՐՏԻ զարգացման կարևոր պայմաններից մեկը դրանց նյութատեխնիկական բազայի ամրապնդումն է։ Որքան էլ ֆիզկուլտուրային կազմակերպությունները եռանդ ցուցաբերեն, որքան էլ մարզիկները պատրաստակամությամբ ներգրավվեն մարզումներին, դժվար է հասնել շոշափելի արդյունքի, եթե չկան համապատասխան մարզահրապարակներ ու տեխնիկական միջոցներ։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց կուսակցական ու սովետական մարմինների առջև՝ ավելացնել մարզական բազաների թիվը, ստեղծել նոր համալիրներ։ Պետությունը մեծ միջոցներ է տրամադրում այդ ծրագիրն իրագործելու համար։ Մեր հանրապետության մի շարք քաղաքներում ու շրջաններում կուսակցական, կոմերիտական ու ֆիզկուլտուրային կազմակերպություններն արդյունավետ աշխատանք են ծավալում մարզական բազաների կառուցման և բարեկարգման նպատակով, օգնում երիտասարդության մարզումների համար նորմալ պայմանների ստեղծմանը։ Հատկանշական է, որ այս դրական պրոցեսը տեղի է ունենում նաև գյուղական բնակավայրերում։ Դրա ցայտուն օրինակը կարող է տալ Էջմիածնի շրջանի Ոսկեհատ գյուղը։ Այստեղ, սովխոզի և դպրոցի դիրեկցիաների ու սկզբնական կուսկազմակերպությունների աջակցությամբ, աշակերտներն իրենց ուժերով կառուցել են մարզական հոյակապ համալիր, որն ունի ֆուտբոլի դաշտ, թեթև ատլետիկայի, բասկետբոլի, վոլեյբոլի, թենիսի, ձեռքի գնդակի խաղահրապարակներ, լողավազան, սեղանի թենիսի տաղավար և այլն։ Ուշադրության արժանի են սպորտային կյանքն արտացոլող գունագեղ ցուցադրական միջոցներն ու մարզական փառքի անկյունը։

Այս օրինակը եզակի չէ։ Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացմանն աջակցող խորհրդի նախաձեռնությամբ հանրապետության շատ գյուղերում կառուցվում են մարզական բազաներ, հարստանում են ֆիզկուլտուրային կոլեկտիվների տեխնիկական միջոցները, գյուղական մարզիկներն ակտիվորեն են մասնակցում շրջանային և հանրապետական մրցումներին, մյուս միջոցառումներին։ Եվ միանգամայն խրախուսելի է, որ տեղական մարմիններն ու կազմակերպությունները օգնում են այդ լավ ձեռնարկումներին։

Ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացումը համաժողովրդական գործ է։ Դա սոսկ սպորտային կազմակերպությունների պարտականությունը չէ, դրա հաջողության համար սպորտային կազմակերպությունների աշխատանքի կազմակերպվածությունը, հստակությունը և գործարարությունը տակավին քիչ են։ Այն պահանջում է կուսակցական ու սովետական մարմինների ամենօրյա ու համակողմանի ուշադրությունը։ Մեր հանրապետությունում կուտակված փորձը վկայում է, որ ֆիզկուլտուրան ու սպորտը բուռն վերելք են ապրում և մասսայական դառնում այնտեղ, որտեղ կուսակցական ու սովետական մարմինները, գերատեսչությունների, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարությունը, կուսակցական ու հասարակական կազմակերպությունները զորավիգ են լինում սպորտային կազմակերպություններին, համագործակցում նրանց հետ, օգնում սպորտային միջոցառումների անցկացմանը, հնարավորություններ ստեղծում արտադրության մեջ աշխատող մարզիկների համար՝ ակտիվորեն մասնակցելու մարզումներին ու մրցումներին, բարձրացնելու իրենց մարզական վարպետության մակարդակը։

Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները պետք է մշտապես հիշեն, որ ֆիզկուլտուրան և սպորտը դասվում են պետական կարևորագույն խնդիրների շարքը և հարկ է պետական մոտեցում ցուցաբերել դրանց զարգացման նկատմամբ։ Սակայն այդ բնագավառում եղած թերությունները ու լուրջ վրիպումները վկայում են, որ շատ տեղերում ֆիզկուլտուրայի և սպորտի կազմակերպման մակարդակը, մասնավորապես դրանք բնակչության



կենցաղում արմատավորելու, բարձրակարգ մարզիկներ պատրաստելու առումով, տակավին չի համապատասխանում եղած հնարավորություններին և կուսակցության ու կառավարության առաջադրած ժամանակակից պահանջներին։ Բնակարանային և կոմունալ տնտեսության մինիստրությունը, կուսակցության մի շարք շրջկոմներ և ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմներ (Ամասիա, Արագած, Կալինինո, Սևան, Ղուկասյան, Ապարան, Թումանյան) անբավարար են կենսագործում ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի 1976 թ. մայիսի 31-ի որոշումը, գործնական միջոցներ չեն ձեռնարկում ֆիզկուլտուրայի և սպորտի աշխատանքներն աշխուժացնելու, առկա թերությունները վերացնելու համար, չեն մշակում այդ գործի բարելավման կոմպլեքսային միջոցառումներ։ Ֆիզիկական կուլտուրայի և սպորտի քաղաքային ու շրջանային կոմիտեների մեծ մասը, կամավոր ընկերությունների և մարզադպրոցների ղեկավարները վատ են զբաղվում մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացմամբ, ուսումնամարզական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործմամբ, բարձր կարգի մարզիկների պատրաստմամբ, մասսայական ֆիզկուլտուրային և առողջարարական միջոցառումների կազմակերպմամբ։

ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱՅԻՆ ՇԱՐԺՄԱՆ ՀԻՄՔԸ ՊԱՊ համալիրն է։ Դա սպորտի մասսայականության, առողջ սերնդի դաստիարակության կարևոր գործոն է, դեպի մեծ սպորտը տանող հիմնական ուղին։ Կուսակցական և սովետական մարմինների, հասարակական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է ամենուրեք՝ հիմնարկ-ձեռնարկություններում և սովխոզներում, ուսումնական հաստատություններում լայնորեն արմատավորել սպորտի զարգացման այդ կարևոր միջոցը, բնակչության մեծամասնությանը ներգրավել ՊԱՊ համալիրի մրցումներին։ Եթե դատենք հաշվետվությունների տվյալներով, ապա կարելի է ենթադրել, որ այդ ասպարեզում մեր հանրապետությունում զգալի գործ է արվել. ՊԱՊ համալիրի նորմաները լրացրած մարզիկների թիվը հասնում է 340 հազարի, որից 300 հազարը կրծքանշանակիրներ են դարձել անցյալ տարի։ Ինչպես տեսնում ենք, թվերը ծանրակշիռ են, սակայն դրանք, մեղմ ասած, չեն կարող տարակույս չառաջացնել։ Բանն այն է, որ «Կոմսոմոլսկայա պրավդա» թերթի մրցանակի համար կազմակերպված ՊԱՊ համալիրի հանրապետական վերջին առաջնությունում կամավոր մարզընկերություններից և ոչ մեկը չկարողացավ ներկայացնել 24 մարդուց բաղկացած լիարժեք թիմ։ Մինչդեռ «Աշխատանք» կամավոր մարզական ընկերությունում հաշվվում է ՊԱՊ-ի ավելի քան 135 հազար կրծքանշանակիր, «Սևանում»՝ մոտ 74 հազար, «Սպարտակում»՝ 63 հազար և այլն։ Խիստ անհանդուրժելի է, երբ որոշ պատասխանատու աշխատողներ փորձել են թիմերի կազմում ընդգրկել կողմնակի կամ սպորտի առանձին ձևերի հետ առնչություն չունեցող անձանց։ Ֆիզկուլտուրային մի շարք կոլեկտիվներում նկատվում են աչքակապության ու հավելագրումների փաստեր։ Ոմանք փորձում են թերությունները քողարկել ուռճացրած թվերով և կազմակերպչական քրտնաջան աշխատանքի փոխարեն ստեղծում են դրա պատրանքը։ Ամասիայի, Անիի, Ղուկասյանի, Սիսիանի և Թումանյանի շրջանների մարզական կազմակերպությունները չեն կատարել ՊԱՊ կրծքանշանակիրների պատրաստման պլանները, իսկ 65 ֆիզկուլտուրային կոլեկտիվներ 1978 թվականին չեն պատրաստել ՊԱՊ-ի ոչ մի կրծքանշանակիր կամ կարգային մարզիկ։

Փաստերը վկայում են, որ շատ տեղերում դեռևս ձևական մոտեցում են դրսևորում, բնակչությանը և հատկապես պատանեկությանն ու երիտասարդությանը չեն նախապատրաստում ՊԱՊ համալիրի նորմաների հանձնմանը։ Դա պետք է բացատրել նաև նրանով, որ սպորտկոմիտեներն ու կամավոր մարզընկերությունները, օգտվելով կուսակցական կոմիտեների և ժողովրդական դեպուտատների տեղական սովետների թույլ հսկողությունից, ձևականորեն են կատարում իրենց պարտականությունները, հաճախ մակերեսային պատկերացում ունեն ֆիզկուլտուրային կոլեկտիվներում տիրող իրավիճակի մասին։ Ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման շահերը պահանջում են, որ-

պեսզի արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, սպորտկոմիտեներն ու կամավոր մարզընկերությունները լրջորեն հետազոտեն, ուսումնասիրեն և, որ գլխավորն է, մշտապես կատարելագործեն ՊԱՊ համալիրի արմատավորման, դրա նորմաների հանձնման ձևերն ու մեթոդները։ Այդ աշխատանքը պետք է զերծ լինի ամեն տեսակի ձևականություններից, դառնա մատչելի և ընդունելի բոլոր կոլեկտիվներում։ Հարկ է հաշվի առնել մի կարևոր հանգամանք. ՊԱՊ համալիրի արմատավորման միջոցով միայն հնարավոր է լուծել կուսակցության և սովետական կառավարության կողմից երկրի ֆիզկուլտուրային շարժման առջև դրված հրատապ ու կենսական խնդիրը՝ սպորտի մասսայականությունից համաժողովրդականին անցնելու խնդիրը։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ մեր երկիրը լուծում է գիտատեխնիկական առաջընթացի արագացման, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման բարդ խնդիրները, խիստ կարևորվում է աշխատանքի արտադրողականության անընդհատ աճի ապահովումը։ Դրա յուրաքանչյուր տոկոսը տալիս է արտադրանքի թողարկման հսկայական հավելում։ Այսօր, մեքենայացման ու ավտոմատացման նոր միջոցների, գիտության նվաճումների արմատավորման, ներքին ռեզերվների օգտագործման հետ մեկտեղ, աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր լծակ է դարձել ֆիզիկական կուլտուրան, մասնավորապես՝ արտադրական մարմնամարզությունը։ Փորձը ցույց է տալիս, որ այդ գործոնը, իրոք, խթանում է աշխատանքի արտադրողականության աճը, նպաստում բանվորների առողջության ամրապնդմանը։ Եվ օրինաչափ է, որ աշխատավորական կոլեկտիվների սոցիալական զարգացման պլաններում, կոլեկտիվ պայմանագրերում ու սոցիալիստական պարտավորություններում արտացոլվում են նաև սպորտի, հատկապես արտադրական մարմնամարզության հարցերը։ Մի շարք առաջատար ձեռնարկություններում լուրջ մոտեցում են ցուցաբերում դրա նկատմամբ. օրվա սահմանված ժամերին կատարում են արտադրական մարմնամարզություն։ Այն դառնում է ամենօրյա պահանջ, պարտականություն, առողջության պահպանման, առույգության վերականգնման արդյունավետ միջոց։

Այս բնագավառում, սակայն, կան լուրջ թերություններ ու վրիպումներ։ Շատ տեղերում վարանոտ ու անվճռական կերպով են արմատավորում արտադրական մարմնամարզությունը, հաշվի չեն առնում բանվոր-ծառայողների աշխատանքի բնույթն ու առանձնահատկությունները։ Երևանի, Կիրովականի, Կամոյի, Ստեփանավանի, Գորիսի մի շարք և Արտաշատի բոլոր 13 արդյունաբերական ձեռնարկություններում արտադրական մարմնամարզությունը չի դարձել ընդհանուր աշխատանքային պրոցեսի բաղկացուցիչ մասը։ Ընդհակառակը, դրանով զբաղվողների թիվն աստիճանաբար կրճատվում է, որը հետևանք է այդ գործի նկատմամբ ֆիզկուլտուրային և տնտեսական որոշ ղեկավար աշխատողների ցուցաբերած ոչ պետական մոտեցման ու անտարբերության։

Կուսակցական կոմիտեները, սովետական մարմինները, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները պետք է արմատական միջոցներ ձեռնարկեն արտադրական մարմնամարզությունը բանվորների ու ծառայողների կենցաղում արմատավորելու համար։

Մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի համակարգում կարևոր տեղ ունեն տուրիզմը և էքսկուրսիաները, որոնք անգնահատելի դեր են խաղում աշխատավորների կուլտուրական հանգստի կազմակերպման, նրանց աշխատունակության վերականգնման գործում։ ՀԱՄԽ-ն, արհմիութենական տեղական կազմակերպությունները և տուրիզմի խորհուրդները որոշ գործ են արել տուրիզմի աշխարհագրությունն ընդլայնելու, նյութատեխնիկական բազան ամրապնդելու և այն մարդկանց ակտիվ հանգստի միջոց դարձնելու համար։ Վերջին տարիներին հանրապետության քաղաքներում և շրջաններում (Երևան, Լենինական, Դիլիջան, Ստեփանավան, Իջևան, Սևան, Ղափան և այլն) կառուցվել և գործարկվել են տուրիստական հյուրանոցներ և հանգրվաններ։ Հետաքրքրական են տուրիստական մարմինների կազմակերպած «Թատերական» անունը կրող արշավները, որոնց ընթացքում գյուղական պատվիրակություն-



ները մայրաքաղաքի մշակութային օջախներում դիտում են ներկայացումներ ու լսում համերգներ, այցելում հանրապետության ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդես, թանգարաններ և զանազան տեսարժան վայրեր։ Անցած տարի նման տուրիստական արշավներին մասնակցել է 25 հազար գյուղական բնակիչ։

Այսօր ամեն մի աշխատանքում հարկավոր են բարձր արդյունավետություն և որակ։ Դա վերաբերում է նաև տուրիզմին և էքսկուրսիաներին։ Տուրիստական օբյեկտների կառուցումն ու կուլտուրական արշավների կազմակերպումը դեռևս գործի մի կողմն են, հարկավոր է հետևողականորեն բարձրացնել արշավների մասնակիցների սպասարկման մակարդակն ու կուլտուրան, առավել հետաքրքրական, հաճելի և օգտակար դարձնել արշավի կամ ուղևորության յուրաքանչյուր օրը, առավելագույնս օգտագործել ֆիզկուլտուրան ու սպորտը, տուրիստական բազաներին կից ստեղծել մարզահրապարակներ, տաղավարներ, լողավազաններ, անցկացնել զանազան մրցումներ։

Մեր երկրում, հնգօրյա աշխատանքային շաբաթի անցնելու առնչությամբ, առավել հրատապ է դարձել հանգստյան օրերին տուրիստական արշավների կազմակերպումը։ Հանգստի այդ ձևը պետք է արժանի տեղ գրավի տուրիզմի ողջ համակարգում՝ հետիոտն արշավներից մինչև տուրիստական հատուկ գնացքները։

Այսօր կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, մարզական ընկերությունների և կոլեկտիվների առջև ծառացած կարևոր խնդիրներից մեկը ըստ բնակության վայրի մարզական աշխատանքի ծավալումն է։ Մեծ չափով դրանով են պայմանավորված երիտասարդության ազատ ժամանակի ճիշտ և արդյունավետ օգտագործումը, ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայականության ապահովումը, այդ աշխատանքի արդյունավետության բարձրացումը։

Ըստ բնակության վայրի սպորտային աշխատանքի կազմակերպման գործում, սակայն, կան լուրջ թերություններ։ Շատ տեղերում չեն ստեղծվել սպորտային ակումբներ, բնակշահագործման գրասենյակների մեծ մասի ղեկավարները շահագրգռություն հանդես չեն բերում ֆիզկուլտուրային, սպորտային ու առողջարարական աշխատանքի աշխուժացման հանդեպ։ Շատ հաճախ նպատակին չեն ծառայում ֆիզկուլտուրային մասսայական աշխատանքի մեթոդիստի հաստիքները կամ այդպիսիք ընդհանրապես չկան։ Բակային թիմերի միջև դեպքից դեպք են անցկացվում առանձին մարզաձևերի մասսայական մրցումներ։ Այդ նպատակի համար չեն օգտագործվում հանրակրթական դպրոցների և սպորտային կազմակերպությունների մարզահրապարակներն ու մարզադահլիճները։

Ըստ բնակության վայրի սպորտային աշխատանքը ծավալելու, նրա մասսայականությունը խթանելու նպատակով հարկ է մշակել ու իրականացնել մի շարք արմատական միջոցառումներ։ Ժամանակն է ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետների գործկոմներին առընթեր ստեղծել կոորդինացնող խորհուրդներ, որոնք գործնականորեն զբաղվեին տվյալ բնակավայրում սպորտային աշխատանքի կազմակերպմամբ։ Մեծ արդյունք կարող է տալ միկրոշրջաններում և բնակշահագործման գրասենյակների սպասարկած տերիտորիաներում սպորտային աշխատանքին խոշոր ձեռնարկությունների կողմից ցույց տրվող շեֆական օգնությունը։ Անհրաժեշտ է քաղաքների, շրջանների և կոլեկտիվների սոցիալական զարգացման պլաններում կոնկրետ միջոցառումներ նախատեսել մարզական կոլեկտիվների նյութատեխնիկական հնարավորություններն ընդլայնելու, միկրոշրջաններում, զբոսայգիներում, հանգստի գոտիներում մարզական աշխատանքի հենակետեր ստեղծելու, հանրակացարաններին կից և գյուղական վայրերում խաղահրապարակներ և մարզադահլիճներ կառուցելու համար։ Ըստ բնակության վայրի տարվող աշխատանքի մեջ հարկ է ներգրավել նշանավոր մարզիկների, սպորտի վետերանների, կոմերիտական և ֆիզկուլտուրայի ակտիվիստների։

ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԵՎ ՍՊՈՐՏԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ, նրա մասսայականության ապահովումը, բարձրակարգ մարզիկների պատրաստումն անհնարին է առանց համապատասխան բարձր որակավորում ունեցող և նախաձեռնող կադրերի։ Գաղտնիք չէ, որ եթե այդպիսիք չկան, ապա ամեն մի, անգամ լավ մշակված միջոցառում կարող է ձախողվել ու կահավորված մարզական բազան մատնվել անգործության։ Ընդհակառակը, որտեղ աշխատում են փորձված և քաջահմուտ մարզիկներ և մանկավարժներ, այնտեղ մարզական կյանքն աշխուժանում է, միջոցառումներն անցնում են բարեհաջող, կազմակերպված, երիտասարդության ակտիվ մասնակցության պայմաններում։ Այս ամենի վկայությունները շատ են մեր հանրապետությունում։ Այս առումով հատկանշական է Երևանի Նար-Դոսի անվան դպրոցի ֆիզկուլտուրայի դասատու, հանրապետության վաստակավոր ուսուցիչ Գառնիկ Խոջագորյանի գործունեությունը։ Հայրենական մեծ պատերազմում ծանր վիրավորվելուց հետո նա վերադարձել է հարազատ դպրոց և իր ողջ էությամբ նվիրվել աշակերտների ֆիզիկական դաստիարակության շնորհակալ գործին։ Նրա ամեն մի դասը որոնում է, ստեղծագործություն, ֆիզիկական և բարոյական դաստիարակության իսկական դպրոց։ Նրա սաները կյանք են մտնում ֆիզիկապես կոփված, պատրաստ աշխատանքին ու հայրենիքի պաշտպանությանը։ Նրանց մեջ կան սպորտի 15 վարպետներ։

Մեր բազմաթիվ մարզիկների բարձր վարպետությունը, հանրապետական, միութենական և միջազգային նվաճումները, անտարակույս, նաև նրանց դաստիարակ-մարզիչների արդյունավետ, հետևողական աշխատանքի, անդադրում ջանքերի արգասիքն են։ Հենց վերջերս Լենինգրադում տեղի ունեցած «Բարեկամություն» գավաթի խաղարկությունում փայլուն հաջողությունների հասան նաև մեր հանրապետության ծանրորդներ Յուրիկ Վարդանյանն ու Ռոբերտ Հովհաննիսյանը։ Ընդ որում, Յուրիկը սահմանեց համաշխարհային նոր ռեկորդ։ Այդ նվաճման մեջ, անշուշտ, մեծ ներդրում ունի նաև Յու. Վարդանյանի մարզիչ Ս. Վարդանյանը։

Մարզական բեղմնավոր գործունեություն են ծավալել Վ. Առաքելյանը (սպորտային մարմնամարզություն), Գ. Հովհաննիսյանը (ջրացատկ), Մ. Սախնովսկին (առագաստային սպորտ), Շ. Ջանյանը (ըմբշամարտ), Ռ. Մինասյանը (ակրոբատիկա), Օ. Դեմենտևը (շախմատ), Լ. Հայրապետյանը (սամբո), Ս. Մակրովը (ծանրամարտ) և շատ ուրիշներ, որոնց սաները դարձել են հանրապետական ու միութենական առաջնությունների հաղթողներ, դուրս եկել միջազգային ասպարեզ։ Շատ են նաև ֆիզկուլտուրայի և սպորտի պրոպագանդիստ-դաստիարակները, որոնք աշխատում են հանրակրթական ու մարզական մասնագիտացված դպրոցներում և ջանք չեն խնայում բարձրակարգ ու կամային մարզիկներ պատրաստելու համար։

Մեծ սպորտը սկզբնավորվում է դպրոցում, սպորտի այս կամ այն ձևի նկատմամբ պատանիների մեջ հետաքրքրասիրություն են առաջացնում ֆիզկուլտուրայի ուսուցիչները, դաստիարակ-մարզիչները։ Նրանք են առաջինը նկատում պատանիների ու աղջիկների սպորտային ունակությունները, հակումներն ու նախասիրությունները, իրենց խելամիտ խորհուրդներով զարգացնում այդ հատկանիշները, իրենց սաներին դուրս բերում մեծ սպորտի ճանապարհ։ Նրանք միաժամանակ դառնում են ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայական զարգացման պրոպագանդիստներ և կազմակերպիչներ։

Կուսակցական, սովետական և սպորտային մարմինների, ժողովրդական և պրոֆտեխնիկական կրթության համակարգի ղեկավարների պարտքն է՝ մշտապես հաշվի առնել ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման գործում այդ բնագավառի կադրերի առանձնահատուկ դերը, արմատապես բարելավել նրանց հետ տարվող աշխատանքը։ Սակայն ուսումնասիրությունները պարզում են, որ այդ ասպարեզում կան աղաղակող թերություններ, որոնց վերացումը նշված մարմիններից շատ ջանքեր են պահանջում։ Անհանդուրժելին, մասնավորապես, այն է, որ գյուղական շատ դպրոցներում (Ազիզբեկովի շրջանի Սերսի, Բարձրունի, Սարավանի, Դայլախլուի, Նոյեմբերյանի շրջանի Կողբի № 2, Վարդենիսի շրջանի Շիշկայայի ու Շորժայի և այլն) առհասարակ ֆիզկուլտուրայի դասեր չեն անցկացվում և նախատեսված դրույքները բաշխվել են մյուս առարկաների դասատուների միջև։ Ավելին, Ապարանի, Նոյեմբերյանի, Ախուրյանի, Անիի, Կալինինոյի, Թումանյանի, Ստեփանավանի և այլ շրջանների մանկապատանեկան մարզադպրոցներն իրենց հիմնադրման օրվանից ի վեր, այսինքն՝ շուրջ 10—15 տարի, ոչ մի մարզիկ չեն պատրաստել հանրապետական հավաքական թիմերի համար։ Սրա պատճառը, անշուշտ, ոչ թե երեխաների սպորտային ունակությունների պակասն է, այլ այդ բնագավառի կադրերի անպատասխանատվությունն ու անկարողությունը, ինչպես նաև նրանց սակավությունը։ Մանկապատանեկան մասնագիտացված առանձին դպրոցներ չունեն համապատասխան բազաներ ու մարզչական կադրեր։ Այսօր հանրապետության գյուղական դպրոցների ֆիզկուլտուրայի դասատուների կեսից ավելին չունի մասնագիտական կրթություն։ Տարօրինակ է այն փաստը, որ Կամո քաղաքի մանկապատանեկան մարզական դպրոցի ըմբշամարտի վեց մարզիչներից ոչ մեկը մասնագիտական կրթություն չունի, իսկ բասկետբոլի վեց մարզիչներից ոչ մեկը բասկետբոլ չի խաղացել։ Հասկանալի է, որ նման պայմաններում խոսք անգամ չի կարող լինել բարձրորակ մարզիկներ պատրաստելու մասին։

Մեծ սպորտում եղած թերությունները բացատրվում են ուսումնամարզական պրոցեսի կազմակերպման ցածր մակարդակով, մարզչական կադրերի անբավարար պրոֆեսիոնալ որակավորումով, բժշկական թույլ վերահսկողությամբ, սպորտին վերաբերող գիտատեխնիկական նվաճումների, երկրի ֆիզկուլտուրային առաջավոր կոլեկտիվների ուսանելի փորձի անբավարար ներդրմամբ։ Շատ մասնագետներ, այդ թվում հանրապետության հավաքական թիմերի առանձին մարզիչներ, շարունակում են աշխատել հին ձևով։

Ֆիզկուլտուրայի և սպորտի հետագա զարգացման շահերը հրամայաբար պահանջում են արմատապես բարելավել այդ բնագավառի կադրերի պատրաստման գործը։ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր ֆիզկուլտուրայի և սպորտի կոմիտեն, կամավոր մարզական ընկերությունների ղեկավարությունը պարտավոր են մշակել մարզչական կադրերի պատրաստման ու վերապատրաստման հստակ համակարգ, հետևել մասնագետների պրոֆեսիոնալ մակարդակի բարձրացման նպատակով տարվող աշխատանքին։ Այս առումով մեծ անելիքներ ունեն նաև ֆիզիկական կուլտուրայի ինստիտուտն ու տեխնիկումը, այդ ինստիտուտի պրոբլեմային լաբորատորիան։ Հարկ է չմոռանալ, որ քաջահմուտ ֆիզկուլտուրայի դասատուների և դաստիարակ-մարզիչների առկայության պայմաններում կլինեն նաև շնորհալի ու ճանաչված մարզիկներ։

ՀԿԿ Կենտկոմը 1977 թվականի դեկտեմբերին մեկ անգամ ևս անդրադարձավ հանրապետությունում ֆիզիկական կուլտուրայի և սպորտի հետագա զարգացման հարցերին։ Հանրապետության սպորտկոմիտեին հանձնարարվեց, ՀԱՄԽ-ի, ՀԼԿԵՄ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ պետպլանի և համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համատեղ, մշակել ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման 1978—1985 թվականների կոմպլեքսային հեռանկարային պլան։ Այդ ծավալուն ծրագիրը կնպաստի ֆիզիկական դաստիարակության միասնական համակարգի խնդիրների լուծմանը։

ԵԿՈՂ ՏԱՐԻ ՄՈՍԿՎԱՅՈՒՄ ՏԵՂԻ ԿՈՒՆԵՆԱՆ քսաներկուերորդ միջազգային ամառային օլիմպիական խաղերը։ Աշխարհի առաջին սոցիալիստական պետության մայրաքաղաքում դրանց անցկացումը սովետական սպորտի բարձր նվաճումների համոզիչ ապացույցն է, նրա միջազգային ճանաչման և մեծ հեղինակության ապացույցը։ «Օլիմպիադա 80-ը» ոչ միայն կլինի մարզական հիասքանչ տոնահանդես, այլև աշխարհի երիտասարդության ինտերնացիոնալ բարեկամության վառ ցույց։ «Միջազգային օլիմպիական խաղերը,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մարզական կյանքի կարևորագույն իրադարձություն են, դրանք իրենց վրա են բևեռում մեր մոլորակի միլիոնավոր մարդկանց սևեռուն ուշադրությունը, արտացոլում են խաղաղության ու առաջադիմության նկատմամբ մարդկության անկասելի ձգտումը։ Այն փաստը, որ օլիմպիական դրոշների ներքո հավաքվել են բոլոր մայր ցամաքների մարզիկները, բարեկամության, փոխըմբռնման և ակտիվ համագործակցության պայմաններում ապրելու ժողովուրդների ցանկության մի նոր վկայությունն է»։

*Օլիմպիական խաղերը լուրջ քննություն կլինեն ոչ միայն սովետական մարզիկների, այլև հայրենական ֆիզկուլտուրայի ու սպորտի ողջ շարժման համար։ Այդ լուրջ ու դժվարին քննությանը սովետական մարզիկները նախապատրաստվում են առանձնակի շահագրգռությամբ ու պատասխանատվությամբ։ Օլիմպիական խաղերին մասնակցելու համար նախապատրաստվող երկրի հավաքական թիմերի թեկնածուների կազմում ընդգրկված են նաև մեր հանրապետության 25 առաջատար մարզիկներ։ Ի դեպ, միջազգային օլիմպիական խաղերում Հայաստանի պատվիրակները նվաճել են 9 ոսկե, 7 արծաթե, 4 բրոնզե մեդալ։ Մեծ պատիվ է մեր մարզիկներին տեսնել օլիմպիական պատվանդանի բարձրագույն աստիճանին։ Դրան հասնելու նպատակով հարկավոր է, որ մարզական կազմակերպությունները նրանց մարզումների համար ստեղծեն նպաստավոր պայմաններ, օգնեն նրանց՝ հաստատակամորեն, առանց ուժ ու ժամանակ խնայելու և պատասխանատվության բարձր զգացումով նախապատրաստվելու օլիմպիական խաղերին։*

*«Օլիմպիադա 80-ին» կնախորդի ՍՍՀՄ ժողովուրդների սպարտակիադան։ Դա արդեն լուրջ քննաշրջան է մեր հանրապետության մարզական ողջ կազմակերպության համար։ Դրան մեր մարզական պատվիրակության մասնակցության մակարդակն ու մրցություններում նրա ձեռք բերած արդյունքները հստակ պատկերացում կտան, թե ինչպիսի առաջխաղացում է կատարվել ֆիզկուլտուրայի և սպորտի բնագավառում վերջին տարիներին։ Վերջերս Երևանում տեղի ունեցած «Պրավդա» թերթի մրցանակների համար թեթևատլետիկական կրոսի համամիութենական մրցումներում Հայաստանի մարզական պատվիրակության հաջողությունը հույս է ներշնչում, որ մեր մարզիկները կձգտեն բարձր պահելու հանրապետության մարզական պատիվը։*

*ՍՍՀՄ ժողովուրդների սպարտակիադայի համակողմանի նախապատրաստությունն ու արժանավայել մասնակցությունը հանրապետության մարզական կազմակերպությունը պետք է համարի իր գլխավոր խնդիրը և դրա լուծման համար մոբիլիզացնի բոլոր ուժերը, օգտագործի բոլոր հնարավորություններն ու ռեզերվները։ Սպարտակիադայի հաջողությունն առաջընթաց քայլ կլինի «Օլիմպիադա 80-ի» նախաշեմին։*

*Ֆիզկուլտուրային շարժմանը իսկական համաժողովրդական բնույթ հաղորդելու, սպորտային վարպետության բարձրացման հարցերը հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է, որ հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմինները և կուսկազմակերպությունները հիմնովին փոխեն իրենց վերաբերմունքը ֆիզկուլտուրայի և սպորտի նկատմամբ, կատարելագործեն դրանց ղեկավարման ձևերն ու եղանակները, արմատական բեկում մտցնեն մասսայական սպորտի զարգացման գործում։ Ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացումն ինքնանպատակ չէ։ Հարկ է հիշել Մ. Ի. Կալինինի՝ այժմեականությունը մշտապես պահպանող հիանալի խոսքերը. «Չի կարելի հրապուրվել սպորտով հանուն սպորտի, անհրաժեշտ է այն ենթարկել կոմունիստական դաստիարակության ընդհանուր խնդիրներին»։*

---



# ՏԵՍՈՒԹՅԱՆ ՈՒ ՊՐԱԿՏԻԿԱՅԻ ՍԵՐՏ ԿԱՊԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆ Է

Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ

*ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ կառուցվում է գիտական հիմքի վրա՝ իր զարգացման ընթացքում ավելի ու ավելի լրիվ մարմնավորելով մարքս-լենինյան տեսության և ժողովրդական ամենալայն զանգվածների ստեղծագործական ակտիվության միասնությունը։*

*Մեծ Հոկտեմբերից հետո անցած տարիներն աշխատավորների գիտակցության, մասսայական գործունեության վրա հեղափոխական տեսության, կոմունիզմի իդեալների հարաճուն ազդեցության տարիներ էին, հեղափոխական տեսությունը նյութական մի այնպիսի զորեղ ուժի վերածվելու տարիներ, որը վերափոխում էր հասարակության տնտեսական հիմքերը, դրա սոցիալական էությունը և հոգևոր կյանքը։ Դարակազմիկ այդ պրոցեսը լրիվ հաստատեց մարքսիզմ-լենինիզմի, գիտական կոմունիզմի սկզբունքների ճշմարտացիությունը, դրանց կազմակերպող ու մոբիլիզացնող վիթխարի ուժը, խոր համապատասխանությունը աշխատավորության կենսական շահերին։*

*«Մարքսիզմ-լենինիզմը,— նշված է կուսակցության XXV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ,— միակ հուսալի հիմքն է ճիշտ ստրատեգիա և տակտիկա մշակելու համար։ Այն մեզ տալիս է պատմական հեռանկարի ըմբռնումը, օգնում է որոշելու սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացման ուղղությունը շատ տարիների համար, ճիշտ կողմնորոշվելու միջազգային իրադարձություններում։ Մարքսիզմ-լենինիզմի ուժը մշտական ստեղծագործական զարգացումն է» (Լ. Ի. Բրեժնև,* Լենինյան կուրսով, *հ. 5, էջ 704)։*

*ՍՄԿԿ XXV համագումարում և կուսակցության Կենտկոմի հետագա պլենումներում առաջադրված գաղափարներն ու դրույթներն ակնբախ են ինչպես երկրի ներքին զարգացման, այնպես էլ միջազգային հարաբերությունների նոր պրոբլեմների ընդգրկման ու վերլուծության մասշտաբայնությամբ ու համակողմանիությամբ։ Դրանք ժողովրդական տնտեսության ինտենսիվացման, հասարակության սոցիալական միատարրության տենդենցների խորացման, աշխատավորության կոմունիստական դաստիարակության ողջ աշխատանքի ներգործունության բարձրացման, համակողմանի, ներդաշնակ զարգացած անհատի ձևավորման հարցերն են։ Միջազգային ասպարեզում կենսական անհրաժեշտություն են սոցիալիզմի երկրների համագործակցության հետագա կատարելագործումը, դրանց եղբայրական միասնության ամրապնդումը, լարվածության թուլացումը, ժողովուրդների կայուն խաղաղության ու անվտանգության ապահովումը։*

Սովետական հասարակության հասումներից և նոր փորձի ընդհանրացումներից ելնելով, կուսակցության վերջին համագումարներում առաջադրվել և հիմնավորվել են մի շարք կարևորագույն տեսական դրույթներ, որոնք վիթխարի նշանակություն ունեն կոմունիստական շինարարության քաղաքականության ու պրակտիկայի ճիշտ կողմնորոշման համար, խոշոր ավանդ են մարքս-լենինյան ուսմունքի ստեղծագործական զարգացման մարզում: Դրանցից են՝ զարգացած սոցիալիզմի փուլը որպես օրինաչափ աստիճան կոմունիստական ֆորմացիայի ձևավորման ճանապարհին. հասուն սոցիալիզմի փուլում կոմունիստական կուսակցության վերաճումը ողջ ժողովրդի կուսակցության, սոցիալիստական պետությանը՝ համաժողովրդական պետության, ինչպես և մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսության վերաճումը համաժողովրդական գաղափարախոսության. մարդկանց պատմական նոր հանրությանը՝ սովետական ժողովրդի. միասնական սովետական, սոցիալիստական ապրելակերպի ձևավորումը և այլ դրույթներ:

Կուսակցության, պետության ու գաղափարախոսության այս նոր կացությունը մեկնաբանվում է խիստ դիալեկտիկորեն: Ընդհուպ մինչև կոմունիզմի լիակատար հաղթանակը, երբ կվերանան դասակարգային տարբերությունները, հետևաբար և՝ քաղաքական հարաբերությունները, կուսակցությունը և պետությունը ո՛չ միայն չեն «կորցնի» իրենց դասակարգային էությունն ու կոչումը, այլև, ընդհակառակն, առավել լիովին ու խորությամբ կարտահայտեն կոմունիստական շինարարության առաջատար ուժի՝ բանվոր դասակարգի շահերն ու իդեալները համաժողովրդական շահերի և իդեալների վերափոխելու փաստի համաշխարհային պատմական նշանակությունը: Մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ձևավորումը բնավ չի նշանակում, թե հասուն սոցիալիզմի փուլում «վերանում» են դասակարգերն ու ազգերը (ազգային տարբերությունները կգոյատևեն դեռ շա՜տ երկար և կսկսեն աստիճանաբար «մահանալ» միայն կոմունիզմի զարգացման փուլում), այլ վկայում է երկրի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, ազգերի ու ազգությունների համար ընդհանուր, արմատական շահերի, արժույթների, իդեալների, կենսագործունեության այնպիսի հիմնական ձևերի զարգացման ռեալ պրոցեսը, որոնք հասարակության, երկրի ողջ բնակչության այս և մյուս բոլոր կառուցվածքային տարրերը միաձուլում են մեկ ամբողջում:

Միանգամայն տեղին է շեշտված, որ «Երկրի զարգացման արդի փուլում տեսության հետագա ստեղծագործական մշակման պահանջմունքը ոչ թե նվազում, այլ, ընդհակառակը, ավելի է մեծանում: Ինչպես ընդհանուր տեսական, հիմնարար, այնպես և կիրառական բնույթի արդյունավետ հետազոտությունների համար նոր հնարավորություններ են գոյանում տարբեր գիտությունների, մասնավորապես՝ բնական ու հասարակական գիտությունների սահմանագծում: Դրանք պետք է օգտագործել լիովին» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 5, էջ 705):

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XXV համագումարը տվեց ամբողջ գիտատեխնիկական ճակատի գաղափարաքաղաքական հստակ կողմնորոշումը, արտահայտեց մեր կուսակցության հոգատարությունը սովետական գիտության բուռն զարգացման, կադրերին գաղափարայնության ու կուսակցականության բարձր ոգով դաստիարակելու վերաբերյալ: Հատկապես շեշտվեց տեսական հիմնարար հետազոտությունների նշանակությունը, հետազոտություններ, որոնք կոչված են լայն հորիզոններ բացելու էկոնոմիկայի, հասարակական պրակտիկայի առջև, նախադրյալներ ստեղծելու տնտեսական, սոցիալական ու գիտատեխնիկական առաջընթացի երկարաժամկետ պլանների կազմման համար: «Ճիշտ է ասված,— նշում է ընկեր Բրեժնևը,— չկա ոչինչ ավելի գործնական, քան լավ տեսությունը: Մենք քաջ գիտենք, որ գիտատեխնիկական առաջընթացի ջրառատ հոսքը կցամաքի, եթե այն մշտապես չսնուցվի հիմնարար հետազոտություններով» (նույն տեղը, էջ 666):

Այսպիսով, հասուն սոցիալիզմի փուլում տեսության ու պրակտիկայի կապին հատուկ են մի շարք օրինաչափ տենդենցներ, որոնց աղբյուրը սովետական հասարակության նվաճումներն են էկոնոմիկայի, սոցիալական ու գաղա-



փարախոսական հարաբերությունների բնագավառում, գիտության ու կուլտուրայի, մասսաների կոմունիստական դաստիարակության գործում:

Նախ և առաջ, անշեղորեն ընդլայնվում է գիտատեսական իմացության «օբյեկտի» ոլորտը, և գիտության նվաճումների բազայի վրա կարգավորվում են հարաբերությունների և կապերի առավել մասշտաբային ու բարդ սիստեմները հասարակական կյանքում, քաղաքականության և էկոնոմիկայի, հասարակության ու անհատի, հասարակության և բնական միջավայրի փոխհարաբերություններում: Աճում է գիտության դերը քաղաքական կուրսի մշակման և տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարումն իրականացնելու, էկոնոմիկայի կազմակերպման գործում, պլանավորման և կառավարման հարցերում, գաղափարախոսական աշխատանքի բովանդակության ու մեթոդների կատարելագործման ոլորտում:

Երկրորդ, ուժեղանում են մարքս-լենինյան տեսության մեթոդաբանական և աշխարհայացքային ֆունկցիաները հասարակական և բնական բոլոր գիտությունների նկատմամբ: Սա, մի կողմից, խթանում է մարքս-լենինյան տեսության ստեղծագործական զարգացումը, մյուս կողմից, գաղափարատեսական ամուր բազա է ստեղծում տարբեր գիտությունների ջանքերը կոորդինացնելու՝ հօգուտ հիմնարար խոշոր պրոբլեմների մշակման, մի բան, որ ամբողջովին համապատասխանում է արդի փուլի պահանջներին:

Երրորդ, սոցիալական սուբյեկտը, ընդգրկելով բնակչության բոլոր խավերը, հաստատում է տեսության ու պրակտիկայի միասնությունը: Այսպես, եթե սոցիալիզմի համար մղված պայքարի վաղ փուլերում այդ ֆունկցիան, կուսակցության ղեկավարությամբ, կատարում էր գլխավորապես պրոլետարիատի առավել գիտակից ինդուստրիալ ջոկատը, ապա սոցիալիզմի հաղթանակով ու զարգացմամբ դրա կրողները դարձան սոցիալ-դասակարգային բոլոր խմբերն ու խավերը, երկրի բոլոր ազգերն ու ազգությունները, որոնք համոզված ու ակտիվորեն կենսագործում են կուսակցության քաղաքականությունը, կոմունիզմի իդեալները:

Չորրորդ, զարգացած սոցիալիստական հասարակարգում էականորեն աճում է յուրաքանչյուր անհատի ազդեցությունը տեսության ու պրակտիկայի կապի ամրապնդման վրա: Առավել ակնբախ է դրսևորվում կոմունիստական այն օրինաչափությունը, ըստ որի յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է: Հետզհետե հրատապ խնդիր է դառնում յուրաքանչյուր մարդու ունակությունների և տաղանդի բացահայտումն ու գործուն կիրառումը: Յուրաքանչյուր անհատի ձևավորումը, որպես գիտակից սուբյեկտ, տեսության ու պրակտիկայի նման միասնությունն իրականացնող անձնավորություն, հանդես է գալիս կոմունիզմի կառուցման դժվարություններն ու հակասությունները հաղթահարելու, տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում ժողովրդի ջանքերն առավել արդյունավետ դարձնելու համար:

Կուսակցության կողմից տեսական խոշոր պրոբլեմների առաջադրման ու լուծման գործում ապագայի նկատմամբ ունեցած գիտականորեն հիմնավորված ծրագիրը, հեռանկարային նպատակների սահմանումը սերտորեն զուգորդվում են հրատապ խնդիրների, ուղղությունների և դրանց հասնելու մեթոդների խոր մշակման հետ: Զարգացած սոցիալիստական հասարակության տնտեսական ու բանական վիթխարի պոտենցիալը, սովետական ողջ ժողովրդի ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունն ավելի լիակատար զարգացնելու համար կուսակցությունը մշակում է համապատասխան մեթոդներ:

Գիտությունը պետք է հսկայական ավանդ մուծի կոմունիզմի կառուցման ամենակարևոր խնդիրների լուծման գործում: Դրանցից են էներգիայի նոր աղբյուրների և բնական ռեսուրսների շատ տեսակների փոխարինիչների հայտնագործումը, ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինումը, գյուղատնտեսության վերելքին խթանող աջակցությունը, հիվանդությունների դեմ մղվող պայքարը, մարդու կյանքի երկարացումը:

Գիտության առավել ինտենսիվ ներազդումը պրակտիկ գործունեության բովանդակության, ձևերի ու մեթոդների, սովետական ապրելակերպի կատա-

ընլագործման վրա խորապես օրինաչափ երևույթ է։ Այն թելադրվում է տնտեսական ու կուլտուրական շինարարության ներկա մասշտաբներով, տնտեսական, սոցիալական ու գաղափարախոսական հարաբերությունների ներքին պահանջներով։ Այդ ամենի շնորհիվ ուժեղանում են դրանց հետագա զարգացման պայմանավորվածությունը, փոխգործողությունը, փոխազդեցության ակտիվությունը։ Այս հարցն այժմ ամբողջությամբ ծառացած է պլանավորման և կառավարման առջև։ Իսկ եթե հաշվի առնենք, որ հասարակական հարաբերությունների զարգացումը ՍՍՀՄ-ում ներկայումս հենվում է երկրի ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսի վրա և երկրի ներսում ու միջազգային շրջանակներում ընթանում է աշխատանքի բաժանման, մասնագիտացման և կոոպերացման հետագա խորացման պայմաններում, ապա միանգամայն ակնհայտ կդառնա, թե պրակտիկ գործունեության համար առաջավոր գիտությունը որքան բարդ կանխագծումներ ու ճշգրտումներ ունի անելու։

Այժմ մարդկանց արտադրական գործունեությունը՝ աշխատանքի նկատմամբ ունեցած վերաբերմունքով, դրա կազմակերպման ու կուլտուրայի մակարդակով, կարող է ցանկալի արդյունքի հասցնել, ավելի լիակատար բավարարել հասարակության և անհատի աճող պահանջները, եթե այն առավել չափով է կրում սոցիալական և գաղափարախոսական զարգացող հարաբերությունների ազդեցությունը։ Խորապես օրինաչափ է, որ կուսակցության քաղաքականության և սովետական պետության գործունեության մեջ տնտեսական ու սոցիալական զարգացման, գաղափարաքաղաքական ու բարոյական դաստիարակության, մասսաների կուլտուրայի ու կրթական մակարդակի բարձրացման հարցերն արծարծվում և լուծվում են միասնական կոմպլեքսով։ Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ արդեն տարիներ շարունակ արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում մշակվում ու ներդրվում են կոլեկտիվների սոցիալական ու կուլտուրական զարգացման միասնական պլաններ։ Հասարակական կյանքի բոլոր ոլորտների և բուն անհատի ներդաշնակ զարգացմանը կխթանի համանման պլանների մշակումն ու ներդրումը յուրաքանչյուր քաղաքի, գյուղի, շրջանի, մարզի, հանրապետության մասշտաբով։ Այդ մեծ ու ծավալուն աշխատանքը դեռևս միշտ չէ, որ տարվում է պլանաչափորեն և օգտվում տեսական ու մեթոդական համապատասխան գիտելիքներից։

Ժողովրդատնտեսական, սոցիալական ու կուլտուրական խոշոր հարցերի լուծման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը պրակտիկ գործունեության սկզբունքորեն նոր, բացառիկ կարևոր միջոց է։ Այն պահանջում է հիմնարար և կիրառական բնույթի գիտական մշակումների բարձր մակարդակ, տարբեր գիտությունների կոորդինացման մասշտաբների ընդլայնում, կյանքի, առաջավոր պրակտիկայի պահանջների հետ կապի ամրացում։

Երկրի սոցիալիստական զարգացման ողջ պատմական փորձը հաստատում է Ֆ. Էնգելսի հետևյալ խոսքերի իրավացիությունը. «Որքան ավելի համարձակորեն ու վճռականորեն է հանդես գալիս գիտությունը, այնքան ավելի է այն համապատասխանում բանվորների շահերին և ձգտումներին» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 317), իսկ հաղթանակած սոցիալիզմի պայմաններում՝ նաև բոլոր աշխատավորների, ամբողջ հասարակության շահերին ու ձգտումներին։

Արդի գիտատեխնիկական հեղափոխությունը հատուկ ուժով է հաստատում դրա ճշմարտացիությունը։ Սոցիալիզմի պայմաններում այն հանգեցնում է արտադրաուժերի առաջընթացի և աշխատավորների կենսական շահերի օրգանական միացման։ Ավելին, այդ առաջընթացը մեծապես պայմանավորված է մասսաների կուլտուրայի և բարեկեցության աճով, համակողմանիորեն զարգացած անհատի ձևավորմամբ։ Այդ հեղափոխությունն ըստ էության շոշափում է այն գործոնների ողջ կոմպլեքսը, որոնք ազդում են հասարակական պրակտիկայի վրա։

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում, կուսակցական մյուս փաստաթղթերում առաջադրված է գիտության և արտադրության կապի ծավալուն ծրա-



գիր, հստակ կողմնորոշում է տրված պլանավորող մարմիններին, ժողովրդական տնտեսության ճյուղերին, ակադեմիական և ճյուղային-գիտահետազոտական հիմնարկություններին՝ ապահովելու գործող ձեռնարկությունների վերազինումն ըստ ժամանակակից տեխնիկայի և տեխնոլոգիայի, ժողովրդական տնտեսության կառուցվածքի և կազմակերպման որակական տեղաշարժերի բաղայի։

Տնտեսական ու սոցիալական հարաբերությունների հասուն մակարդակը, հարաբերություններ, որոնք հաստատում են մարդկանց ընկերական համերաշխությունն ու փոխօգնությունը, հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը, ժողովրդի համախմբվածությունը կուսակցության շուրջը, ինչպես և ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի անշեղ աճը, հնարավորություններ է ստեղծում նորանոր խնդիրների լուծման համար։ Այս ամենի նպատակը կոմունիստական անհատի ձևավորումն է։ Անհատի նոր, մասսայական տիպ է նա, մարմնացումը միլիոնավոր մարդկանց՝ կոմունիստական աշխարհայացքի, բանվոր դասակարգի գաղափարախոսության ու բարոյականության գիտակից և համոզված կրողների։ Դրանք կոլեկտիվիստներ են և ինտերնացիոնալիստներ, հայրենասերներ և հումանիստներ, խաղաղության և ժողովուրդների եղբայրության ակտիվ ջատագովներ։ Նրանք բնորոշվում են կոլեկտիվի և հասարակության հանդեպ պարտքի և պատասխանատվության զգացումով, ունեն քաղաքական լայն մտահորիզոն, օժտված են բարձր կուլտուրայով, գիտելիքներով, խորապես նվիրված են սոցիալիստական կարգերին, կոմունիզմի իդեալներին։ Եվ այս ամենը դրսևորվում է աշխատանքում, ստեղծագործության նկատմամբ ունեցած ձգտման, հասարակության և պետության գործերին հարաճուն մասնակցության ոլորտներում։

Վարելով կոմունիստական անհատի հետագա ձևավորման պրոցեսը և կատարելագործելով այն, կուսակցությունը հաստատուն կերպով հենվում է նաև անցած տասնամյակների ընթացքում այդ բնագավառում կուտակված գործնական հարուստ փորձի վրա, ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի և գիտության արդի նվաճումների դիրքերից խորապես իմաստավորում այն։ Միաժամանակ նա լիովին հաշվի է առնում այդ պրոցեսի արտակարգ բարդ դիալեկտիկան, գործոնների բազմազանությունը, որոնք ուղղակի կամ զարտուղի կերպով ազդում են անհատի կենսափորձի, հայացքների, արժույթների և ձգտումների ձևավորման վրա։ Եվ կուսակցության քաղաքականության նպատակն է, որ այդ գործոնների ազդեցությունը կոմպլեքս ձևով ի մի հավաքվի և ուղղվի միասնական հունով, որպեսզի հասարակության բոլոր անդամների շրջանում զարգացվեն բարոյական ու գաղափարական վսեմ հատկություններ։

Այսպես, գաղափարախոսական, դաստիարակչական աշխատանքի բովանդակության, ձևերի ու մեթոդների կատարելագործման ամբողջ հսկայական նշանակությամբ հանդերձ, մարդու կենսափորձի բովանդակության, այստեղից էլ՝ նրա հասարակական վարքի պրակտիկայի վրա անմիջականորեն ներգործում են նրա արտադրական, կենցաղային ու միջազգային կապերի կոնկրետ վիճակը, սոցիալիստական հիմունքների խստիվ պահպանումը աշխատանքի վարձատրման, նրա նյութական ու բարոյական խրախուսման գործում, կոլեկտիվիստական հարաբերությունների զարգացումը, օրինականության անշեղ պահպանումը, ավագ ընկերների, կոմունիստների, ղեկավարների անձնական օրինակը և այլն։

Յուրաքանչյուր անհատին համակելով աշխատասիրությամբ, ձեռներեցությամբ, կարգապահության ոգով, գիտելիքների տիրապետման մղումով, մենք մեծապես կնպաստենք այն բանին, որպեսզի ամենուր կենսագործվի սոցիալիզմի «յուրաքանչյուրից՝ ըստ ունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքը։ Տվյալ սկզբունքն իր ներգործությամբ նոր տիպի անհատի ձևավորմանը կարող է նպաստել այն չափով, ինչ չափով, որ նրան վերաբերող պահանջները պահպանվում են սոցիալական բոլոր ինստիտուտների, տնտեսական ու հասարակական սիստեմի բոլոր օղակների կոորդինացված

ջանքերով՝ ներքևից մինչև վերև։ Այս դեպքում ապահովվում են պրոցեսների փոխլրացումը և փոխադարձ խթանումը, որոնք բնորոշվում են սոցիալիզմի դիալեկտիկական ամբողջականության հիմնական սկզբունքում մարմնավորված երկու կողմերով։ Միաժամանակ դրա կողմերից յուրաքանչյուրի պահանջների խախտումը կարող է հանգեցնել նրա մյուս կողմի մեջ թաքնված պոտենցիաների կաշկանդման։

Իրականում անհատի ունակությունների ձևավորման ու զարգացման նկատմամբ անբավարար ուշադրությունը, դրանց թերագնահատումը մասնագիտական կողմնորոշման ժամանակ, ուսուցման և կրթության պրոցեսում, կադրերի առաջքաշման ու տեղաբաշխման ընթացքում ո՛չ միայն բացասաբար են անդրադառնում անհատի ապագայի, նրա կյանքի հեռանկարի վրա, ուղղակի կամ անուղղակի վնաս հասցնելով հասարակությանը նրա ստեղծագործական պոտենցիալի սահմանափակմամբ, հոգեբանական լարվածություն հարուցելով մարդկանց փոխհարաբերություններում և այլն, այլև «ըստ աշխատանքի» բաշխման սկզբունքի հետևողական պահպանման բուն հնարավորության վրա։

Չէ՞ որ հանրային արտադրության սիստեմում կամ, ասենք, ապարատում, գիտության ոլորտում տեղ զբաղեցրած մարդը եթե անհամապատասխան է իր ունակություններով ու կոչմամբ, ո՛չ միայն օբյեկտիվորեն իջեցնում է տվյալ կոլեկտիվի գործունեության մակարդակը, այլև, այլ հավասար պայմաններում, առավել չափով հակված է բազմազան միջոցներով ավելի շատ ստանալ հասարակությունից, քան ինքն է նրան տալիս։ Անձնական նվիրվածության, ստորաքարշության, քննադատության ճնշման հոգեբանությունը սնվում է «ոչ լիարժեքության կոմպլեքսի» աղբյուրից և իր դիրքը, պաշտոնը ամեն գնով պահպանելու տվյալ անհատի ձգտումից։ Իսկ մյուս կողմից ըստ քանակի և որակի աշխատանքի վարձատրման սկզբունքի խախտումը սահմանափակում է աշխատանքային կարգապահության ամրապնդման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և դրա որակական ցուցանիշների բարելավման պրոցեսները նյութական գործոններով է՛լ ավելի ակտիվորեն խթանելու հնարավորությունը, ինչպես նաև ուղղակի արգելակում է գիտելիքների և որակավորման մակարդակի բարձրացման, մասնագիտություն ընտրելու գործում ավելի պատասխանատու վերաբերմունք ցույց տալու բարոյահոգեբանական խթանների ձևավորումը և ակտիվ ներգործությունը։

Հասարակության համար անհատի կատարած աշխատանքին ոչ համարժեք վարձատրության հնարավորությունները, անկախ տվյալ երևույթի աղբյուրների նկատմամբ ունեցած գնահատականից (հավասարեցում, հնացած տարիֆային դրույքներ, զբաղեցրած պաշտոնի անհամապատասխանություն և այլն), այնպես թե այնպես հանգեցնում են անձնական շահերը հասարակական, պետական շահերին հակադրմանը, արտադրության կատարելագործման նկատմամբ անտարբերության հոգեբանության արմատավորմանը, ծնում են ցածր պլանները պահպանելու շահագրգռություն, բարոյական տեսակետից աննորմալ դրությունը (վախը քննադատական խոսքի նկատմամբ, խմբակայնությունը, փոխադարձ հովանավորությունը և այլն) պաշտպանելու ձգտում։ Քիչ և վատ աշխատելով շատ ստանալու հնարավորությունը պակաս դեր չի խաղում աշխատանքի մեջ «չվող» մարդու հոգեբանության կարգավորման գործում, մի շարք ձեռնարկություններում հանգեցնում է կադրերի չարդարացված հոսունության, որը և իր հերթին սահմանափակում է կոլեկտիվների հնարավորությունը՝ տևական և կայուն դաստիարակչական ներգործություն ունենալու անհատի վրա։

Սոցիալիզմի հիմնական սկզբունքի խախտումը հատկապես անհանդուրժելի է, երբ այն դիտում ենք ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պահանջների լույսի ներքո։ Դրա նվաճումները սոցիալիստական տնտեսության առավելությունների հետ միացնելու խնդիրը կարող է հաջողությամբ լուծվել յուրաքանչյուր անհատի գիտելիքների, կազմակերպվածության, կարգապահության, պատասխանատվության, գաղափարական ու բարոյական հասունության անընդհատ աճի պայմաններում։ Հասնել նոր պահանջների մակարդակին, նշանակում է ունենալ ո՛չ միայն արտադրական բարձր որակավորում,



կարողանալ գնահատել ժամանակի յուրաքանչյուր րոպեն, ստեղծագործաբար վերաբերվել գործին, որոնել և գտնել նոր և ավելի լավ կազմակերպական ու տեխնիկական լուծումներ, այլև ունենալ քաղաքական լայն մտահորիզոն, գործի նկատմամբ իսկական պետական մոտեցում, հասկանալ հասարակության զարգացման օրինաչափությունները։ Հետևաբար, սոցիալիզմի հիմնական սկզբունքների խիստ պահպանումն էլ հնարավորություն է ընձեռում՝ ամբողջությամբ օրգանապես շաղկապել հասարակության և անհատի շահերը, խորացնել մտքի և գործի միասնությունը, կոմունիստական ստեղծագործության տեսության ու պրակտիկայի միասնությունը։

Անհատի ձևավորման պրոցեսների կառավարումը սոցիալական կառավարման առավել բարդ ոլորտն է։ Օբյեկտիվ դժվարություններն այստեղ ծնունդ են առնում ո՛չ միայն հասարակության սոցիալական կառուցվածքի տարբերակվածության, հետևաբար և մարդկանց կենսապայմանների առանձնահատկության (աշխատանք, կենցաղ, կուլտուրա, սոցիալական փորձ, կրթամակարդակ և այլն) փաստի հաշվառման անհրաժեշտությունից։ Դժվարությունները կապված են նաև բուն խնդրի բնույթի, այսինքն՝ սոցիալական այն միջավայրի բազմազան մակարդակների ու ձևերի կարգավորման անհրաժեշտության հետ, որտեղ ապրում և զարգանում է անհատը։ Այդ միջավայրի մի քանի ձևեր, որոնք ավելի քիչ են ենթակա սոցիալական ներգործության ու հսկողության, գերազանցապես առաջանում են տարերայնորեն, անհատների միջև եղած հարաբերություններից (ընտանիք, ժամանցի ոլորտ, հետաքրքրությունների տարբեր խմբեր և այլն), միաժամանակ բացառիկ ուժեղ ազդեցություն են ունենում անհատի վարքի ձևավորման, նրա արժեքային կողմնորոշման ողջ սիստեմի վրա։ Իսկ եթե հաշվի առնենք, որ հարաբերությունների այդ իսկ ոլորտներում առավել կայուն են անհատի հին սովորույթները, ավանդույթները, համապատասխան պատկերացումները (պարտքի և խղճի, պատվի և արժանապատվության, իրավունքի և արդարության մասին և այլն), ապա հասկանալի կդառնա, թե ինչու հավասար պայմաններում աշխատանքային կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների դաստիարակչական ջանքերի արդյունքը էականորեն տարբեր է լինում առանձին մարդկանց նկատմամբ։ Այստեղ մեծ է առաջավոր, սոցիալիստական ավանդույթների հետևողական ամրապնդման դերը։ Հարկավոր է հաշվի առնել նաև հետևյալը։ Նոր մարդու սոցիալիստական ապրելակերպի, աշխարհայացքի, բարոյականության և հոգեբանության համար կոլեկտիվիզմի հիմնարար սկզբունքները առավել խոր են արմատավորվել աշխատանքային հարաբերությունների և դրանց հետ կապված արժույթների ոլորտում, արտադրական կոլեկտիվների գործունեության մեջ, բայց դեռևս ամեն տեղ չէ, որ մարմնավորման բավարար հասուն ու կայուն ձևեր են ստացել ոչ արտադրական ոլորտում՝ կենցաղում, զվարճությունների ժամանակ և այլն։ Այստեղից էլ՝ կոլեկտիվ հիմունքներով հասարակական կյանքի բոլոր ոլորտների ու ձևերի «կառուցումն» ավարտելու խնդրի վիթխարի նշանակությունը։

Զարգացած սոցիալիստական հասարակության մեջ անհատն իր արժույթների և ձգտումների սիստեմում ո՛չ միայն ի մի է բերում հասարակական ողջ հարաբերությունների ազդեցությունը, այլև ինքն է առավել ակտիվ ներգործում դրանց հետագա կատարելագործման վրա։ Մեծ Հոկտեմբերը և մարդկության պրոգրեսը հոդվածում Լ. Ի. Բրեժնևը նշում է. «Մարդուն համակել հասարակական վեհ նպատակներին հասնելու ձգտումով, գաղափարական համոզվածությամբ, աշխատանքի նկատմամբ իսկական ստեղծագործական վերաբերմունքով. ահա ամենաառաջնահերթ խնդիրներից մեկը։ Այստեղ է կոմունիզմի համար մղվող պայքարի շատ կարևոր ճակատը, և այդ ճակատում մեր տարած հաղթանակներով առավել մեծ չափով պայմանավորված կլինի թե՛ տնտեսական շինարարության ընթացքը, թե՛ երկրի սոցիալ-քաղաքական զարգացումը»։

Այստեղից էլ՝ կուսակցության, պետության, աշխատավորական կոլեկտիվների ուշադրության սևեռումը յուրաքանչյուր անհատի ստեղծագործական ուժերի զարգացման, նրա գիտելիքների և կուլտուրայի աճի, գաղափարաբարոյական առաջավոր հայացքների և արժույթների հետ նրա ներդաշնակման վրա։ Միաժամանակ՝ պահանջների բարձրացումը բուն անհատի, նրա կողմից

իր պարտքի և պարտականությունների կատարման, ինքնակատարելագործման հնարավորությունների ճիշտ օգտագործման առումով։ Այս իր արտացոլումն է գտել ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ, որտեղ անհատի երաշխավորված լայն իրավունքներն ու ազատությունները, հոգատարությունը նրա նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման հանդեպ զուգորդվում են հասարակության, պետության նկատմամբ օրենսդրաբար ամրապնդված նրա մեծ պարտականությունների հետ։

Կուսակցությունը ողջ սրությամբ դնում է հանձնարարված գործի, կոմունիստական շինարարության ընդհանուր հաջողությունների համար հասարակության յուրաքանչյուր անդամի պատասխանատվության բարձրացման, թերությունների դեմ պայքարելու նրա կարողության և պատրաստակամության, ստեղծագործական լայն նախաձեռնություն ցուցաբերելու հարցերը։

Զարգացած սոցիալիզմի վիթխարի ռեզերվներն ավելի լիակատար ձևով գործողության մեջ դնելը պայմանավորված է հենց դրանով։ Դա վերաբերում է արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ նյութատեխնիկական պոտենցիալի օգտագործմանը, արտադրությունում առաջավոր գիտության, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի նվաճումների ներդրմանը, կենցաղսպասարկման ու տրանսպորտի ոլորտին, աշխատանքային կարգապահությանը, իրավակարգի, սոցիալիստական համակեցության նորմերի ու կանոնների պահպանմանը։

«Ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի և գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 5, էջ 713)։

Մեր կուսակցության քաղաքականությունը մարքս-լենինյան տեսության և կոմունիստական շինարարության պրակտիկայի միասնության վառ մարմնացումն է։ Այդ միասնությունը սովետական հասարակության անհաղթահարելի ուժն է, կոմունիզմի ճանապարհին նրա հաղթանակների գրավականը։

---

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՃԳՆԱԺԱՄԸ ԵՎ ԿՐՈՆԸ

**Դ. Մ. ՈՒԳՐԻՆՈՎԻՉ**
փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԱՐԴԻ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ կրոնի ճգնաժամի մասին գրում և խոսում են ինչպես նրա հակառակորդները, նույնպես և կողմնակիցները, ինչպես աթեիստները, այնպես և հավատացյալներն ու եկեղեցական գործիչները։ Սոցիոլոգիական բազմաթիվ տվյալներ համոզիչ ցույց են տալիս, որ կապիտալիստական երկրներում աճում է այն մարդկանց թիվը, որոնք անտարբեր են կրոնական հավատալիքների ու արժույթների նկատմամբ, քննադատաբար են վերաբերվում եկեղեցուն, չեն հաճախում կամ չափազանց հազվադեպ են հաճախում ժամերգություններին և որոնց վարքագիծը չեն որոշում կրոնական գաղափարները, նորմերն ու դոգմաները։

Այն հանգամանքը, որ բուրժուական գաղափարախոսների ու եկեղեցու գործիչների մեծ մասն ընդունում է կրոնի ճգնաժամը, ամենևին չի նշանակում, սակայն, որ նրանք ճիշտ ու գիտականորեն են մեկնաբանում ինչպես այդ ճգնաժամի պատճառները, այնպես և դրա էությունը։ Ընդհակառակը, նրանց գրքերում, հոդվածներում, բանավոր ելույթներում ու քարոզներում մենք ավելի հաճախ ենք տեսնում կրոնի արդի ճգնաժամի իսկական պատճառները խեղաթյուրելու, դրա խորությունն ու սոցիալական հետևանքները սքողելու փորձերը։

Աստվածաբանների և եկեղեցական գործիչների շրջանում տարածված է, օրինակ, այն տեսակետը, ըստ որի կրոնի ճգնաժամը, իբր, «ինդուստրիալ քաղաքակրթության» հետևանքն է։ Գիտության ու տեխնիկայի արագ զարգացումը, հայտարարում են նրանք, քայքայել է «բնական» հարաբերությունները մարդկանց միջև, «ապամարդկայնացրել» դրանք, հանգեցրել է բարոյական արժույթների կորստյան, բռնության ու սպառման պաշտամունքի, աստծուց մարդու օտարացմանը, որը, նրանց տեսակետից, հանդես է գալիս որպես բարոյական նորմերի ու արժույթների միակ աղբյուր։ Այն, որ մասսաները կորցրել են կրոնական հավատը, այդ գաղափարախոսները ներկայացնում են որպես բարոյականության կորուստ նրանց կողմից, որպես բարոյազանցության, եսասիրության ու «գազանային բնազդների» տիրապետություն։ Նման տեսաբաններից ոմանք ո՛չ միայն դատապարտում են գիտական և տեխնիկական առաջընթացը, այլև պահանջում են կասեցնել, կանգնեցնել այն։ Այսպիսով, գիտությունն ու տեխնիկան են մեղավոր համարվում և ոչ թե դրանց զարգացման ու կիրառման կապիտալիստական ձևերը արդի հասարակության այն բոլոր «դժբախտությունների» համար, որոնց թվին աստվածաբանները առաջին հերթին դասում են մասսաների կրոնական հավատի կորուստը։

Մյուս տեսակետն այն է, որ կրոնի ժամանակակից ճգնաժամը մեկնաբանվում է որպես կրոնականության ավանդական ձևերի ճգնաժամ։ Կրոնը, աշխատում են ապացուցել այդ ըմբռնման կողմնակիցները, չի կարող անհետանալ, քանի որ մարդկային կուլտուրայի հիմքն է, իբր, այն անհատին կապում է հասարակության հետ, ապահովում է սոցիալական սիստեմի ամբողջականու-

թյունը։ Սակայն հասարակական փոփոխությունները պահանջում են նաև կրոնի ձևերի փոփոխություններ։ Կրոնի ավանդական ձևերն իրենց սպառել են նախկին, «ավանդական» հասարակության հետ միասին։ Եկեղեցական հաստատություններում մարմնավորված ավանդական կրոնականությանը,— աշխատում են ապացուցել նման աստվածաբանները,— փոխարինում է նոր, «անտեսանելի կրոնը», որը հատուկ է յուրաքանչյուր մարդու՝ անկախ եկեղեցու նկատմամբ և նույնիսկ անկախ աստծո՝ որպես գերբնական, բարձրագույն, անդրաշխարհային էակի գաղափարի նկատմամբ ունեցած վերաբերմունքից։ Նշված կոնցեպցիան հենվում է կրոնի ազատ մեկնաբանությունների վրա, որոնց դեպքում կրոնն ըստ էության նույնացվում է ամեն մի աշխարհայացքի հետ, արժեքների ամեն մի սիստեմի հետ։ Բնական է, որ ըստ կամային մեկնաբանությունների՝ կրոնը հայտարարվում է հավիտենական և տանում դեպի նրա ճգնաժամի ժխտում։ Կրոնի ճգնաժամը հանգեցվում է նրա հնացած ձևերի ճգնաժամի, և պրոբլեմը, այդ տեսակետից, այն է միայն, որ որքան կարելի է կրոնի ավանդական, հնացած ձևերը շուտ փոխարինվեն նոր պայմաններին համապատասխանող ժամանակակից ձևերով։

Կրոնի արդի ճգնաժամի այդ ու նման մեկնաբանությունները կեղծ են, հեռու գիտությունից։ Օբյեկտիվորեն (անկախ այդ հեղինակների նպատակներից ու սուբյեկտիվ ձգտումներից) դրանց նպատակն է ժամանակակից կապիտալիստական վերնաշենքի սիստեմում պահպանել կրոնը որպես գաղափարական կարևոր գործոն։ Այդ ըմբռնումները թաքցնում են կրոնի արդի ճգնաժամի առավել խոր սոցիալական աղբյուրները, քանի որ նրանք կրոնի ճգնաժամը չեն դիտում որպես կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի դրսևորումներից մեկը։ Մինչդեռ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետ, արդի բուրժուական հասարակության տնտեսական, սոցիալական, քաղաքական և հոգևոր կյանքի խոր հակասությունների, սոցիալական երկու սիստեմների՝ կապիտալիստականի ու սոցիալիստականի հակամարտության հետ եղած կապից դուրս անհնար է ճիշտ հասկանալ ոչ կրոնի արդի ճգնաժամի պատճառները, ոչ դրա էությունը, ոչ էլ սոցիալական հետևանքները։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սկիզբը դրեցին առաջին համաշխարհային պատերազմը և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ Ֆաշիզմի ջախջախումը երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ու դրան հաջորդած սոցիալիստական հեղափոխությունները Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում խորացրին կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը, ավելի խարխլեցին համաշխարհային ասպարեզում նրա ունեցած տնտեսական ու քաղաքական կարևորագույն դիրքերը։ Գաղութային և կիսագաղութային երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման շնորհիվ ամենուրեք սկսեցին քայքայվել իմպերիալիզմի «թիկունքները»։ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների քաղաքական ճնշման ու տնտեսական կողոպուտի նախկին սիստեմը պատմության գիրկն է անցել։

Բոլոր այս սոցիալական պրոցեսներն էականորեն թուլացրին իմպերիալիզմի երբեմնի հզորությունը, հանգեցրին նրա ներքին հակասությունների խորացման։ Կապիտալիստական երկրների աշխատավորները և, ամենից առաջ, բանվոր դասակարգը առավել ակտիվ ու հետևողականորեն են մաքառում իրենց տնտեսական ու քաղաքական իրավունքների համար, մոնոպոլիաների ու կապիտալիստական պետության ճնշման դեմ։

Այն հետևությունը, որ «կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը շարունակում է խորանալ (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 19), հաստատվում է նորագույն բազում սոցիալ-քաղաքական իրադարձություններով ու բախումներով։ Վերջնականապես հողմացրիվ է եղել այն առասպելը, թե իբր ժամանակակից կապիտալիզմը պետական կարգավորման օգնությամբ կարող է գերարտադրության ցիկլային ճգնաժամերից խուսափել։ 1973—1975 թթ. տնտեսական ճգնաժամն իր սրությամբ ու խորությամբ գերազանցեց հետպատերազմյան մյուս բոլոր ճգնաժամերը և ընթացավ կապիտալիստական տնտեսության բուռն ցնցումներով՝ ինչպիսիք են վալյուտային մշտական քաոսը և



անընդհատ աճող ինֆլյացիան, էներգետիկ և հումքային ճգնաժամը և այլն։

Կապիտալիստական սիստեմի խիստ մարդատյաց բնույթը դրսևորվում է, մասնավորապես, այն բանում, որ նյութական վիթխարի ռեսուրսները և աշխատողների ջանքերը ծախսվում են սպառազինությունների վրա, որին առանձին թափ է հաղորդում ռազմաարդյունաբերական կոմպլեքսը։ Դրա հետևանքով կրճատվում են առանց այն էլ համեստ «սոցիալական ծրագրերը», հասարակությունը զրկվում է մարդկանց շրջապատող միջավայրն առողջացնելու հնարավորություններից։ ԱՄՆ-ի ռազմական ծախսերը 1978 և 1979 թվականներին կկազմեն 245 մլրդ դոլար, իսկ շրջակա միջավայրի արմատական մաքրումը ԱՄՆ-ում, մասնագետների հաշվումներով, առաջիկա տասնամյակում կպահանջի 271 մլրդ դոլար (տե՛ս «Проблемы мира и социализма», 1978, № 3, стр. 56)։ Այսպիսով, ռազմական նպատակների համար հատկացված վիթխարի միջոցներով երկու տարում հնարավոր կլիներ արմատականորեն բարելավել միլիոնավոր մարդկանց կյանքի պայմանները, առողջացնել նրանց շրջապատող բնական միջավայրը։

Այդ կապակցությամբ հարկ է նկատել, որ ժամանակակից էկոլոգիական ճգնաժամը, որի մասին այնքան շատ են գրում ու խոսում վերջին տարիներին, առաջին հերթին հասարակության վերահսկողությունից զերծ տարերային կապիտալիստական էկոնոմիկայի հետևանքն է, որի միակ շարժիչ ուժը առավելագույն շահույթի ստացումն է։ Կապիտալիստական մոնոպոլիաները կործանում են բնությունը, թունավորում օդը, վնաս պատճառում միլիոնավոր մարդկանց առողջությանը, բայց ապահովում են առավել շահավետ պայմաններ արտադրության համար։ Հետևաբար, էկոլոգիական ճգնաժամը կապիտալիստական աշխարհում նույնպես կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի դրսևորումներից մեկն է։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամն ընդգրկում է նաև բուրժուական պետությունների քաղաքական կյանքի ոլորտը։ Առավել որոշակի է դառնում տիրապետող դասակարգի՝ մոնոպոլիստական բուրժուազիայի անկարողությունը՝ ապահովելու պետական մեքենայի կայուն, անխափան աշխատանքը։ Իմպերիալիզմի միջնաբերդը՝ ԱՄՆ-ը, որը հետպատերազմյան առաջին տարիներին թվում էր որպես բուրժուական կարգերի անսասան պատվար, 60-ական թվականներին և 70-ականի սկզբին ներքին քաղաքական կոնֆլիկտների, բախումների ու մերկացումների հետևանքով խորապես ցնցվեց։ Նեգրական ապստամբությունները մի շարք քաղաքներում, ժողովրդական լայն շարժումը Վիետնամի «կեղտոտ պատերազմի» դեմ, քաղաքական տեռորի ու բռնության աննախադեպ ծավալումը, որն առանձնապես ցցուն կերպով դրսևորվեց պրեզիդենտ Քենեդիի և Մարտին Լյութեր Քինգի սպանություններով, վերջապես, բուրժուական դեմոկրատիայի էության խայտառակ մերկացումը «Ուոտերգեյթյան գործի» կապակցությամբ, այս բոլորը երևան հանեցին ԱՄՆ-ի ներքին քաղաքական հակասությունների ողջ սրությունը, լայնորեն ռեկլամվող «ամերիկյան դեմոկրատիայի» կեղծիքն ու երկերեսանիությունը, որի ֆասադի ետևում տիրում են բացահայտ կաշառքը, պաշտոնատար անձանց կոռուպցիան, տեռորը, բռնությունն ու սպանությունները։ Ֆաշիստական վարչակարգերի տապալումը Հունաստանում և Պորտուգալիայում, ֆրանկիզմի քաղաքական սնանկությունը Իսպանիայում, կոմկուսակցությունների աճող ազդեցությունը Իտալիայում և Ֆրանսիայում նույնպես արդի կապիտալիզմի քաղաքական ճգնաժամի հետագա խորացման ու սրման վկայությունն են։

Ինչպես շեշտեց ՍՄԿԿ XXV համագումարը, վերջին տարիներին «ուժեղացել է բուրժուական հասարակարգի գաղափարաքաղաքական ճգնաժամը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 43)։ Կապիտալիզմն իրեն վարկաբեկել է ո՛չ միայն քաղաքականապես։ Այն այժմ ապրում է ամենախոր հոգևոր ու բարոյական ճգնաժամ։ «Ժամանակակից կապիտալիզմը,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— թշնամի է ողջ մարդկության կենսական շահերին, նրա առաջադիմական ձգտումներին։ Կապիտալիզմը մարդու շահագործմամբ, շովինիստական և ռասայական գաղափարախոսությամբ, իրեն հատուկ բարոյական անկմամբ,

սպեկուլյացիայի, կաշառակերության, հանցագործությունների մոլեգնումով քայքայում է հասարակությունը, ընտանիքը, մարդուն» (էջ 48—49)։ Ժամանակակից կապիտալիզմի հոգևոր ու բարոյական ճգնաժամն արտահայտվում է ինչպես գաղափարախոսության բնագավառում, այնպես էլ մարդկանց մասսայական գիտակցության, նրանց հասարակական հոգեբանության ոլորտում։

Բուրժուական գաղափարախոսության հոգևոր ճգնաժամի առավել ակնբախ դրսևորումներից է այն, որ այժմ շատ քիչ բուրժուական գաղափարախոսներ են համարձակվում բացահայտորեն պաշտպանելու կապիտալիզմը։ Այստեղից էլ կապիտալիզմի ջատագովությունն ընդունում է նուրբ, քողարկված ձևեր։ Ընդ որում, բուրժուական գաղափարախոսներից ոմանք ջանում են ապացուցել, թե ներկայումս կապիտալիզմն այնքան է փոխվել, որ դադարել է կապիտալիզմ լինելուց, թե այժմ հասարակությունը կառավարում են ոչ թե արտադրության միջոցների տերերը, այլ կառավարիչները, մենեջերները, տեխնիկական մասնագետները, գիտնականները։ Ոմանք էլ հայտարարում են, որ ժամանակակից պետությունն արդեն չի կարելի բուրժուական անվանել, քանի որ այն իբր արտահայտում է բնակչության ամենատարբեր խավերի, այդ թվում և բանվոր դասակարգի շահերը։ Երրորդները հավատացնում են, թե տեղի է ունենում «կոնվերգենցիա», այսինքն՝ կապիտալիզմի և սոցիալիզմի մերձեցում, որ այդ մերձեցման ընթացքում կապիտալիզմն աստիճանաբար «ազնվանում է» և որդեգրում սոցիալիզմի որոշ նվաճումներ, օրինակ, պլանավորումը։ Այդ բոլոր կոնցեպցիաների իմաստը, սակայն, մեկն է՝ սքողել ժամանակակից կապիտալիզմի իրական հակասությունները, այն ներկայացնել «մաքրազարդված», բարելավված ձևով։

Մասսայական գիտակցության ոլորտում բուրժուական ավանդական արժույթներն արժեքազրկվել են, դրանք չեն ներազդում, դրանցով չեն ղեկավարվում պրակտիկ գործունեության մեջ։ Այդ հողի վրա լայնորեն տարածվում են բացահայտ բարոյազրկությունը, հանցագործությունը, կաշառակերությունը, բռնությունը՝ կապիտալիզմի քայքայման ու անկման այլանդակ պտուղները։

Բուրժուական գիտակցության ոլորտի ճգնաժամն ընդգրկում է ո՛չ միայն նրա հին, ավանդական տարրերի ժխտումը, այլև նոր տարրերի ձևավորումը, հասարակության առաջավոր մասի կողմից գիտական աշխարհայացքի, պրոլետարական բարոյականության և սոցիալիստական իդեալների յուրացումը։ Ստեղծված իրավիճակում հարկավոր է քննել նաև կրոնի ժամանակակից ճգնաժամը, որն արդի կապիտալիզմի հոգևոր ճգնաժամի արտահայտություններից է։

Հայտնի է, որ կրոնի ճգնաժամեր եղել են նաև անցյալում։ Դրանք միշտ երևան են եկել որպես հասարակական որոշակի փոփոխությունների յուրատեսակ արտացոլում։ Այսպես, անտիկ ստրկատիրական կարգերի ճգնաժամը ծնեց նաև բազմաստվածային կրոնների ճգնաժամ, որոնք տարածված էին Միջերկրականի ծովափնյա ժողովուրդների շրջանում։ Դրանց փոխարինելու եկավ քրիստոնեությունը։ Ֆեոդալիզմի ճգնաժամը Արևմտյան Եվրոպայում և կապիտալիզմի առաջացումն այնտեղ իրենց արտացոլումը գտան ռեֆորմացիայի մեջ, որը լուրջ հարված հասցրեց կաթոլիկությանը։

Անցյալի կրոնական ճգնաժամերն ունեին ընդհանուր առանձնահատկություն, որով տարբերվում են արդի դարաշրջանի կրոնի ճգնաժամերից։ Այդ առանձնահատկությունն այն է, որ անցյալում խոսք էր լինում մի կրոնը մեկ ուրիշով փոխարինելու մասին։ «Հեթանոսական» բազմաստվածային կրոններին փոխարինեց քրիստոնեությունը, կաթոլիկությանը՝ բողոքականությունը։ Անցյալի բոլոր սոցիալական փոփոխություններն ու հեղաշրջումները նշանակում էին ոչ թե կրոնի սոցիալական արմատների (այսինքն՝ հասարակության մեջ այն անհրաժեշտաբար ծնող ու վերարտադրող պատճառների) վերացում, այլ լոկ դրանց ձևափոխում։

Կրոնի գլխավոր սոցիալական արմատները գիտականորեն բացահայտել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը։ Կ. Մարքսը գրել է, որ կրոններն արտացոլում են մարդկանց սահմանափակ հարաբերությունները բնության և միմյանց նկատ-



մամբ (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 23, стр. 89)։ Ֆ. Էնգելսը կրոնը բնութագրում էր որպես այն արտաքին ուժերի ֆանտաստիկական արտացոլում, որոնք իշխում են մարդկանց վրա նրանց ամենօրյա կյանքում (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 20, стр. 328)։ Դա նշանակում է, որ կրոնն անհրաժեշտաբար ծնվում է ամեն մի նախակոմունիստական հասարակական ֆորմացիայում, քանի որ մարդիկ այդ ֆորմացիաներում գտնվում են հասարակական զարգացման կույր, տարերային օրենքների ազդեցության ներքո, որոնց էությունը նրանք չեն հասկանում և ի վիճակի չեն կառավարել դրանք։ Աշխատավոր դասակարգերի համար հասարակական տարերային ուժերի ճնշումը լրացվում և սաստկանում է նաև դասակարգային ճնշումով, նրանց տնտեսական, քաղաքական ու հոգևոր ստրկացմամբ։ Մարդկանց վրա իշխող ռեալ սոցիալական ուժերը նրանց գիտակցության մեջ հանդես են գալիս աղավաղված ձևով, որպես ոչ երկրային, գերբնական ուժեր, դառնում են անձնավորված երևակայական էակներ՝ ոգիներ, աստվածներ և այլն։ Հենց դա էլ պայմանավորում է կրոնական հավատալիքների տևական վերարտադրությունը մասսաների շրջանում՝ մինչկոմունիստական ֆորմացիաներում։ Ընդ որում, կրոնական գիտակցությունն անփոփոխ չէր մնում. պատմական զարգացման ընթացքում մարում էր հավատը որոշ աստվածների նկատմամբ, դրա փոխարեն հավատում էին այլ աստվածների։ Այդ փոփոխությունները, ինչպես արդեն ասվեց, արտացոլում էին հասարակական կեցության, սոցիալական հարաբերություններում կատարված որոշակի տեղաշարժերը։ Սակայն, որքանով հասարակական կեցության բնագավառում կատարված փոփոխությունները չէին վերացնում կրոնի սոցիալական հիմքերը, այդքանով կրոնական գիտակցության մեջ կատարված փոփոխությունները նշանակում էին դրա ձևերի ու դրսևորումների փոխարինում միայն, հարցականի տակ չէր դրվում կրոնի բուն գոյությունը։

Արդի դարաշրջանում կրոնի ճգնաժամն այդ առումով սկզբունքորեն տարբերվում է անցյալի բոլոր կրոնական ճգնաժամերից։ Այն դուրս է գալիս այս կամ այն կրոնի, եկեղեցու, աստվածաբանական սիստեմի ճգնաժամի շրջանակներից։ Այն հանդիսանում է ամեն մի կրոնի՝ որպես հասարակական գիտակցության հատուկ ձևի, խոր ճգնաժամ։

Ինչպես հայտնի է, արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը պայմանավորող վճռական գործոն հանդիսացան սոցիալիստական սիստեմի կազմավորումն ու զարգացումը։ Եվրոպայի, Ասիայի և Ամերիկայի մի շարք երկրներում հեղափոխությունների հաղթանակը, համաշխարհային սոցիալիստական սիստեմի ձևավորումը արագացրին պատմական առաջընթացը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմն այժմ վճռական ուժ է հակաիմպերիալիստական պայքարում, նրա գոյությունն ու զարգացումը խորացնում և սրում է համաշխարհային կապիտալիզմի ճգնաժամը, խթանում աշխատավորների հեղափոխական պայքարը, գաղութային ճնշումից ազատագրված ժողովուրդներին ցույց տալիս ռեալ հեռանկարներ։

Մի ժամանակ անցյալի ազատամիտ մարդիկ վիճում էին այն մասին, թե հնարավո՞ր է արդյոք հասարակություն առանց աստծո հավատի, առանց կրոնի։ Այժմ արդեն ինքը՝ սոցիալիզմի պատմությունը և, ամենից առաջ, ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման պատմությունը, համոզիչ կերպով պատասխանել է այդ հարցին։ ՍՍՀՄ-ում, որտեղ կառուցվել է զարգացած սոցիալիստական հասարակարգ, տիրապետում է գիտական մատերիալիստական աշխարհայացքը, որի անհրաժեշտ տարրերից է աթեիզմը։ Աթեիստական համոզմունքներն ամուր կերպով արմատավորվել են միլիոնավոր սովետական մարդկանց մեջ։ Այդ բանը չի կարող որոշակի ներգործություն չունենալ կապիտալիստական երկրների աշխատավորների գիտակցության վրա, որոնց համար սոցիալիզմը հանդես է գալիս որպես մոտալուտ ու ցանկալի հասարակական հեռանկար։

Այնուհետև, հարկավոր է հաշվի առնել, որ ժամանակակից կապիտալիզմի

ներքին հակասությունների սրումն անխուսափելիորեն խարխլում ու քայքայում է ավանդական կրոնական հավատալիքների և պաշտամունքային վարքագծի սիստեմը։ Որքան ավելի շատ են աշխատավորները ներգրավվում դասակարգային պայքարի մեջ, որքան ավելի բարձր է նրանց սոցիալական ակտիվությունը, այնքան նրանք ավելի քիչ են ապավինում երկնային «փրկությանը», և այնքան ավելի շատ են հույսները դնում իրենց սեփական ուժերի վրա։

Այդ կապակցությամբ հետաքրքրական են այն տվյալները, որ հավաքել են ամերիկացի մի քանի սոցիոլոգներ։ Այսպես, Հարրի Թ. Մարքսը 60-ական թվականների վերջին ուսումնասիրել է, թե ամերիկացիների ավանդական կրոնականությունն ինչպես է հարաբերակցվում քաղաքացիական իրավունքների համար նեգրերի մղած պայքարի նկատմամբ նրանց ունեցած վերաբերմունքին։ Պարզվել է, որ կրոնականության մակարդակի և քաղաքացիական իրավունքների համար նեգրերի մղած պայքարի նկատմամբ նրանց ունեցած դրական վերաբերմունքի միջև գոյություն ունի հակադարձ համեմատականություն. որքան ավելի բարձր է կրոնականությունը, այնքան ավելի քիչ են այն մարդիկ, ովքեր պաշտպանում են քաղաքացիական իրավունքների համար ծավալված շարժումը։ Այսպես, օրինակ, հարցված այն մարդկանցից, ովքեր կրոնը համարում են «շատ կարևոր», միայն 29 տոկոսն է դրականորեն վերաբերվել քաղաքացիական իրավունքների համար ծավալված շարժմանը, մինչդեռ այն մարդկանց շրջանում, որոնք գտնում են, որ կրոնը իրենց համար կարևոր չէ, այդ տոկոսը հասել է մինչև 62-ի։ Հարրի Մարքսի հավաքած սոցիոլոգիական տվյալները ցույց են տալիս նաև, որ սոցիալական ակտիվությունը խիստ նվազում է էքստատիկական (հմայքային) և էսխաթոլոգիական աղանդների* անդամների շրջանում, որոնք աչքի են ընկնում կրոնամոլությամբ։ Մի նեգր աղանդավորի ուղղված այն հարցին, թե հարկավո՞ր է արդյոք մասնակցել քաղաքացիական իրավունքների համար կազմակերպվող ցույցերին, նա պատասխանել է. «Պետք է ավելի շատ աղոթել և ոչ թե ցույցեր անել։ Միայն աստված, և ոչ թե մարդիկ կարող են օգնել մեզ»։ Համեմատենք այս մտքի հետ քաղաքացիական իրավունքների համար պայքարի հայտնի մարտիկ Մարտին Լյութեր Քինգի այն կարծիքը, ըստ որի քրիստոնեության գլխավոր խնդիրը ոչ թե մարդկանց հոգու փրկությունն է մահից հետո, այլ նրանց կյանքի բարելավումը երկրի վրա։ Մարտին Լյութեր Քինգը ասում էր. «Այն կրոնը, որն իր խնդիրն է համարում զբաղվել մարդկային հոգով և չի հետաքրքրվում այն հետնախորշերով, որոնցում իրենց գոյությունն են քարշ տալիս մարդիկ, նրանց խեղդող տնտեսական պայմաններով, նրանց խեղող սոցիալական պայմաններով, դա դատարկ կրոն է, որ մարքսիստներն արդարացիորեն անվանում են «ժողովրդի հաշիշ»։ Մարտին Լյութեր Քինգը փորձում էր քրիստոնեությանը սոցիալական երանգ տալ, հուսալով, որ այն ունակ կլինի ազնվացնել ու վերափոխել հասարակությունը։ Սակայն մեզ համար կարևոր է նրա այն խոստովանությունը, որ կրոնի «անդրաշխարհային» կողմնորոշումը, դրա կողմնորոշումը միայն դեպի անհատական հոգու փրկությունը կրոնը դարձնում է «ժողովրդի հաշիշ», որը թմրեցնում է մասսաների սոցիալական ակտիվությունը։ Կապիտալիստական երկրներում հենց այդպիսի հետևության են հանգում ավելի ու ավելի շատ աշխատավոր մասսաներ, և նրանց մի նշանակալի մասը կապերը լրիվ խզում է կրոնից, մտնելով սոցիալական կյանքի բարեփոխման համար պայքարող ակտիվ մարտիկների շարքերը։

Այսպիսով, դասակարգային և սոցիալական հակասությունների սրումը ժամանակակից կապիտալիստական երկրներում, այդ երկրների աշխատավորների աճող քաղաքական և սոցիալական ակտիվությունը, նրանց ներգրավումը գոյություն ունեցող հասարակության արմատական փոփոխման համար մղվող պայքարի մեջ կրոնի ժամանակակից ճգնաժամի կարևորագույն պատճառներն

* էսխաթոլոգիան կրոնական ուսմունք է «աշխարհի վերջի» կարծեցյալ անխուսափելիության մասին, որը քրիստոնեությունը կապում է Հիսուս Քրիստոսի «երկրորդ գալստյան» հետ։



են։ Պատահական չէ, որ սեկուլյարիզացիան* ամենից ավելի ծավալվել է Եվրոպայի կապիտալիստական այն երկրներում, որտեղ բանվոր դասակարգը առավել կազմակերպված է, որտեղ գոյություն ունեն մասսայական ու բավական ազդեցիկ կոմունիստական կուսակցություններ, որոնք պրոպագանդում են մարքսիստական գաղափարախոսությունը (Ֆրանսիա, Իտալիա)։

Ֆրանսիայում, օրինակ, 60-ական թվականների շատ հետազոտությունների տվյալներով, Փարիզի ու նրա արվարձանների կիրակնօրյա պատարագներին հաճախում է ողջ բնակչության 10—12 տոկոսը միայն։ Իսկ բանվորական շրջաններում այդ տոկոսն իջնում է մինչև 3—7։ Դրան մոտ է պատկերը նաև Պիրենեյան թերակղզու երկրներում։ Բարսելոնում կիրակնօրյա պատարագին կանոնավոր կերպով հաճախում է բնակչության 20 տոկոսը միայն, Լիսաբոնում՝ 17-ը։ Իսպանիայում, ինչպես և Ֆրանսիայում, ամենից ավելի քիչ հավատացյալ են բանվորները։ Այսպես, 60-ական թվականների տվյալներով, Աստուրիայի ստորգետնյա աշխատանքներում զբաղված լեռնագործների 1,9 տոկոսն է միայն հաճախում կիրակնօրյա պատարագներին, այն դեպքում, երբ համապատասխան տոկոսը ուսանողների շրջանում կազմում է 33,4, պաշտոնյաների շրջանում՝ 27,6, ազատ պրոֆեսիաների ներկայացուցիչների շրջանում՝ 21,7։

Իտալիայում 1967 թ. քաղաքային բնակչության 36 տոկոսն էր միայն եկեղեցի հաճախում կիրակի օրերին, այն դեպքում, երբ քաղաքացիների 16 տոկոսը «ձևական կաթոլիկներ» են, որոնք ընդհանրապես կապված չեն եկեղեցու հետ։ Շեշտակիորեն պակասել է կաթոլիկական սեմինարիաների ունկնդիրների թիվը։ 1969 թվականին Իտալիայում հոգևորականի աստիճան է ստացել 764 մարդ, իսկ 1973 թվականին՝ միայն 566։

Մեծ Բրիտանիայում վերջին կես դարում, դատելով սոցիոլոգիական տվյալներից, նույնպես տեղի է ունեցել կրոնականության նշանակալի անկում։ Անգլիական եկեղեցում հաղորդվողների թիվը 15 տարեկանից բարձր բնակիչների համար 1900 թվականի 9 տոկոսից 1970 թվականին իջել է մինչև 5 տոկոսի։ Մեծ Բրիտանիայի այսպես կոչված «ազատ» եկեղեցիներում նկատվում են համանման միտումներ։ Օրինակ, մեթոդական եկեղեցում հաղորդվողների թիվը 1901 թվականի 3,1 տոկոսից իջել է և 1966 թվականին հասել բնակչության մինչև 1,7 տոկոսի։ Թեև Մեծ Բրիտանիայում նկատվում էր աղանդների որոշ աճ («Յեհովայի վկաներ», մորմոններ և այլն), եկեղեցիների անդամների ընդհանուր թիվը պակասել է։ 1901 թվականին բոլոր բողոքական եկեղեցիների անդամները կազմում էին բնակչության 20,4 տոկոսը, 1966 թվականին այդ տոկոսը իջավ մինչև 12։ Անցած տասնամյակներում կրճատվել է նաև եկեղեցի հաճախողների թիվը։ 1900 թվականին ոչ տոնական կիրակիներին անգլիկան եկեղեցի էր հաճախում բնակչության 10 տոկոսը, 1965—70 թթ.՝ միայն 5 տոկոսը, «ազատ» եկեղեցիները՝ (համապատասխանաբար) 11 և 4 տոկոսը։

Նկատվում է կիրակնօրյա (կրոնական) դպրոցներ հաճախող երեխաների թվի զգալի կրճատում։ 1900 թվականին երեխաների 30 տոկոսն էր հաճախում անգլիկան կրոնական դպրոցներ, իսկ 1970 թվականին՝ ընդամենը 13 տոկոսը։

Աճում են անհավատությունն ու թերահավատությունը հավատի հարցերում։ Թեև Մեծ Բրիտանիայի բնակչության 64 տոկոսը 1974 թվականին հայտարարել էր, որ հավատում է աստծուն, այդ թվի կեսն է միայն ընդունում եկեղեցական ուսմունքն աստծու մասին՝ որպես անձնական էակի, արարչի ու «նախախնամության»։ Անդրշիրիմյան կյանքին հավատում է բրիտանական բնակչության 39 տոկոսը միայն, 18-ը՝ հավատում է սատանային, 20-ը՝ դժոխքի գոյությանը, 25-ը՝ բիբլիական հրաշքների ռեալությանը, 10-ը՝ աստվածաշնչի բառացի ճշմարտացիությանը։ 1974 թվականին անգլիացիների 10 տոկոսից

* Ժամանակակից սոցիոլոգիական գրականության մեջ սեկուլյարիզացիա են անվանում հասարակությանը, սոցիալական խմբերին ու առանձին անհատներին կրոնից ազատագրելու պրոցեսը։

պակաս մասն էր համոզված, որ կրոնի ազդեցությունն աճում է. այն դեպքում, երբ 70 տոկոսը համոզված է հակառակ բանում։

Խիստ պակասել է կրոնական և ավելացել քաղաքացիական ամուսնությունների թիվը։ 1859 թվականին անգլիկան եկեղեցում պսակվում էր Մեծ Բրիտանիայում ամուսնական կապ հաստատողների 81,2 տոկոսը։ Մյուս եկեղեցիներին բաժին էր ընկնում ամուսնությունների 12,3 տոկոսը, իսկ քաղաքացիական ամուսնություններին՝ ընդամենը 6,5 տոկոսը։ 1973 թվականին պատկերը խիստ փոխվել է. անգլիկան եկեղեցում պսակվել են ամուսնական կապ հաստատողների միայն 36,5, մյուս եկեղեցիներում՝ 17,9 տոկոսը, բայց դրա փոխարեն քաղաքացիական ամուսնությունների թիվը հասել է 46,6 տոկոսի։

Կրոնական կյանքի ավանդական ձևերը Եվրոպայի շատ երկրներում այնքան են վարկաբեկել իրենց, որ բնակչության մի զգալի մասը դադարում է դրանց մասնակցելուց։ Այսպես, օրինակ, Նիդեռլանդներում, պաշտոնական վիճակագրության տվյալներով, կրոնական կազմակերպություններում չգտնվող բնակչության տոկոսը 1909 թվականի 5 տոկոսից ավելացել և 1960 թվականին հասել է 18,4-ի։ Մի քանի սոցիոլոգների հաշվումներով, 1966 թվականին կրոնական կազմակերպություններում չգտնվող անձանց թիվն այդ երկրում կազմում էր բնակչության մոտ 33 տոկոսը։ Հարկ է, սակայն, նշել, որ բուրժուական երկրներում եկեղեցու հետ կապերը խզած մարդկանցից շատերն իրենց համարում են հավատացյալներ, թեպետ չեն հավատում կրոնական շատ դոգմաների։

Սեկուլյարիզացիան կապիտալիստական հասարակությունում միակ սոցիալական միտումը չէ։ Քանի որ ժամանակակից կապիտալիզմի պայմաններում պահպանվում են կրոնի գլխավոր սոցիալական արմատները (հասարակական օրենքների տարերային բնույթը, դասակարգային ճնշումը և մարդու շահագործումը), այդքանով կրոնը չի անհետանում, այլ շարունակ վերարտադրվում է՝ հաճախ ձևափոխված, կերպարանափոխված ձևերով։ Ծագում են կրոնական նոր շարժումներ, խմբեր և պաշտամունքներ, որոնք փորձում են գրավել այն ավանդական եկեղեցիների տեղը, որոնք զգալիորեն վարկաբեկել են իրենց։

Կրոնի ընդհանուր պատմական ճակատագիրն աշխարհում կանխորոշված է կապիտալիզմի ճակատագրով։ Կրոնը, Մարքսի արտահայտությամբ, լինելով ընդհանուր տեսություն, հանրագիտական կոմպենդիում (լակոնիզմ), բուրժուական աշխարհի բարոյական սանկցիան և հանդիսավոր լրացումը, ապագա չունի, որովհետև ապագա չունի նաև բուրժուական հասարակությունը։

---

### Կուսակցական շինարարության տեսություն և պրակտիկա

# ԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ ԶԱՐԳԱՑՆՈՒՄ ԵՆՔ ԿՈՄՊԼԵՔՍԱՅԻՆ ՄՈՏԵՑՈՒՄԸ

**Ն. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ**
Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի
պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ արդյունավետության ու որակի ըստ ամենայնի բարձրացման անհրաժեշտությունը, ինչպես հայտնի է, նոր ուժով շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի նոյեմբերյան պլենումում։ Մեր կարևորագույն պարտականությունն է՝ հաստատակամորեն առավելագույն արդյունք ապահովել անցկացվող միջոցառումներից։

Կյանքը, պրակտիկան սովորեցնում են, որ գաղափարախոսական աշխատանքի գործունեությունն անմիջականորեն պայմանավորված է կուսակցական ղեկավարման մակարդակով, այն բանով, թե ինչպիսի կատարելությամբ ենք տիրապետում դաստիարակության ամբողջ գործի նկատմամբ կոմպլեքսային մոտեցմանը։ Կուսակցական կազմակերպությունների գաղափարադաստիարակչական գործունեության արդյունավետության բարձրացման հետ կոմպլեքսային մոտեցման կապը խորապես հիմնավորվել է ՍՄԿԿ XXV համագումարում։ Կոմպլեքսային մոտեցման ակտիվ արմատավորման և կուսակցական կոմիտեների, գաղափարախոսական կադրերի կողմից դրան համառորեն տիրապետելու անհրաժեշտությունն ամբողջ ակներևությամբ ցույց է տրված կուսակցության Օրսկի քաղկոմի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմն ընդհանրացրեց Լենինականի կուսակցական կազմակերպության՝ դաստիարակչական խնդիրների կոմպլեքսային լուծման փորձը։ ՍՄԿԿ XXV համագումարի բարձր պահանջների դիրքերից սկզբունքային գնահատական տրվեց այն հարցին, թե կուսակցության մեր քաղկոմին ինչում է հաջողվել առաջընթաց քայլ կատարել և ինչի վրա դեռ պետք է համառ ու հաստատակամ աշխատել։

Եթե խոսելու լինենք դաստիարակության գործի էապես նոր դրվածքի մասին, ապա այն ամենից առաջ կապված է պլանավորումը բարելավելու, գործողությունների կոորդինացումն ուժեղացնելու և կոլեկտիվի դաստիարակչական դերը մեծացնելու հետ։

Կուսակցության քաղկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների համար հաստատուն պրակտիկա է դարձել ո՛չ միայն ընթացիկ, այլև հեռանկարային պլաններ կազմելը։ Վերջիններս շաղկապվում են արտադրական կոլեկտիվների սոցիալ-տնտեսական զարգացման պլանների հետ։ Այժմ տասնհինգ

ձեռնարկություն ունեն այդպիսի պլաններ։ Նման պլան է մշակվում նաև ամբողջ քաղաքի համար։

Հեռանկարային և ընթացիկ պլաններում լայնորեն արտացոլվում են գաղափարախոսական հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի, Կենտկոմի որոշումների, ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունների, այդ թվում և Բաքվում արտասանած նրա ճառի բովանդակած կուսակցական դրույթները։ Քաղաքում ստեղծված գաղափարախոսական իրավիճակի վերլուծությունը հնարավորություն է ընձեռում այդ դրույթներն արտացոլելու ավելի լավ, ավելի առարկայորեն։ Նման վերլուծություն կատարվում է կուսակցության քաղկոմին առընթեր ստեղծված ինֆորմացիոն կենտրոնի օգնությամբ, նրա ակտիվիստներն ամենատարբեր ճանապարհներով և աղբյուրներով (ժողովների արձանագրություններ, առաջարկություններ, աշխատավորների քննադատական դիտողություններ, նրանց հարցերը դասախոսներին, զեկուցողներին, ագիտատորներին, պատի թերթերի հրապարակումներ և այլն) ուսումնասիրում են հասարակական կարծիքի վիճակը։ Եռամսյակը մեկ անգամ մշակվում և ընդհանրացվում է ստացված ինֆորմացիան։ Վերջում որոշվում են այն պրոբլեմները, որոնք ներառվելու են ընթացիկ և հեռանկարային պլաններում, որպեսզի դրանք հետագայում ուսումնասիրվեն կամ քննարկվեն կուսակցության քաղկոմում, քաղսովետի գործկոմում և քաղաքի այլ հիմնարկություններում, ինչպես նաև աշխատանքային կոլեկտիվներում։

Գաղափարախոսական գործունեության պլանավորման անքակտելի տարրն է քաղաքական այնպիսի խոշոր կամպանիաների անցկացման համահավաք պլանների կազմումը, ինչպիսիք էին ՍՍՀՄ նոր Սահմանադրության առաջին տարեդարձի նախապատրաստությունը, ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների անցկացումը և այլն։ Մեզ մոտ այդպիսի պլան էր մշակվել նաև Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյակի կապակցությամբ, որ լայնորեն նշվեց 1978 թվականի հոկտեմբերին։

Տոնակատարությունն անցավ քաղաքական և աշխատանքային մեծ վերելքի պայմաններում։ Որպես ոգեշնչման վիթխարի ուժի փաստաթղթեր ընկալվեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ողջույնը և Հայկական ՍՍՀ-ն Լենինի շքանշանով պարգևատրելու մասին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը։ Պատմական նշանակալի տարեթվին նվիրված տոնակատարությունները համոզիչ կերպով ցույց տվեցին, որ Հայաստանի աշխատավորները պատրաստ են առաջիկայում ևս ակտիվորեն պայքարելու հանուն էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի հետագա վերելքի, անխոնջ կերպով ամրապնդելու Հայրենիքի հզորությունը, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունն ու միասնությունը։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունները ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստման և անցկացման շրջանում լայնորեն օգտագործեցին մասսայական-քաղաքական աշխատանքի իրենց արդարացրած ձևերն ու մեթոդները։ Մեր խնդիրներից մեկը մենք համարում ենք մասսաների, հատկապես երիտասարդության կոմունիստական դաստիարակության, նրանց սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, սովետական բոցավառ հայրենասիրության, կոմունիզմի իդեալներին նվիրվածության ոգով դաստիարակելու գործում ձեռք բերած դրական փորձի ամրապնդումը։

Դաստիարակչական պրոցեսի ղեկավարման արդյունավետությունը և դրա ներգործունությունը շատ բանով պայմանավորված են մեր պլանների կոմպլեքսային բնույթով։ Այդ իսկ պատճառով պլանները կազմվում են այնպես, որ դրանք մարդկանց նպատակամղեն համակողմանիորեն լուծելու այս կամ այն դաստիարակչական խնդիրը, օգնեն մեզ տեսադաշտում պահելու գաղափարադաստիարակչական աշխատանքի բոլոր կարևորագույն ուղղությունները, ակտիվորեն գործի դնելու բոլոր ուժերն ու միջոցները առաջադրված նպատակին հասնելու համար։

Պլանավորման պրակտիկան, անշուշտ, բարելավվում է։ Բայց այստեղ ամեն ինչ չէ, որ հեշտությամբ է ձեռք բերվում ու ստացվում։ Այսպես (դրա վրա և ուշադրություն հրավիրվեց հաշվետվությունների և ընտրությունների



ընթացքում), ոչ միշտ է հաջողվում ինչպես հարկն է միմյանց շաղկապել, համաձայնեցնել կուսկազմակերպությունների գաղափարադաստիարակչական աշխատանքի հեռանկարային և ընթացիկ պլանները, իսկ դրանք էլ՝ կոլեկտիվների սոցիալ-տնտեսական զարգացման պլանների հետ։ Թե՛ մեկ և թե մյուս պլաններում դեռևս անբավարար են մշակվում բարոյական դաստիարակության հարցերը։ Մենք, իհարկե, ընթացիկ և հեռանկարային պլանավորման պրակտիկայի հարցերում պետք է բարձրացնենք կադրերի ուսուցման մակարդակը, հասնենք այն բանին, որ պլաններն իրոք ծառայեն որպես դաստիարակչական խնդիրների կոմպլեքսային լուծման միջոց։

Կյանքը մեզ թելադրում է նաև ուղիներ որոնել՝ ավելի հստակորեն կոորդինացնելու բոլոր նրանց ջանքերը, ումից կախված է դաստիարակչական ներգործուն աշխատանքի դրվածքը։ Այս ամենով զբաղվում են կուսակցության քաղկոմը և նրա ղեկավարությամբ՝ քաղկոմի ապարատն ու ակտիվը։ Գաղափարախոսական կազմակերպությունների և հիմնարկությունների գործունեության կոորդինացման հարցում աճում է կուսակցության քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի դերը։ Բաժինը կանոնավոր կերպով համապատասխան ինֆորմացիա և հաշվետվություններ է ստանում հեռանկարային և ընթացիկ պլաններում նախատեսված առաջադրանքների, հանձնարարությունների կատարման վերաբերյալ։ Այդ նյութերն ընդհանրացվում են, և կուսակցության քաղկոմը, դրանց համաձայն, անհրաժեշտության դեպքում ձեռնարկում է որոշակի միջոցներ։

Դեռևս 1976 թվականին քաղկոմին առընթեր ստեղծվել էր կոորդինացիոն խորհուրդ, որը կոչված է գործնական օգնություն ցույց տալու կուսակցության քաղկոմին՝ ապահովելու հստակ փոխգործողությունը պետական ու հասարակական այն բոլոր կազմակերպությունների, որոնք քաղաքի մասշտաբով, նրա աշխատանքային կոլեկտիվներում, ըստ բնակության վայրի զբաղվում են աշխատավորների դաստիարակությամբ։ Խորհրդի կազմում ստեղծվել և գործում են երիտասարդության և անչափահասների (հիշեցնեմ, որ քաղաքի բնակիչների զգալի մասը մինչև 30 տարեկան է), ստեղծագործական ու գիտական ինտելիգենցիայի հետ, ըստ բնակության վայրի տարվող աշխատանքի սեկցիաներ, սոցիոլոգիական խումբ։ Կոորդինացիոն խորհրդի գործունեությունը, որն ամենօրյա ղեկավարություն է ստանում կուսակցության քաղկոմի կողմից, լրացնում են արտահաստիքային այլ ստորաբաժանումներ։ Քաղկոմին առընթեր գործում են նաև կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության մեթոդխորհուրդը, մրցության կազմակերպման, ցուցադրական ագիտացիայի, դաստիարակների խորհուրդներ, ինչպես նաև «գիտությունը՝ արտադրությանը» արտահաստիքային բաժինը։

Ի՞նչ է տալիս այս ամենը։ Կուսակցության քաղաքային կոմիտեի կոորդինացնող դերի բարձրացումը հնարավորություն է ընձեռում ավելի լայնորեն օգտագործելու ակտիվի ուժերը, բարդ պրոբլեմների լուծմանը մասնակից դարձնելու ավելի գիտակ, իրազեկ մարդկանց, բարձր որակով ու կոմպլեքսային ձևով ուսումնասիրելու դաստիարակչական աշխատանքի վիճակն ամբողջությամբ վերցրած և առանձին տեղամասերում, կոնկրետ կոլեկտիվներում կամ միկրոշրջաններում և ռեալ իրադրության ու կյանքի պահանջներին համապատասխան տեղաբաշխել կադրերը, նպատակամղել և միավորել նրանց ջանքերը։

Երիտասարդական սեկցիայի ստեղծմամբ և ակտիվ գործունեությամբ սկսեցին ավելի արդյունավետ լուծվել անչափահասների դաստիարակության հետ առնչվող հարցերը։ Ամրապնդվեց կոմերիտմիության քաղկոմի, քաղժողկրթբաժնի, աշխատանքային կոլեկտիվների, դպրոցի, ընտանիքի, նախադպրոցական հիմնարկությունների, վարչական մարմինների, ըստ բնակության վայրի հասարակայնության աշխատանքի փոխադարձ կապը։ Դա նկատելիորեն նպաստում է դաստիարակության արտադասարանային սիստեմի, նրա նյութական բազայի բարելավմանը։ Ավարտվում է պիոներների նոր պալատի շինարարությունը։ Վերջերս բացվեց երիտասարդության պալատը, որտեղ անցկացվում են թեմատիկ երեկոներ, հանդիպումներ կուսակցության և աշխա-

տանքի վետերանների հետ։ Բոլոր կուլտուրայի ակումբներում ու պալատներում աշխուժացել է անչափահասների հետ տարվող աշխատանքը։ Կուսակցության քաղկոմն իր պլենումներից մեկը նվիրեց մանկավարժական կադրերի ընտրության, դաստիարակությանը և տեղաբաշխմանը։ Քաղկոմի բյուրոյում, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնում կանոնավոր կերպով քննարկվում են աճող սերնդի աշխատանքային ու բարոյական դաստիարակության հարցերը։

Նույնը կարելի է ասել նաև ըստ բնակության վայրի տարվող աշխատանքի մասին, որի կարգավորման համար քաղկոմին էական օգնություն են ցույց տալիս կոորդինացիոն խորհուրդը և դրան կից ստեղծված հատուկ սեկցիան։ Վերջինիս ազդեցության գոտիները քաղաքի տասը միկրոշրջաններն են։ Յուրաքանչյուր միկրոշրջանի կցված է մի քանի կուսկազմակերպություն (որոնցից մեկը գլխավորող), ինչպես նաև տնային կառավարչություններ, դպրոցներ, կուլտլուսհիմնարկություններ, սպորտային և այլ կազմակերպություններ։ Բնակչության շրջանում միջոցառումների պլանավորմամբ և անցկացմամբ զբաղվում է միկրոշրջանի խորհուրդը։ Խորհրդի անդամները սովորում են մշտական գործող սեմինարներում։ Միկրոշրջանների ակտիվի տարբեր խմբերի համար կազմակերպվում են թեմատիկ հանդիպումներ, ժողովներ։ Ահա դրանցից մի քանիսի թեմաները. «Սովետական ապրելակերպը Հոկտեմբերի մեծագույն նվաճումն է», «Նորի, առաջավորի պրոպագանդիստները մեր միկրոշրջաններում», «Այնտեղ, ուր ապրում է կոմունիստը», «Ընտանիքը, միջավայրը, անչափահասը»։

Բնորոշ է, որ ակտիվիստները որոնում և գտնում են մասսայական և անհատական դաստիարակչական աշխատանքի հետաքրքրական ու ներգործուն ձևեր։ Մեծահասակների համար կարդացվում են դասախոսություններ, անցկացվում զրույցներ, իրավաբանական կոնսուլտացիաներ։ Այդ գործում լայնորեն ներգրավվում են կուսակցական ու սովետական ղեկավար կադրեր, գիտության ու կուլտուրայի գործիչներ, վարչական մարմինների աշխատողներ։ Ամեն տարի, շեֆ կազմակերպությունների օգնությամբ, դպրոցների բազայի վրա ստեղծվում են հանգստի քաղաքային ճամբարներ երեխաների և դեռահասների համար։ Վերջիններիս շրջանում մասսայականություն են վայելում «Զրույցներ պրոֆեսիաների մասին» լեկտորիումները, որտեղ դասախոսություններով հանդես են գալիս ամենատարբեր մասնագիտության ներկայացուցիչներ։ Միկրոշրջանների խորհուրդներն օգտագործում են նաև աշխատանքի այնպիսի ձևեր, ինչպիսիք են ակումբների, կինոթատրոնների, սրճարանների և ռեստորանների շեֆությունը։ Դա արվում է հանուն այն բանի, որ ավելի լավ իմանանք երիտասարդների հետաքրքրություններն ու ավելի ակտիվորեն ազդենք նրանց խելացի հոգևոր պահանջմունքների ձևավորման վրա։

Ըստ բնակության վայրի տարվող աշխատանքը գործունեության միակ ասպարեզը չէ, որտեղ լիովին հաստատվում են կոմպլեքսային մոտեցման և դրա հետ օրգանապես կապված ջանքերի հմուտ կոորդինացման անհրաժեշտությունն ու նպատակահարմարությունը։ Առանց մեկի և մյուսի դժվար է հաջողության հույս ունենալ։ Կարծում ենք, սակայն, որ կոմպլեքսայնության, կոորդինացման նշանակությունը չի փոքրանում, այլ ընդհակառակը, մեծանում է այն չափով, ինչ չափով որ մենք խորանում ենք այս կամ այն դաստիարակչական խնդրի էության մեջ, ավելի առարկայական, մասնագիտական մոտեցում ենք ցուցաբերում դրա նկատմամբ։ Միտքս բացատրեմ այսպիսի մի օրինակով։

Քաղկոմի պլանով նախատեսվում էր կոմպլեքսային ձևով ուսումնասիրել թեթև արդյունաբերության ձեռնարկություններում գաղափարական աշխատանքի արդյունավետությունը։ Ընդ որում, ոչ թե միայն պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի ուժերով, այլև արդյունաբերության և տրանսպորտի բաժնի աշխատողների հետ միասին։ Եվ լավ է, որ այդպես վարվեցինք, որովհետև դրանով կարողացանք ո՛չ միայն լիարժեք կերպով, համակողմանիորեն բացահայտել իրերի վիճակը, այլև հիմնավորել, առաջարկվող միջոցառումները։ Նույն եղանակով ուսումնասիրվեց կառավարման սոցիալ-հոգեբանական ասպեկտների ազդեցությունը մրցության գործունեության վրա։ Ստացված



նյութերը, եզրակացություններն այնքան նշանակալի էին, որ որոշվեց դրանց վերաբերյալ անցկացնել գիտապրակտիկ կոնֆերանս։

Մինչև վերջերս մեզ մոտ կարգավորված չէր պրոֆտեխուսումնարաններում երիտասարդ բանվորների պատրաստման գործը։ Շրջանավարտը հաճախ չէր կարողանում աշխատանք գտնել. պարզվում էր, որ նրա ստացած մասնագիտությունը հարկավոր չէ։ Կուսակցության քաղկոմի բյուրոյի հանձնարարությամբ այդ նույն բաժինները մանրազնին վերլուծեցին քաղաքի երիտասարդ բանվորական հերթափոխի պատրաստման և դաստիարակման վիճակը, սկսելով դպրոցից, պրոֆտեխուսումնարանից և վերջացնելով գործարանի, ֆաբրիկայի, շինարարության արտադրական կոլեկտիվով։ Դա հնարավորություն ընձեռեց անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել՝ վերացնելու եղած թերություններն ու վրիպումները, որոշակիորեն բարելավելու դպրոցներում պրոֆինալ կողմնորոշման դրվածքը, քաղաքի պրոֆտեխուսումնարանների համար մասնագիտությունների պլանավորումը և երիտասարդ մասնագետներին աշխատանքի տեղավորումը, բուն ձեռնարկությունների ակտիվ կյանքում նրանց ներգրավելու ամբողջ աշխատանքը։ Երիտասարդ բանվորական հերթափոխի աշխատանքային դաստիարակության հասունացման հարցերը քննարկվեցին քաղաքային գիտապրակտիկ կոնֆերանսում։

Ոչ պակաս կարևոր ու բարդ այնպիսի պրոբլեմի ուսումնասիրությունը, ինչպիսին է աշխատանքային կարգապահության ամրապնդումը կառույցներում և դրա ազդեցությունն աշխատանքի արդյունավետության ու որակի աճի վրա, մենք անցկացրինք շինարարության և քաղաքային տնտեսության բաժնի հետ միասին։ Եզրակացություններն ու հանձնարարականները քննարկեցինք կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինարում։ Ընդհանուր գործ գտնվեց նաև մեր ու վարչական և ֆինանսական մարմինների բաժինների համար։ Դա սովետական օրենսդրության պրոպագանդումն է, իրավական դաստիարակությունը և իրավախախտումների պրոֆիլակտիկան։

Պրակտիկան հաստատում է կուսակցական կոմիտեի ապարատի բաժինների փոխգործողության նպատակահարմարությունը։ Կուսակցության քաղկոմն ակտիվորեն զարգացնում և կիրառում է տնտեսական, կազմակերպական ու դաստիարակչական խնդիրների կոմպլեքսային լուծման մեթոդի լայն արմատավորման հետ կապված հարցերի ուսումնասիրման ու մշակման տարբեր ձևեր։ Այս մեծ գործում իր տեղն ունի նաև քաղկոմի վերը հիշատակված «Գիտությունը՝ արտադրությանը» արտահաստիքային բաժինը։

Ինչպես հայտնի է, արտադրությունը ո՛չ միայն կրթված աշխատողների կարիք է զգում, այլև ինքը նույնպես դաստիարակում է։ Եվ այնքան ավելի լավ է դաստիարակում, որքան ավելի սերտ է գիտության կապը արտադրության հետ, որքան ավելի արագ են ներդրվում գիտության նորագույն նվաճումները, որքան ավելի բարձր է արտադրության կազմակերպման ու կառավարման, արտադրության պրոցեսում աշխատանքի կուլտուրայի և մարդկանց հարաբերությունների մակարդակը։ Մասնակցելով այս բոլոր պրոբլեմների լուծմանը, «Գիտությունը՝ արտադրությանը» արտահաստիքային բաժնի ակտիվիստները դրանով իսկ օգնում են քաղկոմին՝ ավելի լրիվ հաշվի առնելու և գնահատելու ո՛չ միայն ագիտացիոն-պրոպագանդիստական, այլև սոցիալ-տնտեսական, կազմակերպական-տեխնիկական և այլ գործոնների ազդեցությունն անհատի դաստիարակության, կոլեկտիվի անդամների մեջ գործի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունք, աշխատանքային և հասարակական-քաղաքական մեծ ակտիվություն զարգացնելու վրա։

Իհարկե, քաղաքում, նրա աշխատանքային կոլեկտիվներում և ըստ բնակության վայրի տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի ղեկավարման մակարդակի բարձրացումը ձեռք է բերվում տեսական գիտելիքների և առաջավոր փորձի օգնությամբ։ Տեսությամբ ու պրակտիկայով զինվում են կուսակցական, սովետական ու կոմերիտական ղեկավար կադրերի, գաղափարախոսական աշխատողների տարբեր կատեգորիաներ և սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվիստներ՝ սկսած գաղափարախոսական հարցերի գծով քարտուղարի տեղակալից մինչև երիտասարդ բանվորի դաստիարակը։

Լուծվում է կուսակցական ապարատի հաստիքային կադրերին, ինչպես նաև սովետական, արհմիութենական և կոմերիտական բոլոր ընտրովի ազատված աշխատողներին քաղաքական բարձրագույն կրթություն տալու խնդիրը։ Շատ տնտեսավարներ ու մասնագետներ սովորում են մարքսիզմ-լենինիզմի համալսարանում։ Քաղկոմին կից գործում է կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոց, որի ունկնդիրները ձեռք են բերում տեսական գիտելիքներ ու պրակտիկ փորձ։ Կուսակցական ուսուցման սիստեմի բարձրագույն օղակում, որն իր տեսակարար կշռով այդ սիստեմում դարձել է տիրապետող, այս տարի խորապես ուսումնասիրվում է ընկեր Լ. Ի. Բրեժնևի «ՍՄԿԿ գաղափարախոսական աշխատանքի հրատապ հարցերը» աշխատությունը։ Գիրքը մեր կադրերին զինում է գաղափարախոսական աշխատանքին ներկայացվող ժամանակակից բարձր պահանջների իմացությամբ, սովորեցնում ստեղծագործաբար մոտենալ կոմունիստական դաստիարակության գործին։

Այժմ մեզ մոտ քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման, մասսայական պրոպագանդայի բոլոր ձևերում պարապում է շուրջ 33 հազար մարդ՝ կոմունիստներ ու անկուսակցականներ, բանվորներ, ծառայողներ, ղեկավարներ։ Սա լայն մասսաների հարաճուն հետաքրքրության վկայությունն է մարքս-լենինյան տեսության, ՍՄԿԿ քաղաքականության գիտական հիմունքների իմացության նկատմամբ։

Հատկանշական են նաև այս թվերը։ Ձեռնարկությունների և հիմնարկությունների ղեկավարների շուրջ 93 տոկոսը դարձել են պրոպագանդիստներ։ Ներկայումս քաղաքում աշխատողներից շատերը կատարում են այս կամ այն հասարակական հանձնարարությունը, այլ կերպ ասած՝ հասարակական ակտիվիստ են։ Այս տվյալները, հիրավի, նաև դաստիարակչական աշխատանքի գործունեության վկայությունն են և նրա հետագա կատարելագործման նախադրյալը։

Իսկ կատարելագործելու մենք դեռ շատ բան ունենք։ Վերցնենք, օրինակ, դասախոսական պրոպագանդան։ Տվյալները խոսում են այն մասին, որ կոլեկտիվներում աշխատողների ակտիվ մասի կեսն է մշտապես հաճախում դասախոսություններին և քաղինֆորմացիաներին։ Ստացվում է այնպես, որ մեր ոչ բոլոր դասախոսություններն ու զրույցներն են հետաքրքրական, գրավիչ։ Կան մարդիկ, որոնց նկատմամբ հարկավոր է այլ, զուտ անհատական մոտեցում ունենալ, իսկ դրանում մենք դեռ թույլ ենք։ Բավարար քանակությամբ չեն կարդացվում բարոյախոսական թեմաներով դասախոսություններ, ոչ միշտ է հաշվի առնվում լսարանի յուրահատկությունը։ Լուրջ բարելավման կարիք է զգում հենց դասախոսների, զեկուցողների, քաղինֆորմատորների իրազեկության դրվածքը։

Ինչպե՞ս արագացնել գաղափարական-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության արդյունավետությունը բարձրացնելու պրոցեսը։ Հարկ է, որ մենք ավելի ու ավելի հիմնավորապես խորհենք այս մասին։ Չէ՞ որ այդ է պահանջում բուն ժամանակը, ասենք, մեր հնարավորությունները ևս ընդլայնվում են։

Կադրերի տեսական ու պրոֆեսիոնալ ուսուցման մակարդակի բարձրացման հետ միասին կուսակցության քաղկոմը գործադրում է բոլոր ջանքերը, որպեսզի է՛լ ավելի լավ զինի նրանց գաղափարական-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության կազմակերպման առաջավոր փորձով։ Օգտագործվում են այդ փորձի տարածման տարբեր եղանակներ։

Լավագույն պրոպագանդիստների, քաղինֆորմատորների, ագիտատորների և դաստիարակների փորձը լուսաբանվում է կանոնավորապես հրատարակվող բուկլետներում։ Առանձին, մանավորապես հեռանկարային պլանների իրականացման և այլ հարցերի վերաբերյալ կուսկազմակերպությունները սիստեմատիկաբար հանձնարարականներ են ստանում պրոպագանդայի և ագիտացիայի բաժնից։ Քաղաքային «Բանվոր» թերթում միշտ նյութեր են տպագրվում «Օգնություն սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին» խորագրի տակ։ Պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի աշխատողները և կոորդինացիոն խորհրդի ակտիվիստները պարբերաբար լինում են աշխա-



տանքային կոլեկտիվներում, որտեղ կոնկրետ հարցերի վերաբերյալ կազմակերպվում է որակյալ օգնություն և տրվում են անհրաժեշտ կոնսուլտացիաներ։

Գաղափարադաստիարակչական աշխատանքի առաջավոր փորձը սիստեմավորվում և կենտրոնացվում է կուսակցության քաղկոմում։ Այն ցուցադրելու համար առանձնացված է հատուկ սենյակ։ Այստեղ ներկայացված է այն ամեն լավագույնը, ինչ կուտակել են երկրի տարբեր քաղաքների կուսկազմակերպությունները։ Ընդարձակ և ուսանելի նյութ է հավաքվել գաղափարախոսական աշխատանքի, նրա կարևորագույն ուղղությունների կոնկրետ պրոբլեմների վերաբերյալ։ Դրանց շուրջ կոնսուլտացիաներ են անցկացվում կուսկազմակերպությունների քարտուղարների և նրանց տեղակալների համար (ընդորում՝ հաճախ հենց տեղում)։ Այս ամենը չափազանց օգտավետ է ինչպես արդեն փորձառու, այնպես էլ, հատկապես, կուսակցական ղեկավար մարմինների նորընտիր ընկերների համար։

Օգտավետ է, քանզի շատ բան կարելի է քաղել պրակտիկ գործերի համար։ Ասենք, Մայիսյան ապստամբության անվան «Լենտեքստիլ» բամբակեղենի միավորման կուսկազմակերպության օրինակով իմանալ, թե ինչպես է ապահովվում գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության միասնությունը. «Լենշին» տրեստի օրինակով՝ կոլեկտիվի կյանքում սոցիալ-տնտեսական զարգացման պլանի դերի մասին. Ջկալովի անվան կարի միավորման օրինակով՝ կարգապահության ամրապնդման, ներդաշնակ ստեղծագործական աշխատանքի իրադրության ստեղծման վրա դաստիարակչական աշխատանքի ազդեցության. գուլպա-նասկեղենի միավորման օրինակով՝ կոմունիստական բարոյականության նորմերի հաստատման համար հասարակական կարծիքի օգտագործման. Լուկաշինի անվան մանածագործական ֆաբրիկայի օրինակով՝ ինտերնացիոնալ և բարոյական դաստիարակության հմուտ զուգորդման. Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի մասնաճյուղի օրինակով՝ ուսանողների տնտեսագիտական դաստիարակության դրվածքի մասին և այլն։

Հիշյալ կոլեկտիվներից յուրաքանչյուրի կենսագրության մեջ կան միայն իրեն հատուկ ինչ-որ բան, գաղափարադաստիարակչական աշխատանքի կազմակերպման ի՛ր ձեռքբերումը։ Լավագույնների փորձի ուսումնասիրումը խթանում է մյուս կուսկազմակերպություններին, նրանց հարստացնում թերությունները վերացնելու ուղիներ ու եղանակներ տեսնելու, բոլոր ուղղություններով դաստիարակչական գործունեության արդյունավետությունը բարձրացնելու կարողությամբ։

Օրինակ, «Լենտեքստիլ» միավորման կուսակցական, կոմերիտական և հասարակական այլ կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքի ուժեղ կողմն այն է, որ տոգորված է ինտերնացիոնալիզմի ոգով։ Եվ դա պատահական չէ։ Այդ ձեռնարկությունը, որ դարձել է ճյուղի առաջավորներից մեկը, ծնունդ է առել ժողովուրդների բարեկամությամբ, որի ավանդույթները շարունակում են զարգանալ և ամրապնդվել բազմահազարանոց և բազմազգ կոլեկտիվում։ Ձեռնարկության կառուցմանը, որ սկսվել էր դեռևս 1922 թվականին, օգնում էին Մոսկվայի, Իվանովոյի, Լենինգրադի, Սերպուխովի, Քութայիսի, Կիրովաբադի և այլ քաղաքների բանվորներ, շինարարներ ու մոնտաժողներ։ Ստեղծագործական ու դաստիարակչական վիթխարի ուժ է դարձել լենինականցիների մրցությունը Վիչուգայի Վ. Նոգինի անվան մանածագործական ֆաբրիկայի, Կիրովաբադի Ս. Օրջոնիկիձեի անվան տեքստիլ կոմբինատի, Քութայիսի մետաքսի արտադրական միավորման, Կլիմովսկի մեքենաշինական գործարանի և Խարկովի կարի ֆաբրիկայի կոլեկտիվների հետ։

«Լենտեքստիլ» միավորման կուսկոմիտեն, արտադրամասային կուսկազմակերպություններն անում են ամեն ինչ, որպեսզի կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ խորապես ըմբռնի իր ինտերնացիոնալ պարտքը։ Դրան ակտիվորեն նպաստում են կուսակցական պրոպագանդայի, մասսայական-քաղաքական և անհատական-դաստիարակչական աշխատանքի ձևերը։ Այստեղ մեծ դեր ունեն ինտերնացիոնալ բարեկամության ակումբը, «Բարեկամության ջահ» ժողովրդական համալսարանը։

Դաստիարակության գործի հաջողությունները միշտ ուղեկցում են աշխատանքում կոլեկտիվի համախմբման, նրա ներսում կազմակերպվածության, զսպվածության, թերությունների, բացասական երևույթների նկատմամբ անհանդուրժողական մթնոլորտ ստեղծելու ասպարեզում ձեռք բերված հաջողություններին։

Այսպես, Չկալովի անվան կարի միավորման ձեռնարկություններում կարողացել են տնտեսագիտական ուսուցումը վերածել արտադրանքի որակի բարձրացման զորեղ գործոնի. այժմ միավորման արտադրանքի 62 տեսակ արժանացել է պետական որականիշի։ Գուլյա-Նասկեղենի միավորման ձեռնարկություններում մի ամբողջ շարք միջոցառումների օգնությամբ ձգտում են ակտիվ ազդեցություն գործել անփույթ աշխատողների, խոտանարարների, լոդրերի, աշխատանքային կարգապահությունը խախտողների վրա։ Այստեղ հմտորեն են օգտագործում լուսանկարային ստենդները, ցուցափեղկերը, «կայծակները»։ Յուրաքանչյուր տասնօրյակը մեկ արտադրամասերում հանդես են գալիս ագիտատորները, որոնք պատմում են ամեն մի աշխատողի սոանձնած անձնական պարտավորությունների կատարման ընթացքի մասին։ Լուկաշինի անվան մանածագործական ֆաբրիկայի կուսկազմակերպությունը կարողացել է այնպես ուղղություն տալ տնտեսական ղեկավարների և հասարակական կազմակերպությունների ակտիվիստների դաստիարակչական գործունեությանը, որ ահա երկու տարի է կոլեկտիվում չկան հափշտակումների և հակահասարակական այլ երևույթների դեպքեր։

Ես խոսում եմ լավագույն օրինակների մասին։ Դժբախտաբար, դեռ ամենուրեք չէ, որ մեզ հաջողվել է հասնել գործերի նման դրվածքի։ Թերություններ և չլուծված հարցեր դեռ շատ կան։ Նշանակում է, մեզ մոտ ոչ բոլոր հնարավորություններն են օգտագործվում ինչպես հարկն է։

Մենք լի ենք վճռականությամբ՝ առաջիկայում էլ հետևողականորեն բարձրացնելու գաղափարադաստիարակչական աշխատանքի ղեկավարման մակարդակը, այն դարձնել է՛լ ավելի ներգործուն։ Եվ մեր ամբողջ աշխատանքում հաջողության կարևորագույն երաշխիքներից մեկը միշտ եղել և մնում է ընդհանուր գործի նկատմամբ ակտիվ հոգատարությունը, իր և ուրիշների հանդեպ բարձր պահանջկոտությունը։

«Партийная жизнь», № 5, 1979 г.



# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՊԱՏԱԿԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԱՌԹԻՎ*

**Մ. Խ. ՔՈԹԱՆՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման հարցերը լուծելիս խնդիր դրեց՝ «Պլանավորման գործում ավելի լայնորեն օգտագործել ծրագրանպատակային մեթոդը, մշակել կոմպլեքսային ծրագրեր, գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական առավել կարևոր պրոբլեմների վերաբերյալ։ Բարելավել տնտեսական և սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանավորումը ձեռնարկություններում, միավորումներում, շրջաններում և քաղաքներում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 254)։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ և հատկապես տասներորդ հնգամյակներում գործնական լուրջ քայլեր արվեցին կոմպլեքսային ծրագրերի մշակման ասպարեզում։ Բավական է ասել, որ այս հնգամյակի առաջադրանքում ընդգրկված է 200 կոմպլեքսային գիտատեխնիկական ծրագիր։ Այդ ծրագրերի մշակման և իրականացման միջոցով լուծվում են ինչպես միութենական, այնպես էլ ռեգիոնալ նշանակության գիտատեխնիկական, տնտեսական ու սոցիալական պրոբլեմներ։

Պլանավորման պրակտիկայում նման ծրագրերի մշակումը հնարավորություն է ընձեռում ժողովրդատնտեսական կարևորագույն խնդիրների իրականացման համար մոբիլիզացնել երկրի նյութական, աշխատանքային, ֆինանսական ռեսուրսները, ծրագրի իրագործման հետ առնչվող բոլոր օղակներին պլանավորելու հնգամյակի համապատասխան առաջադրանքները, որոնց սահմանված ժամկետներում կատարելը պետական օրենքի ուժ է ստանում։ Կոմպլեքս նպատակային ծրագրերի միջոցով գիտատեխնիկական, տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրների լուծումը թելադրվում է ժողովրդական տնտեսության կառավարման բազմօղակ սիստեմով, ճյուղային պլանավորման և տնտհաշվարկային հարաբերությունների առանձնահատկությամբ։

Գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական զարգացման նման ծրագրերի առավելությունը, ավանդական ճյուղային պլանավորման համեմատ, խնդրի լուծման նկատմամբ համակողմանի մոտեցումն է, գերատեսչական արգելքների հաղթահարումը ռեգիոնի, քաղաքի համապատասխան ինֆրակառուցվածքի ստեղծման բնագավառում։ Այդպիսի ծրագրերը հնարավորություն են ընձեռում կառավարման տարբեր աստիճաններում լուծելու համամիութենական, ռեգիոնալ, ճյուղային և այլ խնդիրներ, յուրաքանչյուր առանձին դեպքում մոբիլիզացնելով երկրի (հաճախ երկրների) տնտեսական, գի-

* Տպագրվում է հարցադրման կարգով։ Խմբ.։

տաՀեստավորական ու այլ կազմակերպությունների նյութական, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսները։

Պլանավորման գործում ծրագրանպատակային մեթոդի օգտագործման փորձը, կոմպլեքսային ծրագրերի մշակումը լիովին արդարացրել են իրենց։ Տասնմեկերորդ հնգամյակից սկսած՝ գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական առավել կարևոր պրոբլեմների վերաբերյալ կոմպլեքսային ծրագրերի մշակումն ու իրականացումն անհամեմատ մեծ տեղ կգրավեն պլանային առաջադրանքների սիստեմում։ Հաջորդ հնգամյակներում պլանային առաջադրանքները, հավանաբար, իրենցից կներկայացնեն գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական պրոբլեմների կոմպլեքս ծրագրերի սիստեմ։

Միութենական նշանակության նպատակային ծրագրերի հետ մեկտեղ անհրաժեշտ է նման ծրագրեր մշակել նաև հանրապետությունների, տնտեսական շրջանների, քաղաքների, արտադրամիավորումների, գործարանների մասշտաբով, որոնց նպատակն է բարձրացնել հասարակական արտադրության արդյունավետությունը։

Հանրապետության ռեգիոնալ նշանակության նպատակային ծրագրերի մշակման համար ելակետ պետք է ընդունել առկա բնակլիմայական, դեմոգրաֆիական և սոցիալ-տնտեսական զարգացման առանձնահատկությունները։ Ելնելով դրանցից, ներկայումս մեր հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման ամենահրատապ պրոբլեմներից մեկը հեռանկարում խոշոր քաղաքներում և հարթավայրերում բնակչության կենտրոնացման պրոցեսի կանխումն է ու հանրապետության տարածքի քիչ թե շատ համաչափ բնակեցման ապահովումը։ Այդ խնդրի լուծումը պահանջում է իրականացնել կոմպլեքս միջոցառումներ, որոնց հիմնավորմանը կանդրադառնանք հանգամանորեն։

Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ հանրապետության տարածքի միջին բարձրությունը ծովի մակերևույթից ավելի քան 1800 մետր է։ Հանրապետության տարածքի ավելի քան 70 տոկոսը և բնակավայրերի 52,5 տոկոսը գտնվում են ծովի մակերևույթից 1500 և ավելի մետր բարձրության վրա։ Չնայած դրան, Հայկական ՍՍՀ-ն Միության ամենախիտ բնակեցված հանրապետություններից է և այդ ցուցանիշով զիջում է միայն Մոլդավական ՍՍՀ-ին։ 1977 թվականի հունվարի 1-ի տվյալներով, Հայկական ՍՍՀ-ում մեկ ք կմ-ի վրա բնակվում էր ավելի քան 99 մարդ, իսկ առանց Սևանի մակերեսի՝ ավելի քան 103,6 մարդ*։

Մեր հանրապետության բնակչության աճի տեմպերը զգալիորեն գերազանցում են ինչպես Միության, այնպես էլ առանձին վերցրած մի շարք հանրապետությունների բնակչության աճի տեմպերը։ Այսպես, 1970—1977 թթ. Հայկական ՍՍՀ բնակչությունն ավելացել է 18,4 տոկոսով, այն դեպքում, երբ ՍՍՀՄ բնակչության աճը, այդ նույն ժամանակահատվածում, կազմել է 7,7 տոկոս, Մոլդավիայինը՝ 9,6, Ադրբեջանինը՝ 14,6 և Վրաստանինը՝ 7,3 տոկոս։

Նշված ժամանակամիջոցում բնակչության բացարձակ աճը մեր հանրապետությունում զգալիորեն գերազանցել ինչպես Մոլդավական, այնպես էլ Վրացական ՍՍՀ-ների բնակչության բացարձակ աճը։ 1970—1977 թթ. Հայկական ՍՍՀ բնակչությունն ավելացավ 458 հազար մարդով, Վրացական ՍՍՀ-ինը և Մոլդավական ՍՍՀ-ինը՝ մոտ 345 հազար մարդով, այն դեպքում, երբ Վրացական ՍՍՀ բնակչությունը 1970 թ. 2,2 մլն մարդով, իսկ Մոլդավական ՍՍՀ-ինը, ավելի քան մեկ մլն մարդով ավելի էին, քան մեր հանրապետությանը**։ Վերջին 25 տարում հանրապետության տարածքում բնակչության խտությունը ավելի քան կրկնապատկվել է։

Բնակչության աճի ներկա տեմպերը վկայում են, որ 1990 թ. բնակչության խտությամբ Հայկական ՍՍՀ-ն Միության մեջ կգրավի առաջին տեղը։ Հաշվարկված է, որ հանրապետության բնակչությունն այդ նույն թվականին հասնելու է ավելի քան 3,9 մլն մարդու կամ մեկ ք. կմ-ի վրա՝ 140 մարդ։ 2000 թ. այդ ցուցանիշները համապատասխանաբար կկազմեն 4,6 մլն և ավելի քան 160 մարդ մեկ ք. կմ-ի վրա։

* ՀՍՍՀ տարածությունը առանց Սևանի մակերեսի կազմում է 28.474 ք. կմ։

** Հաշվարկներն արված են «Народное хозяйство СССР в 1977 г.,» վիճակագրական տարեգրքի 10-րդ էջի նյութերի հիման վրա։ Համեմատությունը կատարվում է այդ երկու հանրապետությունների հետ, որովհետև բնակչության խտությամբ Հայկական ՍՍՀ-ն Միության մեջ զիջում է միայն Մոլդավական ՍՍՀ-ին, իսկ մեկ շնչին ընկնող վարելահողերով Հայկական ՍՍՀ-ը նախավերջին տեղում է։ Վերջին տեղում Վրացական ՍՍՀ-ն է։



Բնակչության միջին խտության պայմաններում, հանրապետության տարածքում ռելիեֆի, բնակլիմայական պայմանների և արտադրաուժերի ոչ համաչափ զարգացման հետևանքով անհամեմատ մեծ են բնակչության խտության տարբերությունները տարբեր շրջաններում և գոտիներում։

1977 թ. հունվարի 1-ի տվյալներով, բնակչության միջին խտությունը մեկ ք. կմ-ի վրա Ղուկասյանում, Ազիզբեկովում, Սիսիանում, Մեղրիում կազմել է 17—20 մարդ, Ապարանում, Թալինում, Արագածում՝ 32—35, այն դեպքում, երբ Աբովյանի շրջանում հասնում է 106 մարդու, Նաիրիում՝ 113, Հոկտեմբերյանում և Արտաշատում՝ մոտ 150, Էջմիածնում՝ 265, Մասիսում՝ 310 մարդու։

Արարատյան տնտեսական շրջանում (Աբովյանի, Աշտարակի, Նաիրիի շրջանների և Երևան քաղաքի հետ միասին), այսինքն 5160 ք. կմ-ի վրա 1977 թ. հունվարի 1-ի դրությամբ ապրում էր 1.537 հազար մարդ (298 մարդ մեկ ք. կմ-ի վրա), իսկ հանրապետության մնացած տարածքում՝ 1.339 հազար մարդ (54 մարդ մեկ ք. կմ-ի վրա)։

Հեռանկարում հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման հարցերը լուծելիս անհրաժեշտ է հաշվի առնել ևս մեկ առանձնահատկություն՝ մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական օգտագործման հողային տարածության խիստ սահմանափակությունը։ Հանրապետության տարածքի ավելի քան 50 տոկոսը մեծ թեքությունների և մեծ բարձրության վրա գտնվելու պատճառով գյուղատնտեսության օգտագործման համար պիտանի չէ։

Հայկական ՍՍՀ-ում մեկ շնչին ընկնող վարելահողերը 1977 թ. կազմել են 0,17 հեկտար, այն դեպքում, երբ ՍՍՀՄ միջինը 0,9 հեկտար էր։ Միութենական հանրապետությունների շարքում Հայաստանն այդ ցուցանիշով գրավում է նախավերջին տեղը։

Հեռանկարում, բնակչության աճի հետևանքով, հանրապետության այդ ցուցանիշներն է՛լ ավելի կնվազեն։ Վարելահողերի խիստ սահմանափակ լինելը էապես նվազեցնում է գյուղատնտեսության մեջ մեծ թվով աշխատուժ ընդգրկելու հնարավորությունը։ Բացի դրանից, գյուղատնտեսական արտադրապրոցեսների կոմպլեքս մեքենայացումը նույնպես կրճատում է այդ ճյուղում աշխատողների թիվը։

Հայկական ՍՍՀ սոցիալ-տնտեսական զարգացման հարցերը քննելիս հարկ է նշել ևս մեկ առանձնահատկություն՝ բնակչության խիստ կենտրոնացումը խոշոր քաղաքներում։ Երևանում, Լենինականում և Կիրովականում կենտրոնացված է հանրապետության բնակչության ավելի քան 45 տոկոսը և արդյունաբերական արտադրական կարողությունների ավելի քան 70 տոկոսը։ Բնակչության ամբողջ աճը (բնական և մեխանիկական) բացարձակ գերակշռությամբ տեղի է ունենում քաղաքային բնակչության ավելացման հաշվին։ Այսպես, 1970—1977 թթ. հանրապետության բնակչությունն աճել է 458 հազար մարդով, որից քաղաքային բնակչությունը՝ 427 հազարով։

Նշված ժամանակամիջոցում հանրապետության երեք քաղաքների (Երևան, Լենինական, Կիրովական) բնակչության աճը կազմել է քաղաքային բնակչության աճի 64 տոկոսը և հանրապետության բնակչության աճի ավելի քան 60 տոկոսը։ Միայն Երևան քաղաքին ընկնում է հանրապետության բնակչության աճի մոտ կեսը։

Հանրապետության բնակչությունը խոշոր քաղաքներում և ընդհանրապես քաղաքներում ու Արարատյան տնտեսական շրջանում կենտրոնացնելուց խուսափելու, լեռնային և նախալեռնային գյուղական բնակչությունն իրենց բնակավայրերում ամրացնելու, հանրապետության բոլոր շրջանները համաչափ զարգացնելու համար անհրաժեշտ է իրականացնել կոմպլեքս միջոցառումներ։ Դրանք են՝ տեղում բնակչության զբաղվածության պրոբլեմի լուծումը, գյուղական բնակչության սոցիալական և կուլտուր-տեխնիկական զարգացման

արտադրական բազա և այլն։ Բացի դրանից, աշխատանքն ավելի արդյունավետ դարձնելու համար ստեղծվում է համապատասխան ինֆրակառուցվածք, որը ստեղծագործողին հեռու է պահում խոշոր քաղաքներին բնորոշ հոգսերից։

Մեր հանրապետությունում խոշոր քաղաքներից դուրս գիտական, գիտատեխնիկական, գիտաուսումնաարտադրական համալիրների ստեղծումը, մտավոր, ստեղծագործական աշխատանքի արդյունավետության բարձրացման հետ մեկտեղ, կնպաստի շրջանների տնտեսական, գիտատեխնիկական կոմպլեքս զարգացման և սոցիալական մի շարք պրոբլեմների լուծմանը, որոնք ներկայումս անհետաձգելի խնդիր են դարձել։

Այսօր յուրաքանչյուր շրջան ունի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ իր բազմաթիվ կադրերը։ Այնպես որ, հանրապետության շատ շրջաններում կարելի է ստեղծել նրանց աշխատանքին և որակավորմանը համապատասխանող օղակ (գիտատեխնիկական, գիտաարտադրական միավորում)։ Բացի դրանից, մայրաքաղաքի նկատմամբ հանրապետության շրջանների մեծ մասի հեռավորությունն այնպիսին է, որ հնարավորություն է ընձեռում սկզբնական շրջանում լայն չափով կիրառելու նաև Երևանում արդեն հիմնավորված բարձրորակ գիտական կադրերի աշխատանքը։

Խնդրի արմատական լուծման համար պահանջվում է նաև մի շարք գիտահետազոտական ինստիտուտներ և բուհեր փոխադրել հանրապետության շրջանները։ Այսպես, ժամանակն է այգեգործության, պտղաբուծության և գինեգործության գիտահետազոտական ինստիտուտի ու գյուղատնտեսության ինստիտուտի համապատասխան ֆակուլտետների միավորման բազայի վրա ստեղծել գիտաուսումնաարտադրական խոշոր համալիր Մերձավանում, որն ուսումնաարտադրական գործունեության իրականացման համար ունի հիանալի փորձնական տնտեսություն։ Ոչխարաբուծության համար գիտաուսումնաարտադրական համալիր կարելի է հիմնել Սիսիանի շրջանում, կաթնամթերքների վերամշակման խոշոր գիտաուսումնաարտադրական համալիր՝ Կալինինոյում. դրա համար գիտափորձնական և ուսումնաարտադրական բազա կարող է հանդիսանալ գործող պանրագործարանը։ Նույնպիսի գիտաուսումնաարտադրական համալիրներ կարելի է կազմակերպել և տեղաբաշխել հանրապետության շրջաններում նաև գիտության ու տեխնիկայի մյուս բնագավառների գծով։

Հանրապետության շրջաններում գիտական, գիտաուսումնաարտադրական, գիտատեխնիկական, միջին մասնագիտական ուսումնական համալիրների տեղաբաշխումը կպահանջի համապատասխան ինֆրակառուցվածքի ստեղծում։

Այսպիսով, վերոհիշյալ միջոցառումները կնպաստեն հանրապետության շրջանների գիտատեխնիկական և կուլտուրական զարգացմանը, ինչպես նաև տեղում բնակչության զբաղվածության պրոբլեմի լուծմանը։

Հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման ծրագրի իրականացման մյուս հանգույցը. շրջանների և բնակավայրերի՝ ժամանակակից պահանջները բավարարող հաղորդակցության ուղիների զարգացումն է։ Հանրապետության արդյունաբերական որոշ հանգույցներում կկարևորվի երկաթուղային տրանսպորտը, բայց առաջադրված խնդրի լուծման գործում վճռական դերը պատկանելու է ավտոմոբիլային տրանսպորտին։ Ավտոմոբիլային ճանապարհաշինության հարցերին հատուկ ուշադրություն նվիրեց ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումը։ Եվ դա բնական է. գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքը, շրջանների կոմպլեքսային զարգացումը, գյուղական բնակչության կենսամակարդակի բարձրացումն ուղղակիորեն առնչվում են ավտոմոբիլային ճանապարհաշինության ծավալման հետ։ Պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց. «ՍՍՀՄ պետպլանը, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդները պետք է հոգ տանեն, որ ճանապարհային շինարարությունը համապատասխան տեղ գրավի տնտեսական և սոցիալական զարգացման պլաններում, ամրապնդվի ֆինանսական և նյութական անհրաժեշտ ռեսուրսներով» (ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին, «Հայաստան», էջ 52)։



Հանրապետության շրջանների կոմպլեքս զարգացման նպատակային ծրագրի հաջորդ հանգույցը գյուղական բնակչության կոմունալ-կենցաղային պայմանների արմատական բարելավումն է։

Ներկայումս սովետական քաղաքացին, իր ապրելավայրից անկախ (քաղաք, բանավան, գյուղ) միայն բնակարանով բավարարվել չի կարող։ Հասարակության անդամների կրթական-կուլտուրական մակարդակի բարձրացումը ենթադրում է նաև համապատասխան կենցաղային պայմանների առկայություն։ Հանրապետությունում բնակչության հոսքը խոշոր քաղաքներ պայմանավորված է նաև մի կողմից գյուղերի, բանավանների, միջին, փոքր քաղաքների, մյուս կողմից՝ խոշոր քաղաքների կոմունալ-կենցաղային պայմանների մեծ տարբերությամբ։ Եթե այսօր հեռուստացույցը ինչ-որ չափով լուծում է գյուղի կամ ավանի բնակչի կուլտուրական պահանջմունքների բավարարման հարցը, ապա կոմունալ-կենցաղային պայմանների նշանակալի տարբերությունները խոշոր քաղաքների և մյուս բնակավայրերի միջև դեռևս շատ մեծ են։

Մենք կառուցել ենք տուֆակերտ բանավաններ, քաղաքատիպ բնակարաններ՝ իրենց կոմունալ-կենցաղային հանգույցներով, բայց ամենուրեք չէ, որ լուծել ենք ջրի պրոբլեմը։ Նույնպիսի իրավիճակ է նաև շատ գյուղերում, որտեղ կառուցված են գեղեցիկ առանձնատներ՝ հաճախ կոմունալ-կենցաղային հարմարություններով, բայց որոնք ջրամատակարարման կարգավորված սիստեմի և կոյուղու ցանցի բացակայության պատճառով չեն ծառայում իրենց նպատակին։ Այդ ամենը, բնականաբար, հակասանիտարական վիճակ է ստեղծում։ Այսօրվա երիտասարդը, որն ունի բարձրագույն կամ միջնակարգ կրթություն, չի ցանկանում հաշտվել նման իրավիճակի հետ և, բնականաբար, գյուղերից ու բանավաններից, ինչպես նաև կոմունալ հարմարություններից զուրկ փոքր և միջին քաղաքներից գնում է խոշոր քաղաքները։

Այդ հոսքի դադարեցումը և հակառակ ուղղությամբ շարժման առաջացումը պահանջում է, զբաղվածության հարցի լրիվ կարգավորման հետ մեկտեղ, լուծել գյուղերի, բանավանների և քաղաքատիպ ավանների ջրամատակարարման, բնակարանները ջրով ապահովելու պրոբլեմը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ այսօր հարցը կարող է դրվել միայն այսպես՝ տնտեսությունների ղեկավարները, կուսակցական կոմիտեները, սովետական և արհմիութենական մարմինները գյուղի աշխատավորների բնակարանային ու կենցաղային կարիքների, նրանց աճած կուլտուրական պահանջմունքների բավարարման նկատմամբ պակաս հոգատարություն չպետք է ցուցաբերեն, քան արտադրության զարգացման նկատմամբ։

Եթե այսօր մենք անհրաժեշտ նյութական և ֆինանսական միջոցներ տրամադրենք կոմունալ-կենցաղային օբյեկտների շինարարությանը, ջրամատակարարման կարգավորված սիստեմների ստեղծմանը, կարճ ժամանակամիջոցում հնարավոր կլինի լուծել հանրապետության գյուղերի, բանավանների կենցաղի արմատական վերակառուցման պրոբլեմը։ ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումը, հաշվի առնելով այդ հանգամանքը, խնդիր դրեց կատարել երկրի ոչ-արտադրական շինարարության ընդհանուր միջոցների վերաբաշխում՝ հօգուտ գյուղի։

Հանրապետությունն անհրաժեշտ նախադրյալներ ունի առաջիկա երկու հնգամյակներում լուծելու բոլոր բնակավայրերի ջրամատակարարման, բնակչության կոմունալ-կենցաղային պայմանների, հաղորդակցության ճանապարհների արմատական բարելավման պրոբլեմը։ Մեր հանրապետության աղբյուրների ջրերը (50 խմ/վրկ) կարող են բավարարել բնակչության կոմունալ-կենցաղային պահանջմունքները։ Աղբյուրների ջրի ոչ նպատակային օգտագործումը, ինչպես նաև ջրամատակարարման չկարգավորված սիստեմների հետևանքով թույլ տրվող մեծ կորուստները մեր շատ քաղաքների, բանավանների և գյուղերի զրկում են խմելու ջրի անընդմեջ մատակարարման հնարավորությունից։

Այժմ հանրապետության բոլոր բնակավայրերը մատակարարվում են աղբյուրների ջրով։ Բայց գյուղական բնակավայրերը, որոնք բացարձակ գերակշռություն են կազմում (բնակավայրերի մոտ 80 տոկոսը), չունեն խմելու ջրի կուտակման ամբարներ, ջրամատակարարման կարգավորված սիստեմ, կոյուղու ցանց և օգտագործում են հոսող ջրի միայն $^1/_{20}$-ը։

Եթե մենք բոլոր գյուղերում ստեղծենք ջրակուտակման ամբարներ ու ջրամատակարարման կարգավորված սիստեմներ, ապա հանրապետության գյուղական ողջ բնակչության պահանջմունքները բավարարելու համար (1 մլն բնակիչ, մեկ շնչին օրական 500 լիտր ջրի հաշվով) անհրաժեշտ կլինի մոտ 7 խմ/վրկ ջուր։

Հայաստանն առատ է աղբյուրների ջրով, և այդ հանգամանքը, որոշ իմաստով, խանգարում է քաղաքների, բանավանների, գյուղերի ջրամատակարարման պրոբլեմի արմատական լուծմանը։ Բնակավայրերի ջրամատակարարման պրոբլեմի լուծման բոլոր նախագծերը կազմվում են այս կամ այն աղբյուրի ջրի տեղափոխման հաշվով։ Այդպես վարվելով՝ մենք «ստիպված ենք» Երևան տեղափոխել մոտակա շրջանների աղբյուրների ջրերը՝ հաճախ անտեսելով շըրջակա բնակավայրերը, անգամ շրջկենտրոնները։

Հասկանալի է, որ միայն աղբյուրների ջրով հանրապետության ջրամատակարարման պրոբլեմը լուծել հնարավոր չէ։ Պետք է նկատի ունենալ, որ աղբյուրների ջրի զգալի մասն օգտագործվում է ոռոգման նպատակներով։ Շատ տնտեսություններ, մանավանդ լեռնային գոտիներում, ոռոգման ուրիշ հնարավորություն չունեն։ Պետք է կտրականապես արգելել նման տնտեսությունների տարածքում գտնվող աղբյուրների ջրերը, թեկուզ և խմելու նպատակով. այլ բնակավայրեր տեղափոխելը՝ առանց նախապես տվյալ վայրում ոռոգման հարցը լուծելու։ Հանրապետության բնակավայրերի ջրամատակարարման գործը բարելավելու համար անհրաժեշտ է մտածել նաև գետերի ջրերի օգտագործման մասին։ Դրանք հիմնականում պետք է օգտագործել խոշոր և միջին քաղաքներին կենցաղային և տեխնիկական ջուր մատակարարելու նպատակով։

Այս ամենից հետևում է, որ հանրապետության բոլոր բնակավայրերի ջրամատակարարման պրոբլեմն արմատապես լուծելու համար անհրաժեշտ է, նախ, աղբյուրների ջրերի կորուստները հասցնել նվազագույնի՝ բոլոր բնակավայրերում ջրամատակարարման կարգավորված սիստեմներ ստեղծելու և ջրամբարներ կառուցելու միջոցով, երկրորդ, քաղաքներում ստեղծել խմելու ջրի և կենցաղային ու տեխնիկական ջրի մատակարարման առանձին սիստեմներ։ Այդ նպատակով տասնմեկերորդ հնգամյակից սկսած, պետք է նախատեսել գետերի ջրերի մաքրման և տեխնիկական ու կենցաղային նպատակներով դրանց օգտագործման սիստեմների կառուցում։

Հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման առաջարկվող ծրագիրը պահանջում է իրականացնել ժողովրդատնտեսական նշանակություն ունեցող մի շարք միջոցառումներ, որոնք կոչված են լուծելու ինչպես արդեն հասունացած հարցերը, այնպես էլ ապագայի խնդիրները։

Առաջարկվող խոշոր կոմպլեքս ծրագրի իրականացումը մեր հանրապետությունում, անշուշտ, ժամանակավորապես կիջեցնի կապիտալ ներդրումների արդյունավետությունը։ Կապիտալ ներդրումները բացարձակ գերակշռող մասով նպատակահարմար է ուղղել արդյունաբերական, գիտաուսումնաարտադրական, ագրոարդյունաբերական նոր համալիրների, ճանապարհաշինության և ջրամատակարարման սիստեմների ստեղծմանը։

Եթե կապիտալ ներդրումները Հայկական ՍՍՀ-ում ուղղենք հիմնականում գործող ձեռնարկությունների վերակառուցմանը և ընդլայնմանը, ապա դա կնշանակի մեծացնել հանրապետության երեք խոշոր քաղաքները, քանի որ արդյունաբերության մոտ $^3/_4$-ը տեղաբաշխված է այդ քաղաքներում։ Իսկ դա կհանգեցնի հանրապետության բնակչության է՛լ ավելի կենտրոնացմանը և սոցիալ-տնտեսական մի շարք խնդիրների լուծման բարդացմանը, որոնք իրենց հերթին կխոչընդոտեն հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը։



Պետք է նկատել, որ կուսակցությունը և կառավարությունը գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական առավել կարևոր պրոբլեմների լուծման կոմպլեքս ծրագրերն իրականացնելիս չեն բացառում կապիտալ ներդրումների ուղղության փոփոխման և արդյունավետության ժամանակավոր իջեցման հնարավորությունը։ Այսպես, միայն կապիտալ ներդրումների աշխարհագրության փոփոխումը, որ տեղի է ունենում ՍՍՀՄ արևելյան շրջանների տնտեսական յուրացման նպատակով, ժամանակավորապես նկատելի չափով իջեցնում է այդ ներդրումների արդյունավետությունը։ Սակայն սոցիալ-տնտեսական կոմպլեքսային զարգացման նման ծրագրերի արդյունավետության գնահատման համար չպետք է ելնել ուղղակի կապիտալ ներդրումների և արդյունքի չափակցման գործող մեթոդիկայից, որն արտահայտում է նեղ ճյուղային էֆեկտը, այլ պետք է հիմք ընդունել հասարակական ողջ ծախսումները՝ անկախ դրանց աղբյուրների (արդյունաբերական, ոչ-արդյունաբերական մինիստրությունների, քաղաքային, շրջանային, գյուղական սովետների և այլն)։

Այս ամենից հետևում է, որ սոցիալ-տնտեսական զարգացման նպատակային ծրագրերի իրականացման ասպարեզում ներդրումների արդյունավետությունը պետք է գնահատել ոչ թե նեղ ճյուղային, այլ հասարակական, սոցիալ-տնտեսական անհամեմատ ավելի լայն չափանիշներով։

# ՀԵՏԱԶՈՏՈՒՄ, ՆԵՐԴՐՈՒՄ, ՓՈԽՀԱՏՈՒՑՈՒՄ

**Վ. Գ. ՉԱԼԱԲՈՎ**
Տեխնիկական գիտությունների թեկնածու

ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԴԱՐՈՒՄ զարգանում է աննախադեպ տեմպերով։ Գիտատեխնիկական գիտելիքների երկու երրորդը և աշխարհում կուտակված գիտատեխնիկական ողջ ինֆորմացիայի ավելի քան 40 տոկոսն ստացվել են վերջին յոթանասուն տարում։ Այդ գիտելիքների օգտագործումը հանգեցրել է գիտատեխնիկական հեղափոխության՝ արագացրել է արտադրության կատարելագործումը, վերափոխել հասարակության արտադրաուժերը։

Սոցիալիստական պլանային տնտեսությունը գիտատեխնիկական հեղափոխությունը դարձնում է առաջընթացի հուժկու խթանիչ, որն զգալի ազդեցություն է թողնում արտադրության, աշխատավորի, ողջ հասարակության, նրա կյանքի բոլոր կողմերի վրա։ Ահա թե ինչու կուսակցությունը խնդիր է դնում գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն օրգանապես միացնել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելություններին։

Մեր ժամանակներում էականորեն փոխվում են աշխատավորի տեղը արտադրության սիստեմում, աշխատանքի բնույթը. աշխատանքն աստիճանաբար դառնում է առավել ստեղծագործական, ազատ ժամանակ թողնելով մարդու հոգևոր պահանջմունքների բավարարման, անհատի զարգացման համար։ Հօգուտ բոլորի և յուրաքանչյուրի— հենց այս հանգամանքն էլ շեշտեց Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված զեկուցման մեջ, «...միայն սոցիալիզմի պայմաններում է գիտատեխնիկական հեղաշրջումը ստանում ճիշտ, մարդու և հասարակության շահերին համապատասխանող ուղղություն։ Իր հերթին, միայն գիտության ու տեխնիկայի առավել արագ զարգացման հիման վրա կարող են լուծվել սոցիալական հեղափոխության վերջնական խնդիրները, կարող է կառուցվել կոմունիստական հասարակարգ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 70)։

Հիրավի, մեր առջև ծառացած են կոմունիզմի կառուցման վիթխարի խնդիրներ։ Դրանց լուծմանը մեր հայրենիքի բոլոր աշխատավորների հետ միասին ակտիվ մասնակցում են նաև սովետական գիտնականները, որոնց գործունեությունը լենինյան կուսակցության ու սովետական պետության մշտական հոգածության, ուշադրության առարկան է։ Վերջին 15 տարում գիտության նյութական ապահովման ծախսերը մեծացել են ավելի քան տասն անգամ, գիտնականների թիվը մեր երկրում կրկնապատկվում է յուրաքանչյուր 8—10 տարում։ ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը գիտությանն առաջադրում են մեծ, լուրջ պրոբլեմներ և, միաժամանակ, պայմաններ ստեղծում դրա զարգացման համար, ըստ ամենայնի խթանում գիտնականների ջանքերը նյութական ու հոգևոր բարիքների ստեղծման գործում։ Դրա ակնառու վկայությունն է մեր հանրապետությունը, ուր գործում են բազմաթիվ հիմնարկություններ, տարեցտարի աճում են գիտական հետազոտություններին հատկացվող պետական միջոցները։ Պլանավորված է տասներորդ հնգամյակում գիտության համար ծախսել (առանց կապիտալ ներդրումների) ավելի քան 200 մլն ռուբլի, 20 տոկոսով ավելի, քան հատկացված էր նախորդ՝ իններորդ հնգամյակում։



Նման աճը թելադրվում է նրանով, որ հանրային արտադրության զարգացման ոլորտում նկատելիորեն մեծանում է գիտության դերը, այն առավել չափով է դառնում անմիջական արտադրաուժ, արտադրության արդյունավետության բարձրացման առավել շոշափելի գործոն։ Գիտական աշխատողների տեսակարար կշռի մեծացումը, ակնկալվող փոխհատույցը առավել հրատապ են դարձնում այդ բնագավառի կադրերի պատրաստման գիտական կազմակերպումը։

Վերջին տարիների կուսակցական շատ փաստաթղթերում, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում շեշտված են գիտական հետազոտությունների արդյունքները ժողովրդատնտեսական պրակտիկայում առավելագույնս օգտագործելու կարևորությունը, գիտնականների հայտնագործությունները հնարավորին չափ կարճ ժամկետում սոցիալիստական էկոնոմիկայի զարգացմանն ի սպաս դնելու անհրաժեշտությունը։ Ներկայումս սովետական գիտության առջև ծառացած է լուրջ խնդիր՝ կապված գիտական հետազոտությունների արդյունքների իրացման հետ։ ՍՄԿԿ XXV համագումարում նշվեց, որ գիտական նոր գաղափարների գործնական ներդրումն այսօր պակաս կարևոր խնդիր չէ, քան դրանց մշակումը։ Այլ խոսքով, սովետական գիտության զարգացման բարձր տեմպերը սերտորեն փոխկապված են գիտության նվաճումների արագ ու արդյունավետ իրացման, դրանք արտադրության մեջ ներդնելու հետ։

Գիտատեխնիկական առաջընթացը, վերջին հաշվով, ձևոք է բերվում գաղափար—մշակում—ներդրում շղթայի եզրափակիչ փուլում։ Արդի պայմաններում այն նկատելիորեն անցնում է դեպի կիրառական մշակումների բնագավառը, մշակումներ, որոնք համապատասխանում են ժողովրդական տնտեսության շահերին, օգնում կոնկրետ գործնական խնդիրների լուծմանը։ Հաշվի առնելով այդ՝ ՍՄԿԿ-ն խնդիր դրեց առանձին մեքենաների ու տեխնոլոգիական պրոցեսների ստեղծումից ու ներդրումից անցնել արտադրության բոլոր պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումն ապահովող մեքենաների, սարքավորումների, սարքերի և տեխնոլոգիական պրոցեսների բարձրարդյունավետ սիստեմների մշակման, արտադրման ու մասսայական կիրառման։

Գիտատեխնիկական առաջընթացը տասներորդ հնգամյակում դարձել է սոցիալիստական էկոնոմիկայի բոլոր օղակներում աշխատանքի բարձր արդյունավետության ու որակի հասնելու միջոց։ Գիտնականները կոչված են ուսումնասիրելու և իրականացնելու այն մշակումները, որոնք սկզբունքորեն նոր ուղիներ են բացում երկրի արտադրաուժերի վերափոխման ու հետագա զարգացման համար, ստեղծելու ապագայի տեխնիկան ու տեխնոլոգիան։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմն արդյունաբերության աշխատողների, գիտնականների և կոնստրուկտորների առջև դնում է կոնկրետ խնդիր— կրճատել առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի մշակման ու ներդրման ժամկետները, վերակառուցել գործող ձեռնարկությունները, նախագծել ու գործարկել նոր կարողություններ, մոդեռնացնել հնացած սարքավորումը, ավտոմատացնել արտադրապրոցեսները, կատարելագործել աշխատանքի ու կառավարման կազմակերպումը։ Սակայն մինչև օրս չկա գիտական մշակումների գործնական իրականացումն ապահովող որոշակի կարգ։ Մինչդեռ տնտեսավարման սոցիալիստական սիստեմը, որը խարսխված է ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման վրա, հնարավորություն է ընձեռում ներդրման՝ սկզբունքորեն պիտանի կազմակերպական ձևերի մշակման։

Նպատակահարմար է սահմանել գիտահետազոտական ավարտված աշխատանքների արդյունքների, նոր մեքենաների, մեխանիզմների, նյութերի ներդրման խիստ կանոնարկված պլաններ։ Դա կնպաստի այն գիտական մշակումների օգտագործման գործակցի բարձրացմանը, որոնց զգալի մասն այսօր ըստ էության չի օգտագործվում։ Այդ դեպքում ձեռնարկություններն իրենց աշխատանքում նկատի կունենան նոր տեխնիկայի փորձարկումը, դրա ներդրումը։

Պետական մարմինների կողմից վերահսկվող տեխնիկական առաջընթացի համար հավասար պատասխանատվություն պետք է կրեն արտադրության աշխատողները, գիտնականները, նախագծողները, կոնստրուկտորները։ Այդ հնարավորություն կընձեռի արագացնելու գիտության զարգացման տեմպերը։ Գիտ-

նականների տեխնիկական գաղափարներն ու մշակումները գերազանցում են այսօրվա արտադրության մակարդակը։ Այս միտումը գիտատեխնիկական հեղափոխության օբյեկտիվ օրինաչափությունն է։ Բնականաբար, այս պայմաններում հույժ մեծանում է գիտատեխնիկական առաջընթացի պլանաչափ, պետական կառավարման դերը։ Այդ իսկ պատճառով ՍՄԿԿ Կենտկոմը արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի հասումների ներդրումն արագացնելու նպատակով հատուկ որոշում ընդունեց Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոգործարանի փորձը լայնորեն տարածելու մասին, որով պարտավորեցրեց մինիստրություններին ու գերատեսչություններին՝ էականորեն բարելավել գիտության ու արդյունաբերական արտադրության մերձեցման աշխատանքը։

Այս որոշումը կենսական նշանակություն ունի նաև Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների համար։ Հանրապետության գիտահետազոտական կազմակերպությունների փորձը ցույց է տալիս, որ այդ ձեռնարկությունների որոշ մասը դեռ չունի «գիտություն—արտադրություն» երկկողմանի կապն ապահովող ստորաբաժանումներ։ Առաջին հերթին նկատի ունենք գործարանային գիտահետազոտական կենտրոնը՝ իր լաբորատորիաների և գլխավոր տեխնոլոգի, գլխավոր կոնստրուկտորի և այլ ծառայությունների ճյուղավորված ցանցով։ Իսկ առանց գիտության «ամրակետերի» գործարաններում անհնար է և՛ ժամանակին որոշել հետազոտական պրոբլեմատիկան, և՛ բացահայտել արտադրության թերիները, և՛ որոշակի տեխնիկական մշակման գիտականորեն հիմնավորված թեմատիկ պատվերներ տալ մասնագիտացված գիտահետազոտական ու կոնստրուկտորական կազմակերպություններին, ինչպես և ժամանակին կազմակերպել արդեն պատրաստի մշակումների գործնական ներդրումը։

Որոշ ձեռնարկություններում գիտության ու արտադրության կապող օղակի բացակայությունը բացասաբար է անդրադառնում նաև նոր տեխնիկայի պլանների մշակման վրա։ Այդ պլանները պետք է կազմի գործարանի գիտահետազոտական կենտրոնը գիտահետազոտական այն բոլոր հիմնարկությունների հետ միասին, որոնք կարող են նպաստել տվյալ արտադրության այս կամ այն տեղամասի կատարելագործմանը։ Այստեղ էական դեր կարող է խաղալ մասնագիտացված ինստիտուտների կամ կոնստրուկտորական կազմակերպությունների գիտատեխնիկական մշտական շեֆությունն արդյունաբերական կոնկրետ ձեռնարկությունների նկատմամբ։

Գիտությունն արտադրությանը պետք է ապահովի նոր մեքենաներով, սարքավորումներով, սարքերով, տեխնոլոգիական պրոցեսներով, որոնց գործարկմամբ հնարավոր լինի բանվորական ձեռքեր ազատել և օգտագործել դրանք այն ճյուղերում, ուր դրանց պակաս է զգացվում։ Հետազոտական աշխատանքի արդյունքները հնարավոր կլինի արտադրության մեջ ներդնել միայն այն դեպքում, երբ այդ մեքենաները, սարքերն ու սարքավորումներն սկսեն գործել, ներազդել ողջ արտադրապրոցեսի վրա։ Միայն այդ ժամանակ հնարավոր կլինի տնտեսապես գնահատել ու վերահսկել այդ աշխատանքը, հաշվել, թե որքան միջոցներ են ներդրվել, որքան է փոխհատուցումը։ Ծախսված ամեն մի ռուբլու փոխհատուցում— այս է պարզ ու ճշգրիտ չափանիշը։ Այդ հնարավորություն կընձեռի դատելու տվյալ գիտական կոլեկտիվի աշխատանքի արդյունավետության մասին, այն մասին, թե նրա ո՛ր մշակումները պետք է ֆինանսավորել առաջին հերթին։

Գիտական հետազոտությունները պետք է ամբողջովին փոխհատուցվեն։ Կիրառական մշակումների ներդրումից ստացված շահույթը պետք է ծածկի նաև գիտության այն ճյուղերի ծախսումները, որոնցից չի կարելի սպասել տնտեսական շահ (օրինակ, աշխատանքի պայմանների բարելավման նպատակով արված մշակումները)։ Այսպիսով, արտադրության ոլորտը կվերադարձնեն գիտության մեջ ներդրված միջոցները։ Նպատակահարմար է պլանավորել գիտական մշակումներից ստացվող շահույթը և խստորեն հետևել պլանի կատարմանը։ Այդ կբարձրացնի նաև գիտնականների շահագրգռությունը. նրանք կձգտեն, որ իրենց աշխատանքի արդյունքը ծառայի էկոնոմիկայի զարգացմանը։



Այս հնգամյակում հանրապետության գիտնականներն առավել մեծ ուշադրություն են նվիրում տնտեսության զարգացման հարցերին, նպաստելով 1976—1980 թվականների ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղություններով առաջադրված նպատակի իրականացմանը։ Հանրապետության գիտաշխատողները, գիտությունների ակադեմիան որոշակի հաջողությունների են հասել հիմնարար և կիրառական գիտությունների զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները ժողովրդական տնտեսության մեջ ներդնելու ասպարեզում։ Ակադեմիայի գիտական հաստատություններում 1977 թ. մշակվել են 480 թեմաներ ընդգրկող 158 պրոբլեմներ։ Պրակտիկայում ներդրվել են ավելի քան 40 մշակումներ։ Ակադեմիայում ստեղծվում են փորձաարդյունաբերական և փորձարարական նորանոր բազաներ։ Արդյունաբերական արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի հայտնագործումների ներդրումից տարեկան ստացվել է ավելի քան 40 միլիոն ռուբլի տնտեսական օգուտ։

Ուշագրավ են ագրոքիմիական պրոբլեմների և հիդրոպոնիկայի ինստիտուտի՝ ժողովրդական տնտեսության մեջ ներդրված մշակումները։ Վերջերս որոշում է ընդունվել մեր հանրապետությունում զարգացնել արհեստականորեն կարգավորվող միջավայրում բույսերի աճեցման մեթոդը։ Այս նպատակով մշակված ծրագրի կենսագործմամբ հնարավոր կլինի մի քանի տարի անց հիդրոպոնիկայի միջոցով ստանալ հանրապետության գյուղատնտեսությանն անհրաժեշտ խաղողի տնկիների մոտ կեսը։

Գիտությունների ակադեմիայի Լ. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտում, կենսաբանական գիտությունների դոկտոր Լ. Մատինյանի ղեկավարությամբ, կենդանիների վրա արված փորձերի միջոցով բացահայտված է կոմպլեքսային ֆերմենտոսկոպիայի արդյունավետությունը մարդու ողնուղեղի վնասվածքի ժամանակ։ Այդ մեթոդը հաջողությամբ կիրառվում է երկրի կլինիկական հիվանդանոցներում։ Գիտության և արտադրության կապի արդյունավետության վկայությունն է Հայաստանի գունավոր մետաղների գիտահետազոտական ինստիտուտի և հանրապետության գունավոր մետալուրգիայի արտադրական ձեռնարկությունների սերտ համագործակցությունը։ 1977 թվականին ինստիտուտի աշխատողների մշակումների ներդրումից ստացված տնտեսական արդյունքը կազմեց ավելի քան 3 միլիոն ռուբլի, իսկ յուրաքանչյուր ներդրված ռուբլու միջին շահույթը՝ մոտ 4 ռուբլի։

Ինստիտուտի կոլեկտիվը տասներորդ հնգամյակի առաջին տարիներին հասավ որոշակի հաջողությունների, իր ավանդը ներդրեց նախագծային ինքնատիպ լուծումների մշակման, մետաղահանության ավելացման, գունավոր մետաղների մշակության, փոշեզազամաքրման գիտական հետազոտությունների բարելավման գործում, ամրապնդեց կապերն արդյունաբերական ձեռնարկությունների հետ։ Անցած տարի երկրի և հանրապետության ձեռնարկություններում ներդրվեց 34 գիտական մշակում։ Դրանցից է Քաջարանի բաց հանքի լեռնային ապարների մշակման ընթացքում կոմբինացված ավտոմոբիլային-կոնվեյերային տրանսպորտի ներդրումը, որն այս հնգամյակում կտա 4 միլիոն ռուբլու տնտեսական օգուտ։

Շինարարական նյութերի արդյունաբերության մինիստրության՝ քարի և սիլիկատների գիտահետազոտական ինստիտուտում տեխնիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Ի. Ա. Տեր-Ազարևի ղեկավարությամբ ստեղծվել է մարմարի, տուֆի և այլ քարերի գեղարվեստադեկորատիվ մշակման մեթոդը։ Ի տարբերություն ձեռքի մշակման, այս մեթոդը հնարավորություն է ընձեռում բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և կարող է կիրառվել մասսայական շինարարության բնագավառում։ Գազալքենդի քարամշակման կոմբինատում (Ուզբեկական ՍՍՀ) այս մեթոդի ներդրումից ստացվող տնտեսական օգուտը, 5.000 քառակուսի մետր մշակման կարողության դեպքում, կազմեց մոտ 100 հազար ռուբլի։ Դրանով հետաքրքրվել են Իսպանիայի, Իտալիայի, Ֆրանսիայի և այլ պետությունների ֆիրմաները։

Ուշագրավ են հետազոտությունները գրանիտի բնական ֆակտուրայի հայտաբերման եղանակի մշակման ասպարեզում (աշխատանքի ղեկավար՝ պրո-

ֆեսոր Ի. Ա. Տեր-Ազարև)։ Այդ մեթոդը հնարավորություն է ընձեռում, շրջանցելով հղկման պրոցեսը, ստանալ դեկորատիվ երեսպատման մակերես՝ ի հայտ բերելով գրանիտի մեջ պարունակվող հանքանյութի բնական գույների բոլոր նրբերանգներն ու փայլը։

Սակայն, ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ինստիտուտների հետազոտությունների արդյունքների մի մասը չի իրացվում։ Եվ ամենևին էլ ոչ այն պատճառով, որ դրանք հրատապ և արդյունավետ չեն, այլ այն, որ դրանց ներդրումը կապված է մի շարք հանգամանքների հետ։ Գիտական մշակումները ներդնելիս, բնականաբար, ծագում են լրացուցիչ հետազոտություններ պահանջող նոր պրոբլեմներ, այսինքն՝ հետադարձ կապ է հաստատվում գաղափարի և դրա իրացման միջև։ Հնարավոր չէ ամեն ինչ կանխավ նախատեսել։

Օրինակ, քարի և սիլիկատների նույն ինստիտուտում 1962 թվականից մշակվել է պեռլիտի կոմպլեքսային վերամշակման տեխնոլոգիան սիլիկատային մի շարք նյութերի, այդ թվում՝ բյուրեղապակու, տարային ապակու, լվացող, սպիտակեցնող միջոցների և այլ նյութերի հումքի ստացման համար։ Լաբորատոր հետազոտությունների տվյալների հիման վրա նախագծվում էր Արագածում կառուցել 30 հազար տոննա պեռլիտի վերամշակման կարողությամբ փորձնաարդյունաբերական օբյեկտ։ Հետագա ստուգման ժամանակ, կիսաարդյունաբերական պայմաններում, երևան եկան գործարանային տեխնոլոգիայի կատարելագործման հետ կապված մի շարք դժվարություններ, որոնց հաղթահարման համար անհրաժեշտ էին լրացուցիչ ծախսեր ու ջանքեր։ Այժմ ինստիտուտի բազայի վրա գործում է լաբորատորային խոշոր սարքավորում՝ տարեկան մոտ 200 տոննա ապակու հումքի մշակման կարողությամբ. ստացվել է բյուրեղապակու հումք, որից և պատրաստվել են բյուրեղապակյա լավորակ իրեր։ Սակայն դրանց արդյունաբերական կիրառումը հետաձգվում է, որովհետև նախագծի հաստատումը ձգձգվում է այն պատճառով, որ դեռևս լուծված չէ այդ տեխնոլոգիայի պատրաստուկներից մեկի՝ ցիոլիտի իրացման հարցը։

Տեխնիկական նորույթի արդյունաբերական կատարելագործումը կենսական անհրաժեշտություն է։ Այդ անխուսափելի է։ Բայց այդպիսի նորույթը հանձնել ձեռնարկությանը, որտեղ բոլոր կարողությունները, ժամանակը, բանվորական ձեռքերն ի սպաս են դրված պետական պլանի կատարմանը, նշանակում է այն ծանրաբեռնել յուրացման լրացուցիչ հոգսերով։ Այլ բան է, երբ ձեռնարկությունն ստանում է փորձարկված, արդեն իսկ բանող նոր ապարատ՝ իր բոլոր առավելություններով։

Տեխնիկայի բնագավառում հետազոտություններ կատարող գիտական հիմնարկությունը պետք է ունենա իր փորձնական արտադրությունը։ Պատրաստված սարքը կարող է փորձարկվել և կարգի բերվել հենց արտադրամասում, ապա հանձնվել պատվիրատուին։ Սակայն, ինչպես ուսումնական, նույնպես և գիտահետազոտական ինստիտուտները, ունենալով բարձրորակ գիտնականներ, տարբեր պրոֆիլի հետազոտողների կոլեկտիվ, չունեն պատշաճ փորձնաարտադրական բազաներ։ Ինչ վերաբերում է գունավոր մետաղների հայկական գիտահետազոտական ինստիտուտին, ապա այն առհասարակ զուրկ է փորձնական արտադրությունից։ Դրանից մեծապես տուժում են մետալուրգիական պրոֆիլի, հարստացուցիչ, գաղաղտման և այլ լաբորատորիաները, այսինքն՝ հենց կիրառական գիտական գաղափարներ մշակող լաբորատորիաները։

Ինստիտուտներում փորձնական արտադրության ստեղծումն ունի նաև դաստիարակչական նշանակություն։ Ինժեներները, լաբորանտները, ուսանողները, տեսնելով, թե գիտնականներն ինչպես են լուծում գիտատեխնիկական խնդիրները, իրենք ևս հաճույքով են մասնակցում դրան։ Ստեղծելով լաբորատոր սարքեր, դրանց վրա փորձեր կատարելով, նրանք տիրապետում են արդի



գիտական հետազոտման մեթոդիկային, ձեռք բերում ապագա գիտնականի, արտադրության հրամանատարի հմտություն։

Գիտահետազոտական աշխատանքի հետախուզական փուլն ավարտվելուց հետո երբեմն չի մշակվում տեխնիկատնտեսական հիմնավորումը։ Մինչդեռ պետք է որոշակի իմանալ, թե ներդրումն ինչ ծախսեր կպահանջի և ինչպիսին կլինի արդյունքը։

Այժմ պլանավորման մասին։ Մեր կարծիքով, ներդրման պրոցեսն զգալիորեն կհեշտանար միջանցիկ պլանավորմամբ, այսինքն, եթե նոր տեխնոլոգիաների մշակման պլաններում նշվեին ո՛չ միայն գիտահետազոտական ինստիտուտները, այլև այն ձեռնարկությունները, որտեղ ենթադրվում է ներդնել հետազոտությունների արդյունքները։ Էական նշանակություն ունի նաև տեխնիկական նորույթների պլանի կատարման ներառումը հիմնական ցուցանիշներում, որոնցով գնահատվում է արդյունաբերական ձեռնարկությունների գործունեությունը. այդ կբարձրացնի դրանց պատասխանատվությունը, կպայմանավորի գիտատեխնիկական առաջընթացի իրականացման կոնկրետ անելիքները։

Հետագա կատարելագործման կարիք ունի ինչպես մշակումների հեղինակների, այնպես և ձեռնարկությունում դրանց ներդրմանը մասնակցող բանվորների բարոյական ու նյութական խրախուսման սիստեմը։ Անհրաժեշտ է ստեղծել գիտաշխատողների պարգևատրման առավել ճկուն սիստեմ, որում ինչպես հարկն է հաշվի առնվեն գիտատեսական, կիրառական աշխատանքները։ Ժամանակն է վերանայելու համատեղության վերաբերյալ գոյություն ունեցող դրույթը. ավելի կոնկրետ՝ արտադրության որակյալ մասնագետներին պետք է թույլ տալ մասնակցելու լայն ներդրման համար նախատեսված նոր սարքերի ու տեխնոլոգիաների մշակմանը։

Շատ կարևոր է՝ նոր մշակումների ներդրման ավելի վաղ փուլերում ապահովել գիտության և արտադրության կապը։ Այն ներկայումս առավել հրատապ է, քանի որ գիտատեխնիկական հասումները վճռական դեր են խաղում ինտենսիվացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Այժմ կարևորագույն խնդիր է համարվում «գաղափարից մինչև մեքենա» եղած ուղու կրճատումը։

Ինչպես ՍՄԿԿ XXV համագումարում շեշտեց Լ. Ի. Բրեժնևը, «Գիտատեխնիկական հեղափոխության հաջողությունը, էկոնոմիկայի վրա, հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա նրա բարերար ազդեցությունը չեն կարող ապահովվել միայն գիտական աշխատողների ջանքերով։ Հետզհետե ավելի մեծ դեր է ստանում հանրային արտադրության բոլոր մասնակիցների, տնտեսական մեխանիզմի բոլոր օղակների ներգրավումը այդ պատմական նշանակություն ունեցող պրոցեսի մեջ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 72)։ Այս է գիտական հետազոտությունների արդյունավետության բարձրացման միջոցը։

# ԿԵՆՑԱՂԻ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀՐԱՏԱՊ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Ռ. Մ. ՄԱՄԻԿՈՆՅԱՆ**
ՀՍՍՀ բնակչության կենցաղային սպասարկման մինիստրի առաջին տեղակալ

*ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՍՊԱՍԱՐԿՄԱՆ զարգացումն ու որակական բարելավումը սոցիալական, տնտեսական և քաղաքական մեծ նշանակություն ունի մեր հասարակության և ժողովրդական տնտեսության համար։ Որքան ավելի լավ է կազմակերպված բնակչության կենսական պահանջմունքների բավարարումը, այնքան ավելի հաջող են լուծվում սոցիալ-տնտեսական խնդիրները։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ կուսակցությունն ու կառավարությունը բնակչության կենցաղային կարիքների բավարարման համար մղվող պայքարը համարում են կոմունիստական շինարարության կարևորագույն խնդիրներից մեկը։*

*Հասարակության զարգացմանը զուգընթաց ավելի ու ավելի է մեծանում ծառայությունների տեսակարար կշիռը կենսամիջոցների ֆոնդում։ Անընդհատ աճում է կենցաղային ծառայության ձեռնարկությունների դերը։ Եվ դա բնական է։ Այն նշանակալի տեղ ունի ընդլայնված սոցիալիստական վերարտադրության մեջ՝ աշխատանքային ռեսուրսների խնայողության, աշխատուժի վերարտադրության և նյութական արտադրության մեջ ներգրավվող աշխատավորների թվաքանակի մշտական աճի առումով։ Նրա դերն այդ իմաստով ավելի է մեծանում առաջիկա տասնամյակում, երբ առանձին սրություն է ձեռք բերում աշխատանքային ռեսուրսների ավելի ռացիոնալ օգտագործման պրոբլեմը, որի հաջող լուծումը էապես պայմանավորված է ցածր արտադրողական տնային աշխատանքից կանանց ազատելու և նրանց ժողովրդական տնտեսության մեջ ներգրավելու հետ։*

*Վ. Ի. Լենինը նշում էր, որ բնակչության կենցաղային սպասարկման ձեռնարկությունները կոմունիզմի ծիլերի նմուշներ են, որոնք գործով ընդունակ են ազատագրելու կնոջը։ Նա ասում էր, որ կնոջը «...ճզմում, խեղդում, բթացնում, ստորացնում է* մանր տնային *տնտեսությունը, շղթայելով նրան խոհանոցին և մանկանոցին, հափշտակելով նրա աշխատանքը մինչև վայրենության աստիճանի անարտադրողական, մանր, ջղայնացնող, բթացնող, ճնշող աշխատանքով։* Կնոջ *իսկական* ազատագրումը, *իսկական կոմունիզմը կսկսվի միայն այնտեղ և այն ժամանակ, որտեղ և երբ կսկսվի մասսայական պայքար (պետական իշխանությանը տիրապետող պրոլետարիատի ղեկավարությամբ) տնային այդ մանր տնտեսության դեմ, կամ, ավելի ճիշտ՝* նրա մասսայական վերակառուցումը *որպես խոշոր սոցիալիստական տնտեսություն»* (Երկեր, *հ. 29, էջ 526)։*

*Կենցաղի ծառայության զարգացումը, որպես օբյեկտիվորեն պայմանավորված պրոցես, երկրի հարաճուն տնտեսական պոտենցիալի հետևանք է։ Ժողովրդական սպառման ապրանքների՝ հագուստի, սպիտակեղենի, կոշիկի, կահույքի, կենցաղային մեքենաների ու սարքերի, փոխադրական միջոցների արտադրության և բնակարանային շինարարության աճի հետ միասին կավելանա նաև դրանք կարելու, նորոգելու, մաքրելու, լվանալու, տեխնիկապես սպասարկելու պահանջը, որ իրականացնում են կենցաղի ծառայության ձեռնարկությունները։ Բնակչության կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացմանը զուգընթաց աճում են նաև բազմապիսի պահանջմունքներ, որոնք կապված են սառնարանների, հեռուստացույցների, ավտոմեքենաների, բնակարանների նորոգման համար ծագող կենցաղային պահանջների բավարարման, վարսավիրանոցների, լուսանկարչատների, վարձով տրվող իրերի կետերի, կենցաղային ծառայությունների բյուրոների հետ և այլն։ Ուստի կուսակցության սոցիալ-տնտեսական ծրագիրը նախատեսում է բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու միջոցառումների լայն շրջան։*

*ՍՄԿԿ XXV համագումարը նախատեսել է բնակչությանը ցույց տրվող կենցաղային ծառայությունների իրացման ծավալը մեծացնել 1,5 անգամ, այդ թվում գյուղական վայրերում՝ 1,7 անգամ, բարձրացնել սպասարկման կուլտուրան և պատվերների կատարման որակը, ընդլայնել կենցաղի ծառայության ձեռնարկությունների ցանցը, դրանք ապահովել ժամանակակից տեխնիկայով։*

*Արդի փուլում բնակչության կենցաղային սպասարկման զարգացման հրատապ հարց է դառնում ճյուղի առավելագույն աջակցությունը գյուղատնտեսական արտադրության կայուն աճին։ ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ «Գյուղատնտեսության հետագա վերելքը կուսակցությունը համարում է կարևորագույն համապետական, համաժողովրդական խնդիր։ Նրա լուծման գործում պետք է արժանի ավանդ ներդնեն էկոնոմիկայի բոլոր ճյուղերը» (ՍՄԿԿ* XXV համագումարի նյութերը, *էջ 79—80)։*

*Կուսակցության ագրարային քաղաքականությունն ուղղված է բնակչությանը պարենով և ժողովրդական տնտեսությունը հումքով ապահովելու, քաղաքի և գյուղի աշխատավորների կյանքի նյութական ու կուլտուր-կենցաղային պայմանները է՛լ ավելի մերձեցնելու նպատակին։ Այդ խնդիրների լուծման գործում կարևոր դեր է հատկացվում գյուղական բնակչության կենցաղային սպասարկման զարգացմանը։ Սակայն, արտադրական բազայի սակավազորության, ընդունման դեռևս չզարգացած ցանցի, մասնագիտացված փոխադրամիջոցների պակասի և արտագնա սպասարկումը կազմակերպելու գործում եղած թերությունների հետևանքով գյուղական բնակչությանը ցույց տրվող ծառայությունների ծավալը, բնակչության մեկ շնչի հաշվով, 1,5 անգամ ավելի ցածր է, քան քաղաքներում։ Կենցաղային ծառայությունների առանձին տեսակներով այդ տարբերությունն ավելի էական է։ Հանրապետության 539 կոլտնտեսություններում և սովխոզներում չկան կենցաղի տներ կամ կոմպլեքսային ընդունման կետեր։*

*Գյուղական բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու ասպարեզում գործողության ծրագիր է ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի որոշումը։ Ինչպես նշվեց պլենումում, ժամանակն է կուսակցական, սովետական, արհմիութենական կազմակերպությունների և տնտեսական մարմինների ուշադրությունը շեշտակիորեն սևեռել գյուղի կենցաղի վերակառուցման գործի վրա, է՛լ ավելի ծավալել բնակարանային և կուլտուրական շինարարությունը գյուղում։ «Այսօր,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը հուլիսյան պլենումում,— հարցը կարող է դրվել միայն այսպես՝ տնտեսությունների ղեկավարները, կուսակցական կոմիտեները, սովետական և արհմիութենական մարմինները գյուղի աշխատավորների բնակարանային ու կենցաղային կարիքների, նրանց աճած կուլտուրական պահանջմունքների բավարարման նկատմամբ պակաս հոգատարություն չպետք է ցուցաբերեն, քան արտադրության զարգացման նկատմամբ»* (ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին, *«Հայաստան», 1978, էջ 58)։*

*ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի առաջադրած պահանջներն իրագործելու համար առանձնապես լայն հնարավորություններ կան արդի փուլում։ Հարկավոր է հաշվի առնել, որ հեռանկարում ևս կուսակցությունը նախատեսում է շարունակել կուտակումները էականորեն գյուղատնտեսության օգտին վերաբաշխելու գիծը, ապահովել նրա նյութատեխնիկական բազայի ըստ ամենայնի ամրա-*

պնդումը։ Այդ ամենն զգալիորեն կբարելավի գյուղական բնակչության կենցաղային սպասարկումը։ Հասկանալի է, որ քանի դեռ ճեղքվածք գոյություն ունի քաղաքային և գյուղական բնակչության կենցաղային սպասարկման մակարդակում, գյուղական բնակչության կենցաղային սպասարկման ծավալների աճի տեմպերը պետք է գերազանցեն քաղաքայինին։

Մեր օրերում հատուկ նշանակություն է տրվում գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, ժամանակակից տեխնիկայով ճյուղի ապահովմանը, աշխատանքի արտադրողականության աճին, հիմնական արտադրաֆոնդերի և շրջանառու միջոցների ավելի լրիվ օգտագործմանը, ինքնարժեքի իջեցմանը, կենցաղային ծառայությունների շահութաբերության բարձրացմանը և սպասարկման որակին։

Կենցաղի ծառայության տեխնիկական մակարդակը բարձրացնելու օբյեկտիվ անհրաժեշտությունը բխում է այն բանից, որ նրա ֆոնդազինվածության մակարդակը, ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի համեմատությամբ, խիստ ցածր է։ Դրա պատճառը ո՛չ միայն կենդանի աշխատանքի ծախսումների մեծ տեսակարար կշիռն է, այլև զգալի չափով այն, որ երկար ժամանակ գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները չեն արմատավորվել այդ ճյուղում, նշանակալի ռեսուրսներ չեն հատկացվել կենցաղի ծառայության նյութատեխնիկական բազայի զարգացմանը։ Այժմ բոլոր հնարավորությունները կան ճյուղի տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար։ Գործի հաջողությունը պայմանավորված է ցանցի ընդլայնման և նոր տեխնիկայով կենցաղային ձեռնարկությունների վերազինման համար նախատեսված ռեսուրսների ռացիոնալ օգտագործմամբ։ Այդ հիման վրա կենցաղի ծառայությունը դառնում է ժողովրդական տնտեսության խոշոր, մեքենայացված ճյուղ։

Արդի պայմաններում բնակչության կենցաղային սպասարկման բարելավման և ժողովրդի կենսամակարդակի հետագա բարձրացման կարևորագույն գործոն է դառնում կենցաղային ծառայությունների որակի բարձրացումը։ Սպասարկման բարձր կուլտուրայի և պատվերների կատարման որակի ապահովումը համարվում է ճյուղի հիմնական սոցիալ-տնտեսական պրոբլեմը, որի հաջող լուծմամբ մեծապես պայմանավորված են նրա զարգացման տեմպերն ու մակարդակը, կենցաղի ծառայության հեղինակությունը։ Այդ խնդիրները հիմնավորված են կուսակցական այնպիսի կարևոր փաստաթղթերում, ինչպիսիք են ՍՄԿԿ XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումի և «Աշխատավորների պատվերների կատարման որակի բարելավման և նրանց սպասարկման կուլտուրայի բարձրացման ուղղությամբ ՌՍՖՍՀ բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի հունվարի 21-ի որոշումները։

Կենցաղի ծառայության բոլոր ստորաբաժանումների գործունեության համար որպես հիմնական ցուցանիշ է ճանաչվել պատվերների կատարման որակի և սպասարկման կուլտուրայի մակարդակը։ Չնայած դրան, մինիստրությունների, վարչությունների, միավորումների և ձեռնարկությունների մասշտաբով այդ ցուցանիշը չի պլանավորվում։ Բանն այն է, որ բնակչության կենցաղային սպասարկման արդյունավետության բարձրացման այդպիսի հզոր լծակի տնտեսական մեխանիզմը դեռևս հստակորեն չի մշակված։

Մենք մեր պրակտիկ գործունեության մեջ ելնում ենք նրանից, որ սպասարկման որակը լայն իմաստով ընդգրկում է նաև սպասարկման կուլտուրան։ Իսկ դա պետք է արտահայտվի ոչ միայն ճյուղի աշխատողների բարեկիրթ վարվեցողությամբ. այն ամենից առաջ ենթադրում է առավելագույն հարմարությունների ստեղծում բնակչության սպասարկման համար։ Դա պահանջում է կենցաղային սպասարկման ռացիոնալ կազմակերպում՝ հաշվի առնելով բնակչության հարաճուն պահանջմունքները, կատարելագործել կենցաղի ծառայության օբյեկտների աշխատանքի ռեժիմը, տեղաբաշխումը, բարելավել ռեկլամը, ճյուղը առավելագույն չափով ապահովել նյութական ռեսուրսներով։

Այդ պրոբլեմների կոնկրետ լուծման նպատակով Հայկական ՍՍՀ բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության սիստեմում աշխատանքներ են սկսվել ձեռնարկություններն ու նրանց կառուցվածքային ստորաբաժա-



նումները բնակչության սպասարկման որակի համեմատ ատեսաավորելու նպատակով։ Որակի բարձրացման կոնկրետ միջոցառումներ մշակելու համար մենք սահմանել ենք համապատասխան ցուցանիշներ, որոշել դրանց քանակական նշանակությունը և կիրառման մեթոդիկան ըստ ձեռնարկությունների ու միավորումների։

Բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու միջոցառումների սիստեմում առանձնահատուկ տեղ է գրավում ճյուղի կազմակերպական կառուցվածքի կատարելագործումը, նրա կառավարման ռացիոնալացումը։ Առաջին հերթին խոսքը վերաբերում է կառավարման կազմակերպական ճկուն կառուցվածքի ստեղծմանը, որը համապատասխանի կենցաղի ծառայության զարգացման ներկայիս մակարդակին։

Կառավարման կատարելագործումը բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու կարևորագույն պայմանն է, կենցաղային ծառայությունների արդյունավետությունը և որակը բարձրացնելու հզոր լծակը։

Կենցաղի ծառայության զարգացման արդի ժամանակաշրջանում որոշակի են դարձել ճյուղային կառավարումը կատարելագործելու հիմնական միտումները։ Այսպես, այն ենթաճյուղերում, որտեղ կիրառվում է նոր արտադրատեսակների արտադրությունը փոքր խմբաքանակներով (կոշիկ, տրիկոտաժ, կահույք, գալանտերեա, մետաղյա իրեր և այլն), տեղի է ունենում արտադրության մասնագիտացում, ձեռնարկությունների խոշորացում, օղակայնության պակասեցում և կառավարման կենտրոնացում։

Միևնույն ժամանակ ծառայությունների այն տեսակների գծով, որոնց իրականացումը պայմանավորված է տեղական բնակչության պահանջարկով, երևան է գալիս ձեռնարկությունների քանակն ավելացնելու, ընդունման ցանցն ընդլայնելու, իսկ այդպիսի ձեռնարկությունների ղեկավարման գործում՝ կառավարման տեղական մարմինների դերը բարձրացնելու միտում (հագուստի կար և նորոգում, կոշիկի, կահույքի, կենցաղային տեխնիկայի նորոգում, իրերի և զգեստի քիմիական մաքրում, սպիտակեղենի լվացում, վարձով տրվող իրերի, լուսանկարչական, վարսավիրանոցների ծառայությունները և այլն)։

Ինչպես ցույց է տալիս մեր փորձը, բնակչության կենցաղային սպասարկման կազմակերպումն ու կառավարումը կատարելագործելու ժամանակ շատ կարևոր է հաշվի առնել այդ միտումները, քանի որ ինչպես սպառողական նոր արժեքների (հագուստ, կոշիկ, տրիկոտաժ, կահույք և այլն) արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման, այնպես և սպասման ռեգիոնալ առանձնահատկությունների անտեսումը կհանգեցնի բնակչության կենցաղային սպասարկման արդյունավետության և որակի իջեցմանը։

Այսպես, մեր հանրապետության բոլոր քաղաքներում և շրջաններում բնակչությունը մեծ պահանջարկ է ներկայացնում նորոգման-շինարարական աշխատանքների նկատմամբ։ Բայց համապատասխան նյութատեխնիկական բազայի բացակայության պատճառով բնակարանների նորոգման և կառուցման գործում բնակչության պահանջմունքները բավարարվում են ոչ լրիվ չափով։ Այդ ենթաճյուղի ձեռնարկությունները սահմանափակ հնարավորություններ ունեն ժամանակակից շինարարական մեխանիզմներ, մեքենաներ և սարքավորումներ կիրառելու համար։ Դեռևս բարձր է ձեռքի աշխատանքի տեսակարար կշիռը։ Կարգավորված չեն գներն ու աշխատավարձը, որը դժվարություններ է ստեղծում բանվորական կադրեր ներգրավելու գործում։ Դրա հետ մեկտեղ կենցաղային ծառայությունների տվյալ ենթաճյուղը դեռ ցրված է շատ ձեռնարկությունների միջև։ Մի շարք շրջաններում կենցաղային սպասարկման կոմբինատները բնակչության պատվերներով նորոգման-շինարարական աշխատանքներ չեն կատարում։ Դրանք կենտրոնացված են համապատասխան բազա ունեցող նորոգման-շինարարական խոշոր կազմակերպություններում։ Դրանով կոմբինատները հնարավորություն ստացան զգալիորեն բարելավելու և զարգացնելու կենցաղային ծառայությունների մնացած տեսակները։ Իսկ նորոգման-շինարարական աշխատանքների նկատմամբ բնակչության հարաճուն պահանջմունքներն այդ պայմաններում շատ ավելի լրիվ են բավարարվում։

Կարելի է բերել շատ օրինակներ, ցույց տալու համար, թե ինչպես է ժողո-

վրդական սպառման ապրանքների նորոգման ու արտադրության մասնագիտացման բազայի վրա կենցաղային ծառայությունների համակենտրոնացումը նպաստել հանրապետության կենցաղի ծառայության բնագավառում գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների արդյունավետ օգտագործմանը։

Այսպես, 1976 թվականից սկսած, Հոկտեմբերյան քաղաքի փայտամշակման ձեռնարկության բազայի վրա համակենտրոնացվել է անտառանյութերի վերամշակումը։ Ստացվող տասնյակ հազարավոր խորանարդ մետր անտառանյութը մինիստրությունը նախկինում բաշխում էր շրջանային կոմբինատների միջև։ Վերջինները մեծ դժվարությամբ էին այդ անտառանյութը տեղափոխում հանրապետության լեռնային շրջանները։ Բայց ոչ բոլոր կոմբինատներն ունեին չորացման խցիկներ, անհրաժեշտ մեքենաներ և սարքավորումներ։ Շրջանային կենցաղային կոմբինատների մանր արտադրամասերում չկար շատ թե քիչ ժամանակակից տեխնոլոգիա, որն ապահովեր փայտյա իրերի բարձր որակը, թույլ էին տրվում հումքի մեծ կորուստներ։ Անտառանյութի մշակման համակենտրոնացումն ու մասնագիտացումը հնարավորություն տվեց ձեռնարկությունը զինել համապատասխան սարքավորումներով և արմատավորել հոսքային տեխնոլոգիական պրոցես։ Դրա շնորհիվ շեշտակիորեն բարձրացավ արտադրական կարողությունների օգտագործման արդյունավետությունը, բարելավվեց արտադրատեսակների որակը և իջավ դրանց ինքնարժեքը։ Կազմակերպվել է ներսիստեմային կոոպերացում՝ նշված մասնագիտացված արտադրության և կենցաղային սպասարկման շրջանային կոմբինատների միջև։ Վերջինները բնակչությունից ընդունում են լուսամուտի շրջանակների, դռների, հատակի, կտուրի տախտակների, շրիշակների (պլինթուս) և բնակարանի նորոգման ու շինարարության համար այլ առարկաների ու փայտյա դետալների պատրաստուքների արտադրության ու տեղադրման պատվերներ։

Կենցաղային իրերի նորոգման ու պատրաստման նոր կառուցվող բազային ձեռնարկությունը շահագործման հանձնելուց առաջ մենք զուգահեռաբար իրականացրել ենք գալանտերեայի առարկաների արտադրության խոշորացում և մասնագիտացում։ 52 մանր արհեստանոցների վերացումը և մեկ ձեռնարկության մեջ դրանց կենտրոնացումը բարձրացրին արտադրողականությունը, գալանտերեայի առարկաների պատրաստման որակը և շահութաբերությունը։ Նման համակենտրոնացումից հետո Երևանի կենցաղային իրերի նորոգման ու պատրաստման կոմբինատը սիստեմատիկաբար գերակատարում է կենցաղային ծառայությունների իրացման ծավալի ու շահույթի պլանը և դարձել է Հայկական ՍՍՀ բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության առաջավոր ձեռնարկություններից մեկը։

Հայելիների պատրաստումը, մետաղյա մահճակալների, ցանկապատերի, ցանցերի արտադրությունը, ակնագործական իրերի նորոգումն ու պատրաստումը, ազգային տարազի կարումը և կենցաղային այլ ծառայությունները կենտրոնացնելու միջոցով մեզ հաջողվել է զգալիորեն մեծացնել աշխատանքի ծավալները, բարելավել ֆինանսական և որակական ցուցանիշները։

Բազային օբյեկտներ կառուցելու և շահագործման հանձնելու հետ մեկտեղ, որտեղ ընդունման ցանցի ու ձեռնարկությունների ընդլայնման միջոցով իրականացվում է մանր արտադրամասերի համակենտրոնացում, գյուղական վայրերում կատարվում է գոյություն ունեցող օբյեկտների խոշորացում։ Հարկավոր է նշել, որ դա միանգամայն արդյունավետ է թե՛ աշխատանքի արտադրողականությունը և ծառայությունների որակը բարձրացնելու և թե կենցաղային սպասարկման օբյեկտների գործունեության նկատմամբ վերահսկողությունը բարելավելու տեսակետից։

Սակավ արդյունավետ օբյեկտները խոշորացնելու շնորհիվ հնգամյակի երեք տարում վերացվել են բնակչության կուլտուրական սպասարկման արդի պահանջներին չհամապատասխանող 447 մանր արտադրամասեր։ Միևնույն ժամանակ նոր կառուցված և ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմների հատկացրած շենքերի բազայի վրա կազմակերպվել են լվացքի և



քիմիական մաքրման համար հագուստի ընդունման 270 նոր օբյեկտներ, վարսավիրանոցներ, վարձով տրվող իրերի, հագուստի նորոգման կետեր, լուսանկարչատներ և այլն։

Դրա հետ մեկտեղ հարկավոր է նշել, որ հանրապետության կենցաղի ծառայության բնագավառում դեռևս կան էական թերություններ։ Արտադրական խոշոր տեղամասերի բացակայության հետևանքով հանրապետության և հատկապես Երևանի բնակչության կենցաղային սպասարկումը երկար ժամանակ զարգացել է անարդյունավետ մանր արտադրություններ ստեղծելու ուղիով։ Դա հանգեցրել է այն բանին, որ նորոգման ու ծառայությունների ոչ արտադրական տեսակների շատ օբյեկտներ ցրված են մասնավոր կամ կուլտուրական սպասարկման պահանջները չբավարարող շենքերում, ռացիոնալ ձևով չի տեղաբաշխվել բնակչության կենցաղային սպասարկման ձեռնարկությունների ցանցը։ Այդ ամենը դժվարացնում է օբյեկտների գործունեության վերահսկողությունը, կենցաղային ծառայությունների գների ու տարիֆների, պատվերների կատարման ժամկետների խախտումները իսպառ վերացման համար տարվող աշխատանքը։

Կենցաղի ծառայության մասնագիտացման, կենցաղային իրերի արտադրության խոշորացման ու համակենտրոնացման գործում կարևոր նշանակություն ունեցավ «Բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության աշխատանքի բարելավման և նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդման միջոցառումների մասին» Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշումը։ Այդ որոշման հիման վրա կազմակերպվեցին արտադրական վեց միավորումներ։ Ընդ որում, նկատի էր առնվել, որ հանրապետության բնակչության նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման հետ միասին աճել են նաև նրա բազմապիսի պահանջմունքները, որոնք կապված են կենցաղային սարքերի, ավտոմեքենաների, բնակարանների նորոգման, վարսավիրանոցների, նորաձևությունների արհեստանոցների, լուսանկարչատների, վարձով տրվող իրերի կետերի և այլ տեսակի ծառայությունների բարելավման հետ։ ՀԿԿ Կենտկոմը և հանրապետության կառավարությունը մշակել են բնակչության կենցաղային սպասարկման գործի հետագա զարգացման հստակորեն հիմնավորված ծրագիր, որը նախատեսում է առաջիկա տարիներին կենցաղի ծառայությունը դարձնել հանրապետության ժողովրդական տնտեսության խոշոր ճյուղ։

Գործնականորեն իրականացնելով ճյուղի արագ զարգացման մասին կուսակցության որոշումները, մինիստրությունը ձեռնամուխ եղավ վերացնելու կենցաղային սպասարկման օբյեկտների ղեկավարման բազմաստիճանությունը, միջոցառում, որը կոչված էր տնտեսական կառավարման մարմինները մոտեցնել արտադրությանը։ Ընդսմին հաշվի էր առնվել, որ հանրապետության կենցաղի ծառայության ետ մնալը հաղթահարելը, բնակչության պահանջմունքների արագ աճը նոր, ավելի բարդ խնդիրներ են առաջադրում ողջ ճյուղի կառավարմանը։ Մինիստրության գործունեության հանգուցային հարց է դարձել կառավարման կատարելագործումը՝ ծառայությունների, արտադրության կենտրոնացման և տնտեսական խոշոր համալիրների կազմակերպման բազայի վրա։ Մշակվել է ճյուղի կառավարման գլխավոր սխեման, հիմնավորվել են արտադրական ութ միավորումների ստեղծման կազմակերպական, տեխնիկական և տնտեսական հնարավորությունները։ Մասնագիտացված միավորումների կազմում հարակից ծառայությունների արտադրության կենտրոնացումը հնարավորություն ընձեռեց՝ ճշտորեն սահմանելու զանազան ստորաբաժանումների իրավունքներն ու պարտականությունները, ճկունացնելու նրանց աշխատանքը, արագացնելու օպերատիվ հարցերի լուծումը։

Վերջին հինգ տարում արմատապես փոխվել է Հայկական ՍՍՀ բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության կազմակերպական կառուցվածքը. ստեղծվել են արտադրամիավորումներ, նախագծային-կոնստրուկտորական տեխնոլոգիական ինստիտուտ, պատվերների ընդունման ու հանձնման կոմբինատ, միավորվել են մայրաքաղաքի վարսավիրանոցների կոմբինատները, վերացվել են Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղսովետների բնակ-

նության կենցաղային սպասարկման վարչությունները, Աշտարակում ստեղծվել է մինիստրության ձեռնարկությունների համար ոչ ստանդարտ կահույքի պատրաստման ֆաբրիկա։ 1976 թվականին կազմակերպվել է «Հայկենցաղնորոգշին» մասնագիտացված տրեստը, որը զբաղվում է բնակիչների անհատական պատվերներով բնակարանների նորոգման ու շինարարության, կենցաղի ծառայության օբյեկտների վերակառուցման, կապիտալ շինարարության ու նորոգման աշխատանքներով։

Ներկայումս մեր հանրապետությունում կենցաղային սպասարկումը իրականացնում են 3.884 ձեռնարկություններ (ֆաբրիկաներ, գործարաններ, արհեստանոցներ և այլն) և դրանցից առանձնացված 360 ընդունման կետեր։ Ընդհանուր առմամբ, հանրապետության կենցաղի ծառայության մեջ զբաղված է մոտ 24 հազար աշխատող։

Հայկական ՍՍՀ բնակչության կենցաղային սպասարկման համակարգի կառավարման գլխավոր սխեմայի լրիվ իրականացումը նախատեսում է մի ամբողջ շարք կոմպլեքս միջոցառումներ, որոնք ուղղված են կենցաղային ձեռնարկությունների կենտրոնացման մակարդակը բարձրացնելու, հանրապետության քաղաքներում և շրջաններում կառավարման ճյուղային և տերիտորիալ սկզբունքները ռացիոնալ կերպով զուգակցելու նպատակին։ Այդ սխեման հնարավորություն կընձեռի՝ կառավարման երկօղակ սիստեմի անցնելու միջոցով ավելի մոտիկից ղեկավարել արտադրությունը, հստակորեն որոշելու մինիստրության, միավորումների, ձեռնարկությունների խնդիրները, ֆունկցիաները, իրավունքներն ու պարտականությունները, արդյունավետորեն իրագործելու ցանցի ընդլայնումը, գիտատեխնիկական նվաճումների ներդրումը, արմատավորելու բնակչության կենցաղային սպասարկման որակի կառավարման կոմպլեքսային և կառավարման ավտոմատացված սիստեմները։

Մինիստրության իրականացրած միջոցառումները լավ արդյունքներ տվեցին։ Տասներորդ հնգամյակի երեք տարում բնակչությանը պլանից դուրս մատուցված է 5 միլիոն ռուբլու ծառայություն։ Արդեն երրորդ տարին է, ինչ Հայկական ՍՍՀ բնակչության կենցաղային սպասարկման մինիստրությունը համամիութենական ճյուղային սոցիալիստական մրցությունում անընդմեջ գրավում է մրցանակային տեղ։ Այս ամենը վկայում է, որ, չնայած դեռևս եղած լուրջ թերություններին ու չլուծված շատ հարցերին, զգալի աշխատանք է կատարվել կենցաղի ծառայությունը ճիշտ ուղիով զարգացնելու համար։

Յուրաքանչյուր վարչատնտեսական ռեգիոնի կենցաղի ծառայություն մի բարդ տնտեսական կոմպլեքս է, որի զարգացումը պայմանավորված է ինչպես տեղական, այնպես էլ ճյուղային բնույթի բազմաթիվ գործոններով։

Հայաստանի կենցաղի ծառայության աշխատողները հանգամանորեն ուսումնասիրում են ՌՍՖՍՀ-ի և միութենական մյուս հանրապետությունների՝ շրջանային օղակի կառավարումը կատարելագործելու փորձը։ Կոմբինատները շրջանային արտադրական վարչությունների վերածելու՝ ՌՍՖՍՀ-ի օգտակար փորձը, ինչպես գրում է «Պրավդա» թերթը 1978 թ. սեպտեմբերի 27-ի առաջնորդողում, տարածվում է Ուկրաինայում, Բելոռուսիայում, Ղազախստանում, որտեղ հետևողականորեն կատարելագործում են շրջանային օղակը։ «Արտադրական վարչությունները, իհարկե, միակ ձևը չեն, կարող են լինել և ուրիշ ձևեր։ Կարևոր է, որ ակտիվ որոնումներ կատարվեն այդ ուղղությամբ։ Այդ որոնումների կատարումը ճյուղի կառավարման մարմինների և միութենական հանրապետությունների Մինիստրների խորհուրդների անմիջական պարտականությունն է»։

ՌՍՖՍՀ-ի շրջանային արտադրական վարչությունների աշխատանքի փորձի վերլուծությունը ցույց է տալիս, որ կենցաղային սպասարկման կազմակերպական-տնտեսական նոր սիստեմը կարող է հաջողությամբ կիրառվել միայն այնտեղ, որտեղ ձեռնարկությունների տեխնիկական բազան գտնվում է բարձր մակարդակի վրա և կատարվել է արտադրության որոշակի մասնագիտացում ու համակենտրոնացում։ Կառավարման կազմակերպական նոր ձևին անցնելու համար ամենից ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծվում այն շրջաններում, որտեղ մասնագիտացված արտադրամիավորումներին բաժին է ընկնում



իրացվող ծառայությունների ամբողջ ծավալի 70—80 տոկոսը։ Հայկական ՍՍՀ-ում, ընդհանուր առմամբ, մասնագիտացման մակարդակը կազմում է 50, իսկ շրջաններում՝ 35 տոկոս։ Հասկանալի է, որ այս պայմաններում կոմբինատների փոխարեն տերիտորիալ վարչությունների կազմակերպումը դեռևս պետք է նախապատրաստվի մասնագիտացման ու համակենտրոնացման նպատակով տարվող ակտիվ աշխատանքով։

Բնակչության կենցաղային սպասարկման նյութատեխնիկական բազայի ամրապնդման և նրա ենթաճյուղերի մասնագիտացումն ավարտելու հետ մեկտեղ կառաջանա նաև կառավարման տերիտորիալ մարմինները կատարելագործելու անհրաժեշտությունը։ Մեր հանրապետությունում կենցաղային սպասարկման կոմբինատների փոխարեն շրջանային օղակի կազմակերպական լավագույն ձև կարող էին լինել նաև բնակչության կենցաղային սպասարկման շրջանային վարչությունները։

Կոմունիստական շինարարության արդի փուլում դրված է մի անհետաձգելի խնդիր՝ կենցաղի ծառայությունը դարձնել ժողովրդական տնտեսության այնպիսի ճյուղ, որը կանգնած լինի գիտության, տեխնիկայի, էկոնոմիկայի և արտադրության կազմակերպման նորագույն նվաճումների մակարդակի վրա և ընդունակ լինի բավարարելու աշխատավորների հարաճուն պահանջմունքները կենցաղային ծառայությունների բնագավառում։

Հայկական ՍՍՀ կենցաղի ծառայության զարգացման պրոբլեմների հաջող լուծումը շատ բանով պայմանավորված է կուսակցական, սովետական, արհմիութենական և տնտեսական մարմինների, արդյունաբերական և գյուղատնտեսական ձեռնարկությունների հստակ ու ամենօրյա աշխատանքով։ Բնակչության կենցաղային սպասարկման զարգացումն առաջնակարգ կարևորություն ունեցող խնդիր է և լուծվում է համատեղ՝ բոլոր կազմակերպությունների ու ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի միացյալ ջանքերով։

---

# ԲՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՎԵՐԱՓՈԽԻՉԸ

(Ա. ԷՅՆՇՏԵՅՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Ա. Ց. ԱՄԱՏՈՒՆԻ**
Երևանի ֆիզիկայի ինստիտուտի դիրեկտոր, ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտոր



**ԱՅՍ ՏԱՐՎԱ ՄԱՐՏԻՆ** լրացավ Ալբերտ Էյնշտեյնի, Վ. Ի. Լենինի բնութագրմամբ՝ «բնագիտության մեծ վերափոխիչներից մեկի» ծննդյան 100-ամյակը:

Ա. Էյնշտեյնը հարաբերականության հատուկ և ընդհանուր տեսությունների ստեղծողն է, որոնց հիմքում ընկած է տարածության ու ժամանակի և շարժման հետ դրանց ունեցած կապի վերաբերյալ մեր պատկերացումների արմատական վերանայումը: Էյնշտեյնը շատ բան է արել նաև մատերիայի քվանտային տեսության զարգացման համար, տվել է ֆոտոէֆեկտի առաջին քվանտային տեսությունը, ներմուծել ստիպողական և ինքնակամ ճառագայթումների հասկացությունները, որոնք ընկած են ժամանակակից քվանտային էլեկտրոնիկայի հիմքում: Ա. Էյնշտեյնը մշակել է ամբողջական սպինով մասնիկների, մասնավորապես լույսի մասնիկների՝ ֆոտոնների քվանտային վիճակագրությունը: Դժվար է ժամանակակից ֆիզիկայում և դրա տեխնիկական ու արդյունաբերական բազմազան կիրառությունների ոլորտում գտնել գեթ մի բնագավառ, որտեղ չարտահայտվեր Ա. Էյնշտեյնի հիմնարար գաղափարների ազդեցությունը: Նրան իրավամբ կարելի է համարել հարաբերականության տեսության և քվանտային մեխանիկայի հիմնադիրների կողմից մեր դարասկզբին սկսված գիտատեխնիկական հեղափոխության դրոշակակիրներից մեկը:

Ուստի և բնական է Ա. Էյնշտեյնի նկատմամբ հետաքրքրությունը՝ գիտական իմացության նրա մեթոդաբանության վերլուծության առումով: Այդ հետաքրքրությունը երկու ասպեկտ ունի. առաջինը հիմնված է Վ. Ի. Լենինի այն ցուցման վրա, թե «հարկավոր է հիշել, որ հենց ժամանակակից բնագիտության ապրած խիստ բեկումից են շարունակ ծնվում ռեակցիոն փիլիսոփայական դպրոցներն ու դպրոցիկները, ուղղություններն ու ուղղությունիկները: Ուստի և բնագիտության ասպարեզում նորագույն հեղափոխության առաջադրած հարցերին հետևելը... մի խնդիր է, առանց որի լուծման մարտնչող մատերիալիզմը չի կարող ոչ մի դեպքում ո՛չ մարտնչող լինել, և ոչ մատերիալիզմ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 273—274):

Մյուսը Ա. Էյնշտեյնի ստացած գիտական արդյունքների նշանակալիությունն ու առատությունն է, որ հատուկ ուշադրություն է հրավիրում նրա գիտական որոնումների մեթոդաբանության վրա: Անշուշտ, մեթոդաբանության իմացությունն անհրաժեշտ է բոլոր բնագետներին, բայց այն ամենևին էլ բավական չէ հաջող գիտական հետազոտությունների և հատկապես հիմնարար բնույթի հետազոտությունների համար: Դրանում կարող ենք համոզվել իր իսկ՝ Ա. Էյնշտեյնի օրինակով, որը հարաբերականության տեսության և քվանտային տեսության վերաբերյալ իր հիմնական աշխատությունները ավարտելուց հետո կյանքի վերջին տարիները նվիրեց էլեկտրամագնիսական և գրավիտացիոն երևույթների վերաբերյալ տեսությունները միավորող՝ դաշտի միասնական տեսություն ստեղծելու ապարդյուն փորձերին: Մենք այժմ գիտենք, որ իր այդ փորձերում Էյնշտեյնը մի քանի տասնամյակ առաջ էր անցել գիտության զարգացման պահանջներից ու հնարավորություններից: Եվ հենց այդ պատճառով, որ այդպիսի զարգացումը դեռևս ո՛չ տեսականորեն, և ոչ էլ փորձնականորեն նախապատրաստված չէր, այն դատապարտված էր անհաջողության: Ինքը՝ Էյնշտեյնն իրեն հատուկ ինքնաքննադատությամբ այդ առիթով 1949 թվականին, իր ծննդյան 70-ամյակի օրը, գրել է. «Չկա մի հասկացություն, որի վերաբերյալ ես վստահ լինեի, թե այն կմնա անեղծ: Ես վստահ չեմ անգամ, թե առհասարակ շիտակ ուղու վրա եմ գտնվում»:

Միշտ էլ մեծ է եղել Ա. Էյնշտեյնի աշխարհայեցողության նկատմամբ հետաքրքրությունը և այն չի նվազում նաև մեր օրերին: Էյնշտեյնի գործերի, նրա ելույթների ու գրագրությունների վերլուծությունից մեր և արտասահմանյան երկրների հետազոտողները հաճախ հանգում են շատ հակասական եզրակացությունների, բայց, մեր կարծիքով, այդպիսի ոչ միարժեք դատողությունների պատճառները սոսկ արտաքո կարգի են և իրականում կապված չեն Էյնշտեյնի գիտական ստեղծագործության բուն էության հետ:

Իրոք, ինչպես հաճախ պատահում է պատմության մեջ առհասարակ և գիտության պատմության մեջ՝ մասնավորապես, այս կամ այն հետազոտողի հայացքների համակարգը մեծապես կանխորոշում է փաստական նյութի նկատմամբ նրա այն ընտրողական վերաբերմունքը, որից հետևում է նրա եզրակացությունների ոչ օբյեկտիվ բնույթը: Բ. Ռասելի խոսքերով ասած՝ «յուրաքանչյուր փիլիսոփա սովորաբար ձգտում է Էյնշտեյնի աշխատանքը մեկնաբանել իր սեփական մետաֆիզիկական (իմա՝ փիլիսոփայական:— Ա. Ա.) սիստեմին համապատասխան և գտնում, որ այդ մեկնաբանության շնորհիվ նշանակալից չափով ամրապնդվում են այդ փիլիսոփայի արդեն իսկ ունեցած հայացքները»:

Այդ հատկապես ճիշտ է այնպիսի բարդ, երբեմն ձևով ոչ միանշանակ, իսկ հաճախ հակասական գաղափարների ու ասույթների համակցության վերլուծության դեպքերում, որը մենք ուզում ենք բնորոշել որպես Էյնշտեյնի աշխարհայեցողություն կամ նրա գիտական որոնումների մեթոդոլոգիա: Ինքը՝ Էյնշտեյնը, այդ առիթով գրել է. «Եթե դուք ցանկանում եք տեսաբան ֆիզիկոսներից որևէ բան իմանալ այն մեթոդների մասին, որոնցից նրանք օգտվում են, ես Ձեզ խորհուրդ եմ տալիս ամուր կառչել հետևյալ սկզբունքին. մի՛ լսեք, թե ինչ կասեն նրանք, այլ ավելի լավ է ուսումնասիրեք նրանց գործերը»:

Հենց որ սկսում ենք հետևել այդ սկզբունքին իր իսկ Էյնշտեյնի ստեղծագործությունը վերլուծելիս, անմիջապես ակնհայտ է դառնում փիլիսոփայության հիմնական հարցին պատասխանելու առումով նրան իդեալիստների շարքին դասելու անհեթեթությունը: Նա չի կասկածել այն բանում, որ բնությունը գոյություն է ունեցել և գոյություն ունի մարդուց առաջ, նրա գիտակցությունից ու զգայություններից անկախ: «Ոչ մի ֆիզիկոս չի հավատում, թե արտաքին աշխարհն ածանցյալ է գիտակցությունից, այլապես նա ֆիզիկոս չէր լինի»: «Ողջ բնագիտության հիմքում ընկած է հավատը ընկալող սուբյեկտից անկախ արտաքին աշխարհի գոյությանը», պնդում է Էյնշտեյնը: Այս դրույթներն իրենց իմաստով և արտահայտության կտրուկությամբ պատահական չեն և չեն կարող պատահական լինել: Կարմիր թելի պես դրանք անցնում են Էյնշտեյնի՝ որպես բնախույզի, ողջ ստեղծագործության միջով:

Արտաքին աշխարհի ճանաչելիությունը Էյնշտեյնի համար կասկածից վեր է, քանի որ դա գիտության նպատակն է. «Գիտության նպատակն է, մի կողմից, զգայական ընկալումների ամբողջության կապի առավել լիակատար իմացությունը, մյուս կողմից՝ նվազագույն թվով նախնական հասկացությունների ու հարաբերակցությունների կիրառմամբ այդ նպատակին հասնելը»:

Էյնշտեյնը ծանոթ չէր դիալեկտիկական մատերիալիզմին: Ֆ. Էնգելսի Բնության դիալեկտիկա և Վ. Ի. Լենինի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ հիմնարար աշխատությունները հրապարակվել են հարաբերականության տեսության ստեղծումից հետո: Սակայն Էյնշտեյնի խոր քննադատական մտածելակերպը, նրա բոլորանվիրությունը գիտությանը, նրա մշտական ձգտումը դեպի օբյեկտիվ գիտելիքը գործնականորեն ու բնականաբար նրան հասց-

րին դիալեկտիկական մատերիալիզմի մի շարք դրույթներին այն չափով, որչափով այդ մեթոդը գիտական ճանաչողության մեթոդ է:

Այդ չէր կարող լինել առանց նրա կողմից փիլիսոփայության հիմնավոր ուսումնասիրության: Երիտասարդ տարիներին, երբ նա սովորում էր Ցյուրիխի բարձրագույն պոլիտեխնիկական ուսումնարանում և հատկապես ավելի ուշ՝ Բեռնի արտոնագրերի բյուրոյում աշխատելիս, Էյնշտեյնը սիստեմատիկաբար զբաղվում էր փիլիսոփայական երկերի ուսումնասիրությամբ: Նա և իր երկու բարեկամները՝ փիլիսոփա Մորիս Սոլովինը և մաթեմատիկոս Կոնրադ Հաբիխտը, կազմեցին փիլիսոփայական խմբակ, որն անվանեցին «Օլիմպոս ակադեմիա»: Իր գործունեության ավելի քան երեք տարիների ընթացքում (1902—1905 թթ.) «Օլիմպոս ակադեմիան», որի պրեզիդենտն էր Ա. Էյնշտեյնը, մեծ դեր խաղաց նրա աշխարհայեցողության զարգացման գործում: Էռնստ Մախի Զգայությունների վերլուծությունը, Կարլ Պիրսոնի Գիտության քերականությունը, Ջոն Ստ. Միլի Տրամաբանությունը, Դավիթ Հյումի Մարդու բնության մասին տրակտատը, Բենեդիկտ Սպինոզայի Էթիկան, Պլատոնի Երկխոսությունը, Ռիխարդ Ավենարիուսի Զուտ փորձի քննադատությունը, Անրի Պուանկարեի Գիտություն և հիպոթեզը— ահա «ակադեմիկոսների» ուսումնասիրած փիլիսոփայական աշխատությունների ոչ լրիվ թվարկը: Բացի «Ակադեմիայի» պարապմունքներից, Էյնշտեյնի փիլիսոփայական հայացքների ձևավորման մի այլ կարևոր աղբյուր էր նրա բարեկամությունը Է. Մախի փիլիսոփայությանը քաջատեղյակ ինժեներ-մեխանիկ Միքելանջելո (Միշել) Բեսոյի հետ: Այդ տարիներին Էյնշտեյնի ուսումնասիրած փիլիսոփայական աշխատությունների ցանկը համընկնում է այն աշխատությունների ցանկին, որոնց քննադատական վերլուծությունը տրվեց քիչ ավելի ուշ Վ. Ի. Լենինի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ գրքում: Պատահական զուգադիպություն չէ այդ: Թվարկված աշխատություններն իրոք այն ժամանակ հանրաճանաչ էին և հենց դրանցում էր, որ, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ «Մարքսիստ լինել ցանկացող մի ամբողջ շարք գրողներ» գաղափարական հիմքեր գտան «նորագույն պոզիտիվիզմի» տեսակետից մատերիալիզմը հերքելու համար (տե՛ս ԵԼԺ, հ. 18, էջ 9, 10):

Էյնշտեյնի վրա, որպես գիտության պատմության և փիլիսոփայության մեջ օբյեկտիվորեն գոյություն ունեցող աշխարհի գիտական ճանաչման մեթոդը փնտրող մարդու, հիշյալ աշխատությունները ազդեցին բոլորովին այլ ուղղությամբ: 1949 թվականին լույս տեսած ինքնակենսագրական նոթերում Էյնշտեյնը գրում է. «Մաքսվելը և Հերցը իրենց տեսական մտածողության մեջ մեխանիկան համարել են ֆիզիկայի հուսալի հիմքը, թեև պատմական հեռանկարում պետք է ընդունել, որ հենց նրանք են խախտել վստահությունը մեխանիկայի նկատմամբ՝ որպես ողջ ֆիզիկական մտածողության հիմքերի հիմքի: Էռնստ Մախը իր մեխանիկայի պատմության մեջ սասանեց այդ դոգմատիկ հավատը. ինձ՝ ուսանողիս վրա այդ գիրքը խորապես ազդեց հենց նշված իմաստով: Մախի իրական մեծությունը ես համարում եմ նրա անշահախնդիր կասկածամտությունը և անկախությունը: Երիտասարդության տարիներին ինձ վրա ուժեղ տպավորություն գործեց նաև Մախի իմացաբանական դիրքորոշումը, որն իր էական կետերով այսօր անհիմն է թվում ինձ»:

Նյուտոնյան մեխանիկայի բացարձակ ժամանակի և բացարձակ տարածության հասկացությունների ապրիորի քննադատությունն արդեն կար Մախի հիշյալ Մեխանիկայի մեջ, որտեղ նա նյուտոնյան բացարձակ տարածության և բացարձակ ժամանակի հասկացությունները անվանում է «հուսահատ մտքի պտուղներ»: Ըստ Մախի, «բացարձակ ժամանակը» չի կարող չափվել շարժման երևույթների մեջ, ուստի և հանդիսանալով «պարապ մտահնարանք», «մետաֆիզիկական» հասկացություն, զուրկ է ինչպես պրակտիկ, նույնպես և տեսական արժեքից: Մախի մահվան առիթով հրապարակած իր Էռնստ Մախ հոդվածում Էյնշտեյնը գրել է. «Մախը պարզորոշ հասկանում էր դասական մեխանիկայի թույլ կողմերը և հեռու չէր հարաբերականության ընդհանուր տեսությանը հանգելուց... Շատ հավանական է, որ Մախը կկարողանար ստեղծել հարաբերականության ընդհանուր տեսությունը, եթե այն ժամանակ, երբ նա դեռ հոգով երիտասարդ էր, ֆիզիկոսներին հուզեր այն հարցը, թե ինչպես պետք է հասկանալ լույսի արագության հաստատունությունը: Մաքսվելի—Լորենցի էլեկտրադինամիկայից բխող՝ լույսի արագության հաստատունության փաստով չհետաքրքրվելու պայմաններում Մախի՝ քննադատության պահանջմունքը բավարար չեղավ, որպեսզի նա զգար տարածականորեն անջատ պատահարների միաժամանակության սահմանման անհրաժեշտությունը»:

Միաժամանակության հասկացության և ժամանակի ու երկարության միջակայքերի չափման պրոցեսների խոր վերլուծությունը, որը Մաքսվելի—Լորենցի էլեկտրադինամիկայի հետևությունները հաշվի առնելով կատարել է Էյնշտեյնն իր հարաբերականության տեսության հիմունքները ձևակերպելիս, ելնում է



Մախի իմացաբանության հետ ընդհանուր մեկնակետ ունեցող այն նախադրյալից, թե տեսությունը պետք է գործառնի անմիջական փորձնական ստուգմանը մատչելի հասկացություններ:

Դրանով էլ փաստորեն և ըստ էության ըսպառվում է Մախի ազդեցությունը հարաբերականության տեսության ձևավորման վրա: Հենց այդ, Լենինի արտահայտությամբ, «...իմացության գծիկներից, կողմերից, երեսակներից մեկի» (Երկեր, հ. 38, էջ 460), Մախի կողմից միակողմանի, չափազանցված, ...զարգացումն է մինչև բնությունից կտրված աբսոլյուտը: Էյնշտեյնի համար հիշյալ դրույթները սոսկ բաղադրամաս են ծառայել մատերիական բնության էական կողմերն արտացոլող խոր գիտական և այդ պատճառով իսկ խոր մատերիալիստական տեսության ստեղծման համար:

Ֆիզիկայի մեջ Էյնշտեյնի ներդրած այն դրույթը, որ տեսությունը պետք է գործառնի անմիջական փորձնական ստուգմանը մատչելի հասկացություններ, մեթոդոլոգիական մեծ ազդեցություն է գործել XX դարի բնական գիտությունների զարգացման վրա: Սակայն հարաբերականության տեսության սահմանման ժամանակ արդեն՝ 1911—1916 թվականներին, Էյնշտեյնը նկատում է, որ այդ դրույթն ակընհայտորեն պարզունակացնում է ինչպես գիտական, նույնպես և տեսական-իմացաբանական պրոբլեմները: Ժամանակակից տեսական ֆիզիկայում նոր ապացույցները հաստատեցին այդ դրույթը: Օրինակ՝ տարրական մասնիկների կառուցվածքի փորձարարական շատ փաստեր մեկնաբանող մոդելներից մեկում բոլոր մասնիկները կազմված են քվարկներից, որոնք, սակայն, ազատ վիճակում սկզբունքորեն դիտարկելի չեն:

Էյնշտեյնի վրա Մախի ազդեցության արտաքին դրսևորումները բարդ ու ժամանակի մեջ փոփոխվող պրոցես են եղել: Հայտնի է, որ Մախը ողջունեց հարաբերականության տեսության մասին Էյնշտեյնի՝ 1905 թ. հրապարակված հիմնարար աշխատությունը: Իր 1909 թ. լույս տեսած Էներգիայի պահպանումը գրքի առաջաբանում Մախը գրել է. «Ես ստորագրում եմ հարաբերականության սկզբունքի տակ, որին հաստատ հետևել եմ իմ Մեխանիկայում և Ջերմության տեսությունում»: Բայց արդեն 1913 թվականին Ֆիզիկական օպտիկայի սկզբունքները գրքի առաջաբանում (լույս է տեսել 1921 թվականին՝ Մախի մահվանից չորս տարի հետո) Մախը գրել է. «Ես որոշակի պետք է հայտարարեմ, որ ռելյատիվիստների (իմա՝ հարաբերականության տեսության կողմնակիցների:— Ա. Ա.) նախահայրը չեմ, քանի որ ժխտում եմ ժամանակակից դպրոցի կամ եկեղեցու ատոմիստական դոկտրինան... Այդ բանի պատճառների և այն մասին, թե ո՛ր չափով եմ ես ժխտում ժամանակակից հարաբերականության տեսությունը, որը, իմ կարծիքով, ավելի ու ավելի դոգմատիկ է դառնում, կշարադրվի հետագայում»:

Էյնշտեյնի հայացքները Մախի ուսմունքի վերաբերյալ նույնպես էական փոփոխություններ են կրել: Հարաբերականության հատուկ տեսության ստեղծմանն անմիջապես հաջորդած ժամանակաշրջանում Էյնշտեյնը, նկատի ունենալով ճանաչողության տեսության բնագավառում իր հայացքների ակունքները, գրել է. «Ոչ ոք չի կարող ժխտել, որ ճանաչողության տեսության հետազոտողներն ուղի են հարթել այստեղ: Ինչ վերաբերում է անձամբ ինձ, ապա ես համենայն դեպս գիտեմ, որ ուղղակի թե անուղղակի շատ բան եմ վերցրել Հյումից և Մախից»:

Այդ իսկ շրջանին են վերաբերում Էյնշտեյնի ու Մախի նամակագրությունը և հանդիպումը, որը, ինչպես կարծում են Էյնշտեյնի կենսագիրները, փոքր-ինչ մեղմել է այն ժամանակ արդեն նրանց միջև եղած հակասությունները: Ծանոթանալով հարաբերականության տեսության մասին Մախի վերը բերված կարծիքին, 1922 թվականին Փարիզի փիլիսոփայական ընկերությունում կարդացած իր դասախոսության մեջ Էյնշտեյնը Մախին բնութագրում է որպես «լավ մեխանիկ», բայց «խղճուկ փիլիսոփա»: 1938 թվականին Սոլովինին ուղղած նամակում Էյնշտեյնը գրել է. «Եթե Մախի ժամանակներում հսկայական վնաս էր բերում այն ժամանակ տիրապետող դոգմատիկ մատերիալիզմի տեսակետը, ապա մեր օրերում գերակշռում է սուբյեկտիվիստական և պոզիտիվիստական տեսակետը: Այդ տեսակետի կողմնակիցները հայտարարում են, թե բնությունը որպես օբյեկտիվ ռեալություն դիտելը հնացած նախապաշարմունք է»:

Էյնշտեյնի իմացաբանական կոնցեպցիան համեմատաբար հանգամանորեն է շարադրված 1952 թ. մայիսի 7-ին Սոլովինին գրած նամակում. «Ինչ վերաբերում է իմացաբանական հարցերին, ապա Դուք ինձ ամենևին չեք հասկացել: Հավանաբար, ես վատ եմ բացատրել իմ տեսակետը: Սխեմատիկորեն այդ հարցերը ես պատկերացնում եմ այսպես.




1. Մեզ տրված են E— մեր զգայական փորձի անմիջական տվյալները:

2. A-ն այն աքսիոմաներն են, որոնցից մենք բխեցնում ենք հետևություններ:

Հոգեբանորեն A-երը հիմնված են E-երի վրա: Բայց E-ից դեպի A տրամաբանական ոչ մի ուղի գոյություն չունի: Կա միայն ինտուիտիվ (հոգեբանական) կապ, որը մշտապես «վերսկսվում է»:

3. A աքսիոմաներից տրամաբանորեն բխեցվում են մասնավոր պնդումները՝ S-երը, որոնք կարող են հավակնել խստության:

4. S պնդումները բաղդատվում են E-ին (ստուգվում փորձով): Խիստ ասած՝ այդ արարողությունը վերաբերում է արտատրամաբանական (ինտուիտիվ) ոլորտին, քանի որ S-ի մեջ պարունակվող հասկացությունների հարաբերությունը E զգայական փորձի անմիջական տվյալներին իր բնույթով ոչ տրամաբանական է: Բայց S-ի և E-ի միջև հարաբերությունը (պրագմատիստական տեսակետից) ավելի քիչ անորոշ է, քան հարաբերությունը A-ի և E-ի միջև (օրինակ՝ «շուն» հասկացությունը և դրան համապատասխանող զգայական փորձի անմիջական տվյալները): Եթե այդ հարաբերությունները հույժ հավաստիությամբ սահմանել հնարավոր չլիներ (թեպետ զուտ տրամաբանական ճանապարհով անկարելի է այդ), ապա տրամաբանության ողջ ապարատը ոչ մի նշանակություն չէր ունենա «իրականությունը ճանաչելու» համար» (А. Эйнштейн. Собр. научных трудов, т. 4, стр. 569—570):

Այս միտքը համեմատելով Վ. Ի. Լենինի հանրահայտ դրույթի հետ՝ «Կենդանի հայեցողությունից դեպի աբստրակտ մտածողություն և դրանից դեպի պրակտիկան՝ ա՛յս է ճշմարտության իմացման, օբյեկտիվ ռեալության իմացության դիալեկտիկական ուղին» (Երկեր, հ. 38, էջ 205), տեսնում ենք, որ եթե վերանանք տերմինների որոշակի երկմտելիությունից, որը, ի դեպ, բնորոշ է Էյնշտեյնի իմացաբանական շատ ասույթներին ու դրույթներին, այն ցույց է տալիս Էյնշտեյնի ճանաչողության տեսության մատերիալիստական բնույթը: Ընդ որում, նա հատկապես շեշտում է հետազոտողի համար հարցի կարևոր կողմը՝ արտաքին բնության հետ, փորձի հետ մեր հասկացությունների ու դրանցից բխող հետևությունների ուղղակի և հետադարձ կապերի մոտավոր բնույթը: «Երբեք հնարավոր չէ հասկացությունը տրամաբանորեն, անաղարտ կերպով բխեցնել փորձից»,— գրել է Էյնշտեյնը Սոլովինին, 1953 թ.: «Ողջ բնագիտության հիմքում ընկած է սուբյեկտի ընկալումներից անկախ արտաքին աշխարհի գոյությանը հավատալը»,— գրել է Էյնշտեյնը 1931 թ. Մաքսվելի ազդեցությունը ֆիզիկական ռեալության մասին պատկերացումների զարգացման վրա հոդվածում: Այնուհետև ասված է. «ֆիզիկական ռեալության մասին մեր պատկերացումները այնտեղ երբեք չեն կարող վերջնական լինել: Մենք միշտ պետք է պատրաստ լինենք փոխելու այդ պատկերացումները, այսինքն՝ փոխելու ֆիզիկայի աքսիոմատիկ բազան, որպեսզի տրամաբանորեն հիմնավորենք ընկալման փաստերն ամենաժամանակակից եղանակով: Եվ իրոք, ֆիզիկայի զարգացման պատմության վրա նետված ամենաթռուցիկ հայացքն իսկ ցույց է տալիս, որ դրա աքսիոմատիկ հիմքը ժամանակի ընթացքում խոր փոփոխություններ է կրում»:

Հիշենք հարաբերական և բացարձակ ճշմարտության լենինյան հայտնի սահմանումը. «...մարդկային մտածողությունն իր բնույթով ընդունակ է տալու և տալիս է մեզ բացարձակ ճշմարտություն, որը կազմվում է հարաբերական ճշմարտությունների գումարից: Գիտության զարգացման յուրաքանչյուր աստիճան նոր հատիկներ է ավելացնում բացարձակ ճշմարտության այս գումարին, բայց յուրաքանչյուր գիտական դրույթի ճշմարտության սահմանները հարաբերական են, քանի որ մերթ



լայնանում, մերթ նեղանում են գիտելիքի հետագա աճման հետևանքով» (ԵԼԺ, հ. 18, էջ 166): «Մարքսի և Էնգելսի մատերիալիստական դիալեկտիկան իր մեջ անպայման պարունակում է ռելյատիվիզմ, բայց չի հանգում դրան, այսինքն՝ ընդունում է մեր բոլոր գիտելիքների հարաբերականությունը ոչ թե օբյեկտիվ ճշմարտության ժխտման իմաստով, այլ այդ ճշմարտությանը մեր գիտելիքների մոտենալու սահմանների պատմական պայմանականության իմաստով» (տե՛ս նույն տեղը, էջ 169): Հարաբերական և բացարձակ ճշմարտության մասին դիալեկտիկական մատերիալիզմի այս դրույթի համեմատությունը Ա. Էյնշտեյնի վերը բերված քաղվածքների, ինչպես և նրա մեթոդաբանական դրույթների հետ առհասարակ, վկայում է, որ այս հարցում նա մոտենում է դիալեկտիկական մատերիալիզմին՝ ի տարբերություն ռելյատիվիստներ Մախի, Ավենարիուսի և Պեւոցոլդի, որոնց համար «Ռելյատիվիզմը, որպես իմացության տեսության հիմք, ո՛չ միայն մեր գիտելիքների հարաբերականության ընդունումն է, այլև ժխտումը որևէ օբյեկտիվ, մարդկությունից անկախ գոյություն ունեցող տիպարի կամ մոդելի, որին մոտենում է մեր հարաբերական իմացությունը» (տե՛ս նույն տեղում, էջ 168—169): Էյնշտեյնի համար «...այն, ինչը մենք գիտություն ենք անվանում, հետապնդում է մեն մի նպատակ. այն բանի հաստատումը, ինչն իրոք գոյություն ունի»: Իրականում ոչ մի ժամանակ և ոչ մեկին չի հաջողվել իրոք արդյունավետ ու խոր տեսություն գտնել զուտ մտահայեցողության ճանապարհով,— գրել է նա Բեսոյին 1918 թվականին, ի պատասխան այն դիտողության, թե իբր հարաբերականության տեսությունն ստեղծելիս տեսականացումը գերազանցում էր գիտափորձին: «Ռեալության ամբողջ իմացությունը ելնում է փորձից և վերադառնում է նրան»:

Թվում է, թե այս ողջ շարադրվածը տեղ չի թողնում հարաբերականության տեսությունը և դրա ստեղծողին դիալեկտիկական մատերիալիզմին հակոտնյա փիլիսոփայության ակտիվի մեջ ներառնելու համար: Այնուամենայնիվ, այդպիսի փորձեր կատարվել են: Հարաբերականության տեսության ու դրա ստեղծողի մեթոդոլոգիայի այդպիսի սխալ մեկնաբանությունների որոշ իմացաբանական պատճառներ բերված են, մասնավորապես, Դ. Պ. Գրիբանովի վերջերս հրատարակված բովանդակալից աշխատությունում (Д. П. Грибанов. Материализм и диалектика в научном творчестве А. Эйнштейна, М., «Знание», 1979) և Բ. Գ. Կուզնեցովի ավելի վաղ լույս տեսած գրքում (Б. Г. Кузнецов. Эйнштейн. Жизнь, смерть, бессмертие. М. «Наука», 1972):

Նման մեկնաբանությունների հիմնական պատճառը Էյնշտեյնի աշխարհայեցողության անհետևողականությունն է: Նա լիովին ծանոթ չէր դիալեկտիկական և մանավանդ պատմական մատերիալիզմին՝ որպես փիլիսոփայական սիստեմի: Գիտնական հետազոտողի նրա ուսումնասիրությունները հանգեցրել էին դիալեկտիկական մատերիալիզմի մի շարք դրույթների իմացության, որոնք օբյեկտիվ գիտելիքի գիտական որոնման նրա ստեղծագործական մեթոդի անհրաժեշտ տարրերն էին: Սոցիալական դրությունը, շրջապատը թույլ չեն տվել նրան վեր բարձրանալ բուրժուական առաջադեմ մտավորականի, իր բարեկամներից մեկի խոսքերով՝ «տիպիկ զգացմունքի սոցիալիստի» դիրքից: Հենց դրա հետևանք են մի շարք դեպքերում դրսևորվող նրա անհետևողականությունը, ձևակերպումների ու դրույթների անճշտությունն ու թերասվածությունը, նրա փոխառությունները իդեալիստական սիստեմներից և, հատկապես, Մախից:

Ֆիզիկական պրոբլեմները ձևակերպելու Էյնշտեյնի շարադրանքի ոճը աչքի է ընկնում իր հստակությամբ ու որոշակիությամբ: Նույնը նա պահանջում էր նաև մյուս գիտնականներից: «Այն աշխատությունների թվում, որոնք ես երեկոները կարդում եմ քրոջս,— գրում է նա Սոլովինին,— կային նաև Արիստոտելի փիլիսոփայական որոշ գործեր: Անկեղծ ասած՝ ես հիասթափված էի: Եթե դրանք այդքան մշուշապատ ու խճճված չլինեին, այդպիսի փիլիսոփայության նմուշները չէին կարող այդքան երկար գոյություն ունենալ»: Ուստի, հասկացությունների ու սահմանումների անհստակությունը, որ բնորոշ է Էյնշտեյնի տեսական-իմացաբանական հայացքների արտահայտմանը, ոճի թերություն չէ: «Նա այն կարծիքին էր, թե բնագետ գիտնականը ճանաչողության տեսության մեջ ձգտելով իր հայացքների սիստեմատիկության, չի կարող թույլ տալ իրեն այնքան հեռու գնալ, որքան փիլիսոփան», գրում է Ֆ. Գերնեկը իր Ալբերտ Էյնշտեյն աշխատությունում: «Իբրև բնագետ, Էյնշտեյնն իրեն իրավունք է վերապահել ընդունել եղած փիլիսոփայական սիստեմներից որոշ մասեր, որոնք արժեքավոր էին թվում իր հետազոտական աշխատանքների համար...»:

Կրկին անդրադառնանք Սոլովինին գրած նամակից մեջբերված իմացաբանական հարցերին վերաբերող հատվածին: Առաջին կետը դիալեկտիկական մատերիալիզմին ծանոթ մարդու մոտ տարակուսանք չի հարուցում: Անդրադառնանք երկրորդ կետի վերջին մասին. «Բայց E-ից դեպի A տրամաբանական

ոչ մի ուղի գոյություն չունի: Կա միայն ինտուիտիվ (հոգեբանական) կապ, որը մշտապես «վերսկսվում» է»: «Հոգեբանություն» բառն անկասկած վերցված է Մախի փիլիսոփայությունից: Փակագծում առնված այդ բառը համարժեք չէ «ինտուիտիվ» հասկացությանը: Իր հերթին «ինտուիտիվ» հասկացությունը որևէ տրամաբանական ուղու բացակայության վերաբերյալ առաջին նախադասության վերծանումը չէ: Հիրավի, «ինտուիտիվ» նշանակում է փորձի տվյալների և դրանք ընդհանրացնող աքսիոմաների միջև տրամաբանորեն հնարավոր կապերից մեկնումեկին նախապատվություն տալու գիտնականի ունակությունը: Այդպես եղավ Էվկլիդեսի երկրաչափության՝ զուգահեռներին վերաբերող աքսիոմայի հետ. մի օրինակ, որը քաջ հայտնի էր Էյնշտեյնին. նա մանկուց հիացմունքով ուսումնասիրել էր էվկլիդեսյան երկրաչափությունը և ավելի ուշ՝ հարաբերականության ընդհանուր տեսության ստեղծման ժամանակ, ստիպված եղավ այն անբավարար համարել՝ գրավիտացիոն զանգվածներին մոտ գտնվող տարածության հատկությունները նկարագրելու համար, և փոխարինել այն Ռիմանի երկրաչափությամբ, որտեղ զուգահեռների գաղափարը բոլորովին այլ իմաստ ունի:

Իրոք, տվյալ պահի համար գոյություն ունեցող էքսպերիմենտալ փաստերի միագումարը երբեք սպառիչ չափով լրիվ չի լինում նրա մեկնաբանության միանշանակության իմաստով, տեսության աքսիոմաների սահմանման և մանավանդ դրանց մաթեմատիկական արտահայտության միանշանակության իմաստով: Գիտնականի ինտուիցիայի դերն էլ դրսևորվում է առկա գիտափորձի տվյալների միագումարի հիման վրա բացարձակ ճշմարտությանն առավելապես մոտեցող հարաբերական ճշմարտությունը սահմանելիս:

Պարզ է, որ նման դեպքում դեր են խաղում նաև շատ գործոններ— գիտնականի պատրաստականությունը, նրա մտահորիզոնը, այս կամ այն գիտափորձի փաստի հարաբերական նշանակությունը սթափ գնահատելու ունակությունը, ի վերջո նաև գիտնականի հոգեբանությունը՝ բառիս սովորական, բնագիտական իմաստով: Ա. Էյնշտեյնի ստեղծագործության վերլուծությունը ցույց է տալիս, որ նա այդպես էլ վարվել է: Ավելին, մեջ բերված հատվածի չորրորդ կետի եզրափակիչ նախադասությունները համոզում են մեզ, որ՝ ճիշտ այդպես պետք է հասկանալ հատվածի երկրորդ կետի ոչ հստակ արտահայտությունները:

Այդուհանդերձ, բերված դրույթներն արժեքավոր են նրանով, որ մեր ուշադրությունը սևեռում են գիտական ճանաչողության հենց այն պահերի վրա, որոնցում կարող է գիտության մեջ ծնվել նորը. այդպիսի պահերն են գիտափորձի տվյալների հիման վրա աքսիոմաների ու հասկացությունների սահմանման պրոցեսը և աքսիոմաներից տրամաբանորեն բխող եզրակացությունները փորձի տվյալների հետ բաղդատելու պրոցեսը:

Հասկացությունների և փորձնական տվյալների հենց այդ շփման կետերի խոր ու մանրակրկիտ վերլուծության արգասիք են և՛ հարաբերականության հատուկ տեսությունը, և՛ հարաբերականության ընդհանուր տեսությունը, և՛ ժամանակակից բնագիտության էապես նոր ամեն մի տեսություն:

Շարադրելով իր հետազոտությունների պատմությունը՝ Էյնշտեյնը գրել է. «Արդեն ձեռք բերված գիտելիքի լույսի տակ այն, ինչը բարեբախտաբար գտնվել է, թվում է համարյա ծամծմված մի բան, և ամեն մի մտածող ուսանող յուրացնում է այն առանց հատուկ դժվարության: Բայց տարիներ շարունակ մթության մեջ խարխափելով կատարվող որոնումն իր լարված սպասումներով, վստահության և հուսահատության իր փոփոխակի պահերով և հստակության անվերջանալի փայլատակումներով՝ այս ամենը գիտե միայն նա, ով ինքն է այդ ապրել»: Մի այլ տեղ նա ասել է. «Այժմ ես գիտեմ, թե ինչու այնքան շատ մարդիկ բավականություն են գտնում փայտ կոտրելու մեջ: Այդ աշխատանքը կատարելիս անմիջապես տեսնում ես գործիդ արդյունքը»:

Մի անգամ Էյնշտեյնի կրտսեր որդին հորը հարցրել է. «Հայրի՛կ, ինչո՞ւ ես դու իսկապես այդքան հռչակավոր»: Էյնշտեյնը սկզբում ծիծաղել է, ապա լրջորեն բացատրել. «Գիտե՞ս, երբ կույր բզեզը շարժվում է գնդի մակերեսով, նա չի նկատում, որ իր անցած ուղին կոր է, իսկ իմ բախտը բերեց. ես նկատեցի այդ»:

---

# ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՎԱՏԱՐԻՄ ԶԱՎԱԿԸ

## (ԱՐՇԱՎԻՐ ՄԵԼԻՔՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



**ԱՆՆԿՈՒՆ ԲՈԼՇԵՎԻԿ** Արշավիր Մելիքյանը փայլուն հրապարակախոս էր, մարքսիստ տեսաբան, էնցիկլոպեդիստ գիտնական. իր հարուստ գիտելիքները ի սպաս էր դնում աշխատավոր զանգվածների ազատագրության վեհ գործին:

Արշավիր Մելիքյանը ծնվել է Նախիջևանում: Հայրը՝ Միքայել Մելիքյանը, Դարալագյազի գավառի Փաշալու գյուղից էր, մայրը՝ Աննա Մելիք-Շահնազարյանը՝ Ագուլիսից: Ծնողները գրագետ, կրթված մարդիկ էին և իրենք էլ զբաղվել են որդու նախնական կրթությամբ, ապա խոստումնալից պատանուն տեղավորել Երևանի արական գիմնազիայում:

Տակավին վաղ հասակից աչքի են զարնում նրա արտակարգ ընդունակությունները ու լայն հետաքրքրությունները: Արշավիր Մելիքյանն ընդունակ էր ինչպես հասարակագիտական առարկաների, նույնպես և ճշգրիտ գիտությունների ասպարեզում: Երևանի արական գիմնազիան ավարտելուց հետո նա որոշում է խորանալ իրավագիտության մեջ: Սակայն մեկ տարի Խարկովի համալսարանի իրավագիտության ֆակուլտետում սովորելուց հետո փոխադրվում է նույն համալսարանի ֆիզիկամաթեմատիկական ֆակուլտետը: Ճիշտ է, նա հետագայում այդ ուղղությամբ կրթությունը չի շարունակում, բայց ուսումնառության այդ տարիները զուր չեն անցնում. զարգանում են նրա միտքն ու տրամաբանելու ձիրքը:

Արգասավոր էին Արշավիր Մելիքյանի համալսարանական ուսումնառության տարիները: Խարկովի սոցիալ-դեմոկրատների հետ նա ակտիվ մասնակցում է ուսանողական ցույցերի կազմակերպմանը, տարածում մարքսիստական կոչեր ու գաղտնի գրականություն, հատուկ հանձնարարականով լինում Բաքվում և Կիևում: 1901 թվականի դեկտեմբերին Ռիգայում հրավիրված հեղափոխական ուսանողության համագումարի պատվիրակ էր նա: Այստեղ էլ ծանոթանում է Ստեփան Շահումյանի հետ:

Նրան վիճակված չէր ավարտել Խարկովի համալսարանը: Ցարական իշխանությունները շուտով բանտարկում են նրան և վեց ամիս բանտում պահելուց հետո արտաքսում և զրկում համալսարանական քաղաքներում բնակվելու իրավունքից: «...Ռուսաստանում ավարտել սաղ-սալամաթ չի կարելի, կամ պետք է բանտի, աքսորի փայ դառնաս, կամ թե չէ, պետք է բարոյապես փչանաս, մեռնես, որ չզգաս քո շուրջը կատարվող բարբարոսությունները»,— Շահումյանի նման մտորում էր Արշավիր Մելիքյանը: Մեկ տարի Կովկասում մնալուց հետո Մելիքյանը մեկնում է արտասահման՝ Շվեյցարիա: Սկզբում նա սովորում է Ցյուրիխի համալսարանի փիլիսոփայական, ապա Նյուշատելի ակադեմիայի գրական ֆակուլտետներում: Արտասահմանում նա ապրում է մոտ 9 տարի և այդ ժամանակամիջոցում վերջնականորեն ձևավորվում է նրա մարքս-լենինյան աշխարհայացքը, որին մեծ չափով նպաստում են նրա կապերը ռուսական և եվրոպական ականավոր սոցիալ-դեմոկրատների հետ: Նրան լավ ճանաչում էին Վ. Ի. Լենինը,

Գ. Վ. Պլեխանովը, Ա. Վ. Լունաչարսկին, Կարլ Լիբկնեխտը, Ժան Ժորեսը, Ավգուստ Բեբելը, Ռոզա Լյուքսեմբուրգը և ուրիշներ: 1901 թվականից սոցիալ-դեմոկրատ Արշավիր Մելիքյանը, ՌՍԴԲԿ II համագումարից անմիջապես հետո, հարում է բոլշևիկներին, իսկ 1906 թվականին գինվորագրվում լենինյան կուսակցությանը:

Արտասահմանում եղած ժամանակ նա ծանոթանում է անտիկ փիլիսոփայության պատմությանը, ընդհանուր փիլիսոփայությանը, ֆրանսիական, իտալական, անգլիական և գերմանական դասական գրականությանը, ուսումնասիրում Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները: Արշավիր Մելիքյանը հեղափոխական աշխատանք է ծավալում Ցյուրիխում և Նյուշատելում, սակայն, լինելով վերին աստիճանի համեստ ու խստապահանջ, իր գործունեության մասին շատ քիչ բան է գրել ինքնակենսագրականում. «Ես դարձյալ ընտրվեցի Ցյուրիխի կուսակցական կազմակերպության քարտուղար»: Դա 1910 թվականին էր:

Արտասահմանում գտնվող ականավոր բոլշևիկ գործիչները Մելիքյանին համարում էին լավագույն մարքսիստ տեսաբան, լիովին վստահում ու բարձր գնահատում նրա կարծիքը իրենց աշխատությունների վերաբերյալ: Լինելով արտակարգ ընդունակ՝ արտասահմանում ուսանելիս նա ազատ տիրապետում է գերմաներենին, ֆրանսերենին, լատիներենին, գիտեր անգլերեն, իտալերեն: Մելիքյանն ազատ օգտվում է հին հունական գրականությունից, մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատություններն ու համաշխարհային գրականության լավագույն նմուշները կարդում և ուսումնասիրում է բնագրերով:

Համակողմանի գիտելիքներ ամբարած, կուռ աշխարհայացքով, բոլշևիզմի գործի հաղթանակի նկատմամբ աներեր հավատով Արշավիր Մելիքյանը 1911 թվականի վերջերին վերադառնում է Երևան: Այստեղ Գայանյան օրիորդաց դպրոցում նա դասավանդում է ռուսաց լեզու և գրականություն, Ռուսաստանի ու Հայաստանի պատմություն:

Նույն թվականի նոյեմբերին «Նոր ձայն» գրական-հասարակական շաբաթաթերթում Մելիքյանը հանդես է գալիս Լև Տոլստոյի մահվան տարեդարձի առիթով գրած Անցել է մեկ տարի հոդվածով և Ե. Ֆրանգյանի՝ Ն. Կ. Միխայլովսկին որպես փիլիսոփա-սոցիոլոգ գրքի գրախոսականով: Երկրորդում, սարկաստիկ ծաղրելով Ե. Ֆրանգյանին, նա գրում է. «Ճատերը, որոնց թվին պատկանում է և պ. Ֆրանգյանը, կարծում են, թե մարքսիզմը Եզոպոսի առյուծի պես այնքան ծերացել և հյուծվել է, որ ամեն ոք կարող է, առանց պատժված լինելու, աքացիներ տալ նրան որքան կամենում է» («Նոր ձայն», № 8, 1911 թ.): Այդպիսիներին նա խորհուրդ է տալիս մարքսիզմը քննադատելու փոխարեն ուսումնասիրել այն: Մելիքյանն իր գրախոսականին բնաբան էր ընտրել Կռիլովի առակի հայտնի խոսքերը. «Դժբախտություն է, երբ կոշկակարն սկսում է կարկանդակ թխել, իսկ կարկանդակ թխողը՝ կոշկակարություն անել»:

1913 թվականի օգոստոսին, երբ գերմանական և միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչ Ավգուստ Բեբելի մահվան բոթը հասնում է Երևան, Արշավիր Մելիքյանը գրիչ է վերցնում և իր խոր վիշտը հանձնում թղթին: Նա հայ ընթերցողին է ներկայացնում արտակարգ ընդունակությունների, բնական մեծ խելքի տեր այդ մարդուն, համարելով նրան անզուգական ճարտարախոս, որն իր ատենաբանական հանճարն ու գրիչը ծառայեցնում էր բանվոր դասակարգին կազմակերպելու և նրա միջոցով ցանկալի ապագան իրականացնելու նվիրական գործին:

1913 թվականի դեկտեմբերի 30-ին Երևանում լույս է տեսնում «Խոսք» տեսական-հասարակական շաբաթաթերթի առաջին համարը՝ Արշավիր Մելիքյանի խմբագրությամբ: Լրագրի էջերում հանդիպում ենք նրա գրչին պատկանող քաղաքական բնույթի բազում հոդվածների, որոնցում լուսաբանված են հեղափոխությունում պրոլետարիատի հեգեմոնիայի, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի անհրաժեշտության և այլ հարցեր:

«Խոսք» լրագրի 17-րդ համարը բռնագրավվում է հակակառավարական ուղղության համար, իսկ խմբագիր Արշավիր Մելիքյանը դատի է տրվում: Վերոհիշյալ համարի խմբագրականում, որը գրել էր Մելիքյանը, մեծ պաթոսով կոչ էր արվում հեղափոխական ճանապարհով տապալել գոյություն ունեցող կարգերը: Արտացոլելով երկրում տիրող մղձավանջային վիճակը, ցույց տալով նորի ծիլերը՝ «Խոսքն» իր ընթերցողներին վառ հավատ էր ներշնչում ապագայի, սոցիալիզմի հաղթանակի նկատմամբ: «Կգան նոր ժամանակներ, կերևան նոր թռչուններ, կերգեն նոր երգեր»,— այլաբանորեն գրում էր թերթը: «Խոսքի» քաղաքական թեքումն իր վրա էր բևեռել ցարական գրաքննության ուշադրությունը, և 25 համար լույս տեսնելուց հետո այն արգելվում է:

Դաշնակցական ռեժիմի պայմաններում, 1918 թվականի սեպտեմբերի 22-ի կիրակի օրը կրկին հրատարակվում է «Խոսքը», և նորից Արշավիր Մելիքյանի խմբագրությամբ, բայց այս անգամ որպես Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բոլշևիկյան կուսակցության Երևանի կազմակերպության օրգան: Առաջին համարից իսկ թերթը ձեռքից-ձեռք է անցնում. կարդում են բոլորը՝ բանվորն ու գյուղացին, մտավորականն ու պետական պաշտոնյան: «Խոսքի» ճակատին գրված էր «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» նշանաբանը:

Լրագիրն առաջին իսկ համարից աշխատավորներին կողմնորոշում էր դեպի ազգային ու սոցիալական ազատության համար մղվող պայքարը: Երևանի բոլշևիկյան կազմակերպության կողմից Արշավիր Մելիքյանն ընտրվում է Հայաստանի պառլամենտի անդամ: 1918 թվականի օգոստոսից սկսած, նա փայլուն կերպով օգտագործում է պառլամենտական ամբիոնը՝ աշխատավոր զանգվածներին մոբիլիզացնելով ընդդեմ դաշնակցական կառավարության արտաքին ու ներքին քաղաքականության: Դաշնակցության դեմ մղված պայքարն անհնար է պատկերացնել առանց նրա քաղաքական նպատակամղված ելույթների թե՛ պառլամենտում և թե դրանից դուրս: 1918 թվականին «Խոսքի» մի քանի համարներում շարունակաբար լույս է տեսնում Մելիքյանի Ինչպե՞ս մտանք Հայաստանի հանրապետության պառլամենտ և ինչո՞ւ հեռացանք այնտեղից հոդվածաշարը, որտեղ նա զարգացնում է այն տեսակետը, թե պառլամենտը բոլշևիկների համար նպատակ չէր, ինչպես մյուս քաղաքական կուսակցությունների համար, այլ միայն հարմար միջոց, որի ամբիոնն օգտագործելով, բոլշևիկները հնարավորություն են ստանում լայն խավերի շրջանում տարածելու իրենց հասարակական-քաղաքական դավանանքներն ու սկզբունքները:

Թերթի առաջին համարում տպագրվել է ՌՍԴԲԿ Երևանի կազմակերպության բոլշևիկյան ֆրակցիայի դեկլարացիան: Այն գրել էր Արշավիր Մելիքյանը: Հայաստանի պառլամենտի միակ բոլշևիկ-անդամ Մելիքյանը պառլամենտի ամբիոնից ի լուր ամենքի հայտարարում է բոլշևիկյան կուսակցության քաղաքական դիրքորոշումը: Դեկլարացիայում նշվում էր, որ ամեն մի քաղաքական կուսակցություն պարտավոր է պարզ ու հստակ պատկերացնել իր շուրջը տիրող քաղաքական իրադրությունը: Այնտեղ ցույց էր տրվում Անդրկովկասի նկատմամբ օտարերկրյա իմպերիալիստների քաղաքականության ոճրագործ բնույթը և քննադատվում նրանց նվաճողական պլանները: Բոլշևիկյան ֆրակցիայի դեկլարացիան դաշնակցական քաղաքականության հետևանքով ստեղծված փակուղուց դուրս գալու ուղեցույց էր հայ աշխատավոր զանգվածների համար: Դրանով հայ ժողովրդին կոչ էր արվում իր լավագույն ապագան կռելու և կոփելու համար ապավինել Ռուսաստանի և ռուս ժողովրդի օգնությանը: Ռուսաստանը «...կապաքինվի ոչ հեռավոր ապագայում և կհընչեցնի իր զգաստացնող ձայնը»,— ասվում էր այնտեղ: Արծարծվում էին նաև տաճկահայերի վիճակի, հողը գյուղացուն տալու, 8-ժամյա աշխատանքային օրվա, խոսքի ազատության և այլ հարցեր:

«Խոսքի» էջերում լայնորեն պրոպագանդվում էին Վ. Ի. Լենինի աշխատությունները, Հոկտեմբերյան մեծ հեղափոխության գաղափարները և բանվորագյուղացիական Ռուսաստանի նվաճումները: Ռեֆերատի ձևով հայ ընթերցողին էին ներկայացվում Լենինի Պետություն և հեղափոխություն, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա աշխատությունները:

Մելիքյանը ջերմորեն սիրում էր հեղափոխության մեծ առաջնորդին, նրան բնութագրելով որպես «նորագույն ժամանակի բանվորական շարժման ամենախոշոր դեմքը», «պայքարող հոգու հսկա ու վեհապանծ Էվերեստ»:

Մեծ է Ա. Մելիքյանի երախտիքը մարքսիզմ-լենինիզմի դասականների՝ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի երկերը հայերեն թարգմանելու և խմբագրելու գործում: Խորագիտակ մարքսիստ հրապարակախոսը բացառիկ պոլեմիստ էր և մտքի սրությամբ ու կուռ տրամաբանությամբ զինաթափ էր անում իր հակառակորդներին: Նուրբ հումորով և խայթող լեզվով համեմված նրա հրապարակային ելույթներն անջինջ հետք են թողել ժամանակակիցների վրա: Բոլորի համար ավագ ընկեր էր նա, բանիմաց խորհրդատու: Մելիքյանը սպարտակյանների գաղափարական ուսուցիչն էր, ուղղություն տվողն ու դաստիարակը: Նրա տունը յուրօրինակ հավաքատեղի էր սպարտակյանների համար, իսկ հարուստ գրադարանը դրված էր նրանց տրամադրության տակ: Հաճախ են այնտեղ հավաքվել Ղուկաս Ղուկասյանը, Աղասի Խանջյանը, Արմենակ Բուդաղյանը և ուրիշներ, քննարկել նրա հետ իրենց պլանները, ծրագրերը, ընտրել ռեֆերատների, բանավեճերի թեմաներ:

1920 թվականին Արշավիր Մելիքյանը Մոսկվայում էր, ուր սկզբում ստանձնում է «Կոմունիստիչեսկի տրուդ» պարբերականի խմբագրի տեղակալի պաշտոնը, ապա որպես ռեֆերենտ աշխատում արտաքին գործերի ժողկոմատի մամուլի բաժնում:

Արշավիր Մելիքյանը «Խորհրդային Հայաստան», «Կարմիր աստղ» լրագրերի, «Նոր աշխարհ» ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամ էր, «Պրոլետար» թերթի խմբագիրը: Նա միաժամանակ 26 կոմիսարների անվան Անդրկովկասյան կոմունիստական համալսարանի դասախոս էր, Վրաստանի մարքսիստ

պատմաբանների ընկերության նախագահը:

Գիտամանկավարժական բեղմնավոր գործունեության համար 1932 թ. նա արժանանում է պրոֆեսորի կոչման:

1936 թվականին Թիֆլիսում, հայկական մշակույթի տանը, նա հրապարակային դասախոսություն է կարդում Րաֆֆու կյանքի ու գործունեության մասին: Բարձր գնահատելով Րաֆֆու գրական ժառանգությունը, Մելիքյանն ասում է, որ մեծանուն գրողին պետք է հանել մոռացության փոշուց, նրան պետք է մոտենալ նոր, պատմական առումով:

Տարիներ շարունակ Մելիքյանն զբաղվել է հայ հասարակական մտքի զարգացման պատմության հանգուցային հարցերի մշակմամբ:

Այժմ Հայկական ՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտում է նրա մի աշխատության ձեռագիրը, ուր տեսական ու քաղաքական արժեքավոր ընդհանրացումներով նա վերլուծել է «Փորձ» ամսագրի էջերում լույս տեսած հոդվածները:

Հայ մշակույթի անխոնջ մշակներից մեկը՝ Մելիքյանը, չէր գրում հավուր պատշաճի, այլ՝ ներքին մղումով, անկեղծ ներշնչանքով: Պահպանված նամակներն ու պայմանագրային թղթերը վկայությունն են նրա բեղմնավոր գրչի տակ շունչ առնող մի շարք աշխատությունների գոյության, որոնց մի մասը անավարտ է մնացել, իսկ մյուս մասը՝ մինչև օրս անհայտ:

Լայն էր նրա մտահորիզոնը, բազմակողմանի՝ արծարծած խնդիրները: Մարքս-լենինյան տեսության, կուսակցության պատմության, միջազգային բանվորական շարժման, փիլիսոփայության, գրականության ճանաչված, լավագույն դասախոս էր նա: Հետաքրքրական են Տոլստոյին, Պուշկինին, Դոստոևսկուն, Տուրգենևին նվիրված նրա ուսումնասիրությունները:

Արշավիր Մելիքյանը թողել է գրական հարուստ ժառանգություն: ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտը կազմել և հրատարակության է ներկայացրել նրա երկերի հատընտիրը, որի լույսընծայմամբ ընթերցող հասարակայնությունը հնարավորություն կունենա ծանոթանալու տաղանդավոր հրապարակախոսի գրական գործունեությանը:

Հիսունութ տարեկան էր Արշավիր Մելիքյանը, տակավին լեցուն ստեղծագործական մտահղացումներով, երբ կտրվեց նրա բազմաբեղուն կյանքի թելը:

ԳՈՀԱՐ ՄԱՆՈՒԿՅԱՆ



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—37—80, էկոնոմիկայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

ՎՖ 01774 Պատվեր 924 Թղթի չափսը $70 \times 108^1/_{16}$: Տիրաժ՝ 16.600 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 3/V—1979 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյան փող. № 28:

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. ԿՈՒԴՐՅԱՎՑԵՎ, Ի. ԱԶՈՎԿԻՆ, Ս. ԿԵԼԻՆԱ և ուրիշներ— Զարգացած սոցիալիզմի Սահմանադրությունը: *«Հայաստան» հրատ., 1979:*

Փ. ԵՆԳՈՅԱՆ— Բոլշևիկյան կուսակցության ստրատեգիան ու տակտիկան օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում: *«Հայաստան» հրատ., 1978:*

Մ. ՄՈՒՐԱԴՅԱՆ— Սովետական Միության պայքարը հանուն խաղաղության և միջազգային անվտանգության արդի էտապում: *ԵՊՀ հրատ., 1979:*

Ա. ՄԱԿԱՐՅԱՆ— Հայաստանի կոմկուսի գաղափարական աշխատանքը Մեծ Հայրենականի առաջին շրջանում: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ա. ՀԱՄԲԱՐՅԱՆ— Երիտթուրքերի ազգային ու հողային քաղաքականությունը և ազատագրական շարժումները Արևմտյան Հայաստանում *(1908—1914): Ե., ԳԱ հրատ., 1979:*

Ռ. ՍԻՄՈՆՅԱՆ— Կոմունիստական դաստիարակության մի քանի հարցեր: *Ե., «Լույս» հրատ., 1979:*

Կուսակցական խմբի ուղեցույց: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ա. ՆԱԼՉԱՋՅԱՆ, Մ. ՄԿՐՏՉՅԱՆ— Դրդապատճառ, կոնֆլիկտ, ֆրուստրացիա: *«Հայաստան» հրատ., 1978:*

Հ. ԱԶԻԶԲԵԿՅԱՆ— Սովետական Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերության պատմությունից *(1945—1975): Ե., ԳԱ հրատ., 1978:*

Ռ. ԻՇԽԱՆՅԱՆ— Նոր գրական հայերենը 17—18-րդ դարերում: *ԵՊՀ հրատ., 1979:*

Ս. ՄԵԼԻՔ-ԲԱԽՇՅԱՆ— Հայոց պատմության աղբյուրագիտություն: *(Հնագույն ժամանակներից մինչև 18-րդ դ. վերջը): ԵՊՀ հրատ., 1979:*

**К. Маркс и Ф. Энгельс. О воспитании и образовании.** В 2-х т. Т. 1—2. М., «Педагогика», 1978.

К. ЧЕРНЕНКО—**Коммунисты в СССР.** АПН, 1978. (КПСС: опыт партийной работы). М., Политиздат, 1978.

**Великий Октябрь и современная эпоха.** Международная научно-теоретическая конференция, посвященная 60-летию Великой Октябрьской социалистической революции. Москва, 10—12 ноября 1977 г. **Октябрь и рабочее, национально-освободительное и общедемократическое движение.** М., «Наука», 1978.

Ф. КАСТРО—**Октябрьская революция и Кубинская революция.** Речи и выступления. 1960—1977 гг. Перевод с испанского. М., Политиздат, 1978.

Л. КОРВАЛАН—**Из пережитого.** Перевод с испанского. М., Политиздат, 1978.

А. МЕРЦАЛОВ—**Западногерманская буржуазная историография второй мировой войны,** М., «Наука», 1978.

**Научно-техническая революция и кризис современной буржуазной идеологии.** «М. «Наука», 1978.

М. СЛАДКОВСКИЙ—**Китай: основные проблемы истории, экономики, идеологии.** М., «Мысль», 1978.

Г. СТАРУШЕНКО—**Мировой революционный процесс и современное международное право.** М., «Международные отношения», 1978.

**Союз созидателей нового общества.** Краткий очерк истории союза рабочих и крестьян (1917—1977). М., Политиздат, 1979.

Р. УЛЬЯНОВСКИЙ—**Современные проблемы Азии и Африки.** Политика, экономика. М., «Наука», 1978.

Ю. ШИРЯЕВ—**Социалистическая интеграция и международное разделение труда.** М., «Экономика», 1978.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԼԱՎ ՏՐԱՄԱԴՐՈՒԹՅԱՆ ՍԵԱՆՍ

*Բժշկական սարքաշինության գիտահետազոտական ինստիտուտում ստեղծվել է փոքրիկ մի սարք, որը տասը րոպեում վերացնում է առողջ մարդու նյարդահոգեկան լարվածությունը:*

*Փորձարկվողի առջև դրված սարքի վրա շարժվում է լուսարիծը, որի տեղը, ուրվագիծն ու գույնը սահուն փոխվում են: Պարբերաբար փոխվում է նաև էկրանի լուսավորվածությունը: Լուսարծի շարժման, փոփոխվող լուսավորվածության տակտին համապատասխան, ռիթմիկորեն մերթ ուժեղանում, մերթ նվազում է ծովի ալեկոծությունը նմանակող «սպիտակ» աղմուկը: Դինամիկական ծրագիրը կառավարում է լուսավորվածության աճման և աղմուկի ինտենսիվացման միաժամանակությունն այնպես, որ սկզբում այդ ռիթմը համապատասխանի մարդու արագացած շնչառությանը: Փորձարկվողի համար աննկատ այդ ռիթմն աստիճանաբար դանդաղեցվում է: Փորձարկվողը պետք է հարմարվի սարքին և շնչի ձայնի ու աղմուկի ռիթմին համապատասխան: Աստիճանաբար դանդաղեցվող այդ շնչառությունը մարդու մոտ առաջացնում է նյարդահոգեկան թուլացում:*

*Փորձարկմանը մասնակցել են տարբեր խառնվածքի մարդիկ. տասնհինգ դյուրագրգիռ, տաքարյուն ու եռանդուն խոլերիկներ և հավասարակշռված, բայց կուտառ, ինքնամփոփ ու հրապուրվող տասնհինգ սանգվինիկներ: Սեանսից հետո փորձարկվողների խմբերը դրական գնահատեցին իրենց ինքնազգացումը, փորձարկման ընթացքում նրանք իրենց առավել հանգիստ էին զգացել, մեղմացել էր նյարդային լարվածությունը, վերացել բոլոր բացասական ապրումները: Այդ են վկայում նաև օբյեկտիվ ցուցիչները՝ փորձարկվողի մաշկագալվանական ռեակցիաները:*

## ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄ Է ՇԱՐԺՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Հոդերի որոշ վնասվածքների դեպքում բուժման սովորական եղանակով չի հաջողվում վերականգնել դրանց նախկին շարժունակությունը: Պատճառը հոդային վերջույթները պատող կռճկային հյուսվածքն է, որը վնասվելուց հետո չի վերականգնվում: Վնասվածքների և ոսկրաբուժության գիտահետազոտական կենտրոնական ինստիտուտի գիտնականներ, ակադեմիկոս Մ. Վոլկովը և բժշկագիտության դոկտոր Հ. Հովհաննիսյանն ապացուցել են, որ այդ օրենքն ունի բացառություններ: Եթե պայմաններ ստեղծվեն, որ հոդային վերջույթներն իրար չճնշեն և հոդերում ապահովվի նորմալ ֆիզիկական շարժումը, ապա լրիվին կվերականգնվեն կորսված հատկությունները: Վնասվածքների ու հոդերի հիվանդությունների վիրահատական բուժման համար այս հիմունքով ստեղծված եղանակներն ու ապարատները մեր երկրում ստացել են հեղինակային վկայականներ, իսկ ԱՄՆ-ում, Անգլիայում, Ճապոնիայում, Ֆրանսիայում, ԳՖՀ-ում և այլ պետություններում՝ արտոնագրեր:*

## ԵՐԳԵՀՈՆԱՀԱՐԻՆ ՕԳՆՈՒՄ Է ԷԼԵԿՏՐՈՆԻԿԱՆ

*Երգեհոն նվագելը ֆիզիկական ծանր աշխատանք է, երգեհոնահարն աշխատում է ո՛չ միայն ձեռքերով ու ոտնաթաթերով, այլև ծնկներով:*

*«Սիմենս» արևմտագերմանական ֆիրման Նյուրնբերգ քաղաքի սուրբ Լորենցի եկեղեցու երգեհոնի վրա տեղադրել է էլեկտրոնային սարք, որը հնարավորություն է ընձեռում դեռ մինչև նվագելը ծրագրավորել ռեգիստրների հնչեղությունը՝ 40 կոմբինացիաներով: Այդ երգեհոնն ունի 138 ռեգիստր: Այժմ բարդ ակորդ վերցնելու համար բավական է սեղմել ստեղնաշարից ձախ տեղադրված կառավարման վահանակի վրայի կոճակներից մեկը: Ավտոմատիկան չի փոխարինում երաժշտին և չի սահմանափակում նրա ստեղծագործական հնարավորությունները. ծրագրավորված ակորդը նվագելիս կարելի է փոխել:*